## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

## Содержание






# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

Լրացավ միջազգային կոմունիստական շարժման առաջին գիտահեղափոխական ծրագրի՝ **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** հրապարակման 125-րդ տարելիցը: ՍՄԿԿ, ինչպես և սոցիալիստական ու այլ երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները վայելուչ շուքով նշելով աշխարհը հեղափոխականորեն վերափոխող այդ պատմական վավերագրի հիշարժան օրը, գաղափարական խոր երախտագիտությամբ դրվատեցին գիտական սոցիալիզմի անդրանիկ այդ երկի անզուգական հեղինակների Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի արծարծած գաղափարների վիթխարի ներգործությունը համաշխարհային առաջընթացի վրա:

Հիրավի, անցած 125 տարիների մարդկային վերընթացի հեղաբեկիչ անցքերը շատ շուտով հաստատեցին այդ բոցաշունչ, հին աշխարհը խորտակող և նոր, կոմունիստական հասարակություն ստեղծող գաղափարների կենսականությունն ու ճշմարտացիությունը: Կոմունիստական աշխարհայացքի որքան մարտական, նույնքան և գիտական այդ ուղեցույցի 1882 թ. առաջաբանում հեղինակները շեշտել են, որ իրենց համառեղ աշխատության խնդիրը արդի բուրժուական սեփականատիրության առաջիկա անխուսափելի կործանման հռչակումն է: Ընդամենը 69 տարի անց, 1917 թ. Ռուսաստանի կոմունիստները պատմական այդ քայլը կատարեցին հեղափոխության մեծագույն տեսաբանի ու վարպետի՝ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ: Դրանով իսկ արդարացավ այդ հռչակավոր երկի հանճարեղ հեղինակների այն կանխատեսությունը, որ «Ռուսաստանը ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում», բուրժուական հասարակության ծոցում առնանում է նրա գերեզմանափորը՝ բանվոր դասակարգը, բուրժուազիայի կործանումը և պրոլետարիատի հաղթությունը հավասարապես անխուսափելի են: Գիտական այս հեղաբեկիչ օրինաչափությունների բացահայտումը Մարքսի ու Էնգելսի մեծագույն ծառայությունն է:

Գիտականորեն բացահայտելով և հիմնավորելով բանվոր դասակարգի ազատագրական միխիան նոր հասարակության ստեղծման գործում, **Մանիֆեստի** հեղինակները երկարատև ու անդուլ ջանքերով կազմակերպեցին ու սովորեցրին պրոլետարիատին գալիք դասակարգային գոտ մարտերի ստրատեգիան ու տակտիկան, շեշտելով, որ բուրժուազիային բռնությամբ տապալող հեղափոխականների առաջին քայլը տիրապետող դասակարգ դառնալն է,

դեմոկրատիայի համակողմանի նվաճումը և կեղեքողներից խլած արտադրաուժերի բազմապատկումը: Իրենց հանճարի առաջին հասուն պտուղ՝ **Մանիֆեստը** հռչակեց, որ քաղաքական իշխանությունը պրոլետարիատին անհրաժեշտ է մարդու շահագործումը վերացնելու, հանրային սկզբունքով արտադրություն կազմակերպելու և ազգային կեղեքումը վերացնելու համար:

Հեղափոխական ավյունով լի այդ մարտակոչում առաջին անգամ մարդկային պատմության մեջ կատարված մեծագույն իրադարձությունները մեկնաբանվեցին պատմության մատերիալիստական ըմբռնման ոգով, վերծանվեց հասարակական ֆորմացիաների հազարամյա վերընթացի ու վայրէջքի իրական շարժառիթը՝ դասակարգային կռվի անողոք օրենքը, որի թելադրանքով է ընթացել անտագոնիստական հասարակությունների հանուր կյանքը: Մատնանշելով կապիտալիստական ֆորմացիայի պրոգրեսիվ բնույթը նախորդ հանրաձևերի համեմատ, կոմունիստական կուսակցության տեսության ու գործողության այդ անփոխարինելի ձեռնարկում գիտականորեն մեկընդմիշտ ապացուցվեց, որ մարդկության ազատագրման միակ կարող սուբյեկտը հեղափոխականացող պրոլետարիատն է, որը կոչված է այս աշխարհի վրա մեկընդմիշտ հաստատելու բանականության թագավորությունը, ամեն կարգի կեղեքումից զերծ կոմունիստական հասարակությունը:

Այսօր ակներև ճշմարտություն է, որ **Մանիֆեստում** սևեռված հումանիստական բոլոր սկզբունքները փայլուն կերպով կենսագործվեցին Սովետների երկրում, և շարունակում են իրագործվել սոցիալիստական համագործակցության բոլոր երկրներում: Հետևողականորեն կենսագործելով պրոլետարական դիկտատուրայի մարքսիստական գաղափարը Ռուսաստանում, կոմունիստների կուսակցությունը դարձավ համաշխարհային հեղափոխական շարժման առաջընթացի որոշիչ ուժը: Լենինի դրոշի ներքո համախմբելով ու միավորելով աշխարհի բոլոր երկրների կոմունիստներին ու հեղափոխական, առաջավոր ուժերին, ՍՄԿԿ վիթխարի գործունեության շնորհիվ սոցիալիզմը դարձել է մեր դարաշրջանի գլխավոր ուժը, որը կարողանում է առաջավոր մարդկության համատեղ ջանքերով իրագործել խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, հակակշռել իմպերիալիզմի նվաճողական ոտնձգություններին: 1969 թ. կայացած կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մոսկովյան խորհրդակցության մշակած հեղափոխական ուժերի միջազգային տակտիկան փայլուն կերպով ապացուցեց, որ հակաիմպերիալիստական ուժերի համախմբման նպատակով գործադրվող միջազգային կոմունիստական շարժման վիթխարի պայքարն է հանդիսանում խաղաղության, սոցիալիզմի ու դեմոկրատիայի հարատևման իրական առհավատչյան:

Մեծ հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ գոյավորված ու ամրապնդված սոցիալիստական սիստեմը, եղբայրական կոմունիստական, բանվորական կուսակցությունների ուժերի կուռ միասնությամբ, ապահովում է մարդկության պրոգրեսիվ երթը՝ **Կոմունիստական մանիֆեստի,** գիտական սոցիալիզմի այդ անզուգական երկի կանխագծած հունով: Անշեղորեն կենսագործելով իրենց վեհ նպատակները, աշխարհի կոմունիստները շարունակում են բարձր ծածանել Մարքսի, Էնգելսի և մեծ Լենինի կենսահաստատ դրոշը: Մարքսի և Էնգելսի անմահ գաղափարները, որոնք 125 տարի առաջ փայլատակեցին համաշխարհային պատմության թխպոտ երկնակամարում, մեծապես հեշտացրին մարդկության տառապանքների ուղին: Նրանց աշխարհաշեն գաղափարները այսօր մարմնացած են սոցիալիզմի սիստեմի բոլոր երկրներում, աշխատավորների ջանքերով ստեղծված մեր վիթխարի կառույցներում, շարունակում են թևածել ողջ մարդության առաջընթացի լուսավառ հորիզոնում:



* * *

Ամփոփելով միջազգային կոմունիստական շարժման պատմական հաղթանակների հոյակապ արդյունքները, Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ «Կոմունիստների գաղափարները հիանալի ծիլեր են տվել իրական սոցիալիզմի պրակտիկայում, միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց գիտակցության ու գործերի մեջ... Համայն աշխարհում սոցիալիզմի գործի լիակատար հաղթանակն անխուսափելի է: Եվ հանուն այդ հաղթանակի, հանուն աշխատավոր ժողովրդի երջանկության մենք կպայքարենք առանց ուժեր խնայելու» «Լենինյան կուրսով», հ. 3, էջ 290—291):

Հիրավի, ՍՄԿԿ XXIV համագումարի բուռն հավանությանն արժանացած Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի վերոհիշյալ մեծանշանակ եզրակացությունը մի անգամ ևս ողջ մարդկության առջև հաստատեց մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսականությունը, նրանց ուժի անսասանությունը: Այդ հավերժ կենդանի ուսմունքը բոլորիս ուսուցում է գործերն այնպես վարել, որ տարեցտարի բարգավաճի ժողովրդական զանգվածների կյանքը և անխափան առաջ ընթանա կոմունիզմի կառուցման մեծ գործը: Կուսակցության XXIV համագումարի հաստատած ՍՍՀՄ իններորդ հնգամյա պլանը կոչված է մի նոր փուլ նշանավորելու զարգացած սոցիալիզմի, մեր հայրենիքի առաջընթացում: Այդ **«Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելք՝ սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա»** (Նույն տեղը, էջ 318):

Կոմունիզմ կառուցող հասարակության առջև ծառացած այս կարևորագույն ու բարդ խնդիրների լուծումը սերտորեն առնչվում է սովետական մարդու համակողմանի զարգացման լիակատար նախապայմաններ ստեղծելու պրոբլեմի հետ: Կոմունիզմի շահերը հրամայաբար թելադրում են միլիոնավոր աշխատավորներին օժտել հարուստ կուլտուրայով, մասնագիտական խոր գիտելիքներով և պրոֆեսիոնալ բարձր պատրաստականությամբ:

Տակավին 1920 թ. Լենինը նշել է, որ սոցիալիստական կարգերում բարիքների արտադրության անմիջական նպատակը՝ «...հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցության ու նրանց ազատ, համակողմանի զարգացման ապահովումն է» (ПСС, т, 6. стр. 232): Հետևաբար, ոչ միայն մարդկանց նյութական բարեկեցության մշտական վերելք, այլև այդ վերելքն ապահովող բազմակողմանի զարգացած աշխատավորներ, որոնք ամենուր ի վիճակի կլինեն գործադրելու գիտության ու տեխնիկայի ներթաքուն կարողությունները և դրանով իսկ ապահովելու կատարյալ ընդլայնված վերարտադրություն, առանց որի խոսք չի կարող լինել բարեկեցության բարգավաճման մասին:

Մեր կուսակցությունը մի անգամ ևս սովետական երկրի բոլոր աշխատավորների ուշադրությունն է բևեռում այն ճշմարտության վրա, որ «...մեր աշխատանքային հաջողություններից է կախված, թե ինչպես ենք մենք ապրում այսօր և ինչպես կապրենք վաղը» («Լենինյան կուրսով», հ. 3, էջ 321):

Բազմակողմանի զարգացած սովետական նոր մարդու բնորոշ հատկանիշներից է նրա աշխատանքային բարձր կուլտուրան, իր գործունեության ընթացքի գիտական ճշգրիտ կազմակերպումը, առանց որի անհնարին է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, թեկուզ նորագույն տեխնիկայի առկայությամբ: Միայն արտադրապրոցեսի մեքենայացումն ու ավտոմատացումը բավական չեն արդյունավետ բանելու համար: Ուր չկա աշխատանքային երկաթյա կարգապահություն, գործելու գիտական մեթոդ և ժամանակի լիակատար խնայողություն, այնտեղ արդյունավետությունը միշտ կպակասի: Ահա թե ինչու մեր օրերի մարդուց կուսակցությունը պահանջում է համաքայլ ընթանալ երկրի առաջավորների հետ, աշխատանքի հազարավոր հերոսների հետ և նրանցից ուսանել այն, ինչ իսկապես առաջավոր է: «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման: Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի» (Նույն տեղը, էջ 357):

Այսպիսով, ժամանակակից մարդու բազմակողմանի զարգացումը, նրա առաջադիմության ռեալ ազդակներից մեկն է: Ինքնին հասկանալի է, որ նոր անձնավորության զարգացման գործում գլխավորը կոմունիստական գաղափարայնությունն է, մարքս-լենինյան աշխարհայացքը, որը ձևավորվում է ոչ միայն սոցիալիստական արտադրապրոցեսում, այլև կուսակցության, պետության և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական համակարգում: Չէ՛ որ կոմունիզմն այն հասարակությունն է, ուր «...յուրաքանչյուրի շահը, բարօրությունը, երջանկությունը վերցրած առանձին անքակտելիորեն կապված են մյուս մարդկանց բարօրության հետ» (К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 2, стр. 535). դա մի հասարակություն է, «...ուր շահերի ընդհանրությունն է հիմնական սկզբունքը, ուր հանրային շահն այլևս չի զանազանվում յուրաքանչյուր առանձին անձնավորության շահից» (Նույն տեղը, էջ 538):

Հասուն սոցիալիստական հասարակության էական նվաճումներից է և այն, որ նոր մարդն իրոք գաղափարական է, անձնական շահը ստորադասում է հանրայինին և հաստատորեն որդեգրել է կոմունիզմի սկզբունքներն ու նպատակը: Ամենուր նա հանդես է գալիս ու գործում որպես խորթացումից ձերբազերծված անձնավորություն, որն օժտված է աշխատավորի արժանավայելության հպարտությամբ, երկրին տեր լինելու գիտակցությամբ, վառ ապագայի հավատով և քաղաքական ու աշխատանքային ակտիվ գործունեության շեշտակի հակումով: Սովետական նոր մարդու կամ անձնավորության այս հատկանիշները, որոնց գոյավորումն սկսվել է ավելի քան կես դար առաջ, իրենց կենսունակությունը և հաստատականությունը դրսևորում են սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում, սովետական հայրենիքի ուրախ ու դժվարին պահերին:

Մենք այժմ կարող ենք հաստատ ասել, որ շնորհիվ ՍՄԿԿ-ի թափած ահռելի ջանքերի, մեր երկրում ամենուր գործում ու պայքարում է սովետական նոր անձնավորությունը, որը, հավատարիմ լենինիզմի անմահ ավանդներին, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ունի: Անդրադառնալով այդ խնդրին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...կուսակցությունն իր խնդիրն է համարել պաշտպանել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մասսայական շարժումը, համա-



կողմանիորեն խրախուսել սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը» («Լենինյան կուրսով», հ. 3, էջ 388):

Սոցիալիստական հասարակության սխրալի իրականության խորքերից վեր հառնող սովետական տիպի անձնավորությունն ամենուր աչքի է զարնում իր բնությանը հատուկ այն հատկանիշով, որ իրոք ըմբռնում է սեփական աշխատանքի հասարակական նշանակալիությունը: Ազատ բանվորի գիտակցական գործունեությամբ է դրսևորվում նրա մարդկային էությունը սոցիալիզմի օրոք: Նա որքան շատ արժեքներ է ստեղծում, այնքան մեծ արժեք է ստանում ոչ միայն ինքը, այլև նրան հարազատ հանրությունը: Սեփական աշխատանքը մարդկային լիակատար էություն է ձեռք բերում լոկ այն դեպքում, երբ ինքն է ողջ արժեքների, աշխարհի տերը, երբ չկա վարձող կեղեքիչը, երբ մարդը մարդուն եղբայր է, բարեկամ ու ընկեր: Այս դեպքում է, որ աշխատանքը դարձել է ժողովրդի բարօրության անսպառ աղբյուրը, մարդկային կյանքի գերագույն ու գեղեցիկ իմաստը:

Այն հանգամանքը, որ սովետական բոլոր քաղաքացիները բուռն ձգտում են տիրապետել գիտության, արվեստի և առհասարակ կուլտուրայի գանձերին, վկայում է, որ մեր երկրում աշխատանքը վաղուց է դարձել սոցիալիստական հասարակության քաղաքացիների գիտակցական գործունեություն, որ ոչ միայն ֆիզիկական, այլև հոգևոր բավականություն է պատճառում աշխատողին: Բարոյական, էսթետիկական հաճույքները վաղուց ի վեր ընթացակցում են սովետական նոր անձնավորության կամավոր գործունեությանը, դարձել նրա մարդկային բնության անհրաժեշտ բաղադրամասեր: Այս ամենի իրական ապացույցը մեր երկրում ծայր առած ու զանգվածային դարձած կոմունիստական աշխատանքի շարժումն է:

Ի դեպ, սովետական մարդկանց այսօրվա սխրատենչ և հույժ բարոյական հակումներն օրգանապես առնչվում են այն կոմունիստների անձնուրացությանը, ովքեր վայրագ ցարիզմի ընդհատակում իրենց թոռների այսօրվա երջանկությունն էին կռում: Ականավոր լենինյան Ֆ. Ձերժինսկին գրել է. «Հարկավոր է անհրաժեշտության ներքին գիտակցություն ունենալ ու մեռնել հանուն կյանքի, բանտարկվել հանուն ազատության և կարողանալ բաց աչքերով վերապրել կենաց դժոխքի սարսափները, սեփական հոգում զգալ այդ իսկ կյանքից առնված գեղեցկության, ճշմարտության ու երջանկության վսեմագույն հիմնը» (Избранные произведения, т. 1, стр. 511):

Այդպիսի գիտակցությամբ զինված սովետական մարդը հաղթություն տարավ ֆաշիստական հորդաների դեմ մղվող արյունալի մարտերում, այդ ձըգտումից դրդված նա այսօր աշխատանքային անօրինակ խիզախումներով կոմունիստական հասարակության նյութատեխնիկական հիմքերն է արկանում:

Սովետական ժողովրդի գոյավորման օբյեկտիվ ու սուբյեկտիվ շարժառիթների ոլորտում՝ կոմունիստական աշխարհայացքի ու նպատակների ընդհանրությունը, հանրային շահերի գերադասումը, եղբայրության, կոլեկտիվիզմի հետ միասին էական դեր է կատարում նաև պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարաբանությունը, որը նմանապես սովետական նոր անձնավորության ցայտուն հատկանիշներից է: Չնայած այն բանին, որ մեր երկրում դեռևս առկա են դասակարգերն ու ազգերը, ժողովուրդների տարբերությունները, բայց և այնպես սովետական մարդու գաղափարական, սոցիալական, քաղաքական, հոգեբանական, բարոյական ընդհանուր ազդակներն են կաղապարում նրա քաղաքացիական դեմքը:

Սոցիալիստական հեղափոխությունը մարդկանց դուրս քաշելով շահագործության և ընչաքաղցության դարավոր տիղմից, նրանց հոգևոր կյանքի համակողմանի փարթամացման այնպիսի նախապայմաններ ստեղծեց, որոնք անխուսափելի դարձրին մարդկության կոմունիստական վերափոխումը: Դրա փայլուն ապացույցներից է այն, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակով միայն իրականում սկզբնավորվեց մարդկանց, ազգերի ու ժողովուրդների լենինյան եղբայրությունը, որի էությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմն է:

Մարքսիզմի հիմնադիրները հաստատեցին, որ բուրժուական կարգերում այլազգի բանվորները դասակարգային նույն շահերն ունենալով, պրակտիկ պայքարում հետզհետե միջազգայնանում են ոչ միայն գաղափարներով, այլև զգացմունքներով: Ինտերնացիոնալ մտորումներ ու ձգտումներ ունեցող բանվորները երկարատև տառապանքների գնով հասան այն գիտակցությանը, թե «Բոլոր մարդիկ՝ եղբայրներ են»: Բնորոշ է, որ Մարքսի, Էնգելսի գաղափարական ներգործության շնորհիվ, մեկ տարի անց (1847 թ.) Եվրոպայում գործող Արդարների միությունը վերակազմվեց՝ Կոմունիստների միության, որը վերոհիշյալ մշուշապատ նշանաբանի փոխարեն, հռչակեց՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» թևավոր լոզունգը, որն այսօր էլ մնում է աշխարհի կոմունիստների դրոշների վրա:

Հարյուր քսանհինգ տարի առաջ սկզբնավորված կոմունիստների ազատագրական ինտերնացիոնալ շարժումն իր փայլուն և արդյունավետ կիրառումը գտավ մեր հայրենիքում: Սոցիալիզմի հաղթության և կառուցման համար մղվող ծանր մարտերում սովետական ժողովուրդները իրենց հոգու ծալքերից թոթափեցին բուրժուական ընչաքաղցության, էգոիզմի, ինդիվիդուալիզմի, նացիոնալիզմի երկարամյա փոշին ու դարձան մարքսիստական-լենինյան աշխարհայացքով զինված, պրոլետարական ինտերնացիոնալիզմով տոգորված սովետական ազգեր ու ժողովուրդներ: Պատմական այս վիթխարի թռիչքի շնորհիվ բազմապատկվեցին սովետական մարդու հոգևոր գանձերը, ընդլայնվեց նրա հետաքրքրասիրությունների մտահորիզոնը և նա այսօր իր պատմությունը գիտակցաբար դարբնողն է:

Սովետական մարդու մտահորիզոնի ընդարձակմամբ և նրա ներաշխարհի նոխացմամբ է աչքի զարնում մեր այսօրվա առօրյան: Միլիոնավոր, տասնյակ միլիոնավոր սովետական քաղաքացիներ հաջողությամբ են զուգակցում անձնականը ողջ հասարակության և աշխատանքային կոլեկտիվների շահերին: Անցյալի օտարված և ինքնաօտարված մարդը զարգացած սոցիալիզմի երկրում վաղուց է գտել իր երբեմնի կորցրած մարդկայնությունը, դարձել նոր, սովետական լիարյուն մարդ, որի համար կոլեկտիվը հարազատ հանրություն է:

Ճիշտ է նկատել ամերիկյան անվանի հրապարակախոս Ալբերտ Կանը, թե նոր մարդու հայտնվելը սովետական հասարակության շշմեցնող հաջողությունն է: Այս առթիվ նա գրել է. Սովետական մարդկանց մեծագույն մասը, որոնց ես հանդիպել եմ, նորատեղծ հասարակության քաղաքացիներ են: «...Այսօր արդեն այն հարցը, թե կարելի է փոխել մարդու բնությունը, վեճեր չի հարուցում: Այդ իսկ հարցին անվիճելի պատասխանեց բուն կյանքը: Որովհետև նրանք, ովքեր աչքեր ունեն, պարզ ու հստակ տեսնում են այն, ինչ երկար ժամանակ «մարդու բնություն» էր կոչվում և փոփոխվեց Սովետական Միությունում: Այդ երկրում հասարակության վերափոխման ընթացքում մար-



դըն ինքն իրեն է փոխում: Աշխարհում այժմ նոր նկարագիր ունեցող մարդն է քայլում:

Ի՞նչն է բնորոշ այդ մարդկանց համար: Սովետական մարդիկ բարի են, բայց և ուժեղ: Նրանք վստահ են, բայց և համեստ: Նրանց հատուկ է խոր հայրենասիրությունը, և միաժամանակ նրանք մարդկանց նկատմամբ համակված են եղբայրական վերաբերմունքով: Ագահորեն ձգտում են տիրապետել գիտություններին, խորապես հարգում են գիտությունը և աշխատանքը համարում են ազնիվ բան:

Նրանք այնպիսի մարդիկ են, ովքեր հանդես են գալիս հանուն խաղաղության ոչ միայն այն պատճառով, որ ճաշակել են պատերազմի սարսափները, այլև այն պատճառով, որ գնահատում են կյանքն ու գեղեցկության երկրպագուներ են» (Альберт Кан. Новый человек. «Правда», 22 марта 1960):

Սովետական մարդու այս դրական գնահատականն արտասահմանի առաջավոր մտածողի կողմից եզակի չէ: Սոցիալիստական հասարակության այդ մեծ նվաճումը գիտակցում են բուրժուական աշխարհի շատ և շատ առաջավոր գործիչներ: Սովետական կարգերի պատմությունը լի է անթիվ փաստերով, երբ աշխատավորական զանգվածները սոցիալիստական պետության՝ իրենց հանդեպ տածած հոգատարությանը, հատուցել են անձնվեր և ստեղծագործական մաքառումներով, իսկ Հայրենական մեծ պատերազմի տարիներին մեծագույն ինքնազոհողություններով, անօրինակ հայրենասիրությամբ և պատասխանատվության խոր զգացումով: Ահա թե ինչու Լ. Ի. Բրեժնևն ասում է. Սովետական կարգերն աշխատավորներին դաստիարակեցին սոցիալիզմին նվիրվածության ոգով, կոլեկտիվիզմի, իր երկրին տեր լինելու ոգով: Բայց տեր լինել, նշանակում է մեծ իրավունքներով հանդերձ ունենալ և մեծ պարտականություններ: Դա նշանակում է երկրի համար բարձր պատասխանատվություն կրել: Դաստիարակությամբ մարդկանց այս հատկանիշներով օժտելը, հատկանիշներ, որոնք պետք է դառնան յուրաքանչյուր սովետական մարդու ներաշխարհի բնորոշ գծերը, կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկն է կոմունիստական շինարարության մեջ (տե՛ս «Լենինյան կուրսով», հ. 2, էջ 145):

Այս բնագավառում՝ նոր անձնավորության դաստիարակության առումով, մեծ է ու պատասխանատու կուսակցական կազմակերպությունների անելիքը: Նոր մարդու լինելության դաստիարակչական բարդ պրոցեսը լոկ ուսուցում չէ, այլ անցյալի մնացուկների դեմ մղվող սիստեմատիկ և անզիջում պայքար: ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ կոմունիստական բարոյականության հաղթանակը պահանջում է անողոք պայքարել շահամոլության, կաշառակերության, պորտաբուծության, զրպարտության, հարբեցողության, անոնիմկաների և նման երևույթների դեմ: Այս պայքարը պահանջում է կուսակցության, մեր հասարակության բոլոր առաջավոր և գիտակից ուժերի մշտական ուշադրությունը» «Լենինյան կուրսով», հ. 3, էջ 350):

* * *

Ընդամենը մի քանի ամիս է անցել այն պատմական իրադարձությունից, ինչ Մոսկվայում, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի, ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ նիստում, միութենական հանրապետությունների պատգամավորությունների ու արտասահմանյան հյուրերի ներկայությամբ, մեծ

հանդիսավորությամբ նշվեց ՍՍՀՄ կազմավորման հիսնամյա հոբելյանը: Ոչ միայն մեր հայրենիքի աշխատավորությունը, այլև համայն աշխարհի առաջավոր մարդկությունը սրտագին խանդաղատանքով ընկալեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակին» նվիրված բովանդակալից զեկուցումը: Մի զեկուցում, որում հանգամանալի ու տեսական խոր վերլուծությամբ իմաստավորվեց սովետական բազմազգ պետության կազմավորման հսկայական նշանակությունը, սովետական ազգերի ու ժողովուրդների կեսդարյա սոցիալիստական վերածնունդը լենինյան դրոշի ներքո, նրանց անկեղծ բարեկամության կուռ դաշինքի արգասալի հասունները:

Վերոհիշյալ զեկուցման մեջ, մարքս-լենինյան ուսմունքի պայծառ լույսի տակ համակողմանիորեն վեր են հանված ու գնահատված ՍՍՀՄ կեսդարյա սոցիալ-քաղաքական, տնտեսական, կուլտուրական մեր հոյակապ նվաճումները: Դրա հետ մեկտեղ, ընկ. Բրեժնևը սովետական առաջընթացի ոգևորիչ իրողությունների համակողմանի քննարկմամբ, հանգամանորեն լուսաբանեց ազգային հարցի լենինյան տեսության ու պրակտիկայի զարգացման տարբեր փուլերը, դրանց վերընթաց օրինաչափությունները մեր կյանքի բոլոր մարզերում:

Բարձր գնահատելով սովետական ժողովրդի տնտեսական ու հոգևոր կյանքի աննախընթաց հաջողությունները, Լ. Ի. Բրեժնևը միաժամանակ անդրադարձավ ՍՍՀՄ ժողովուրդների համատեղ և անդուլ ջանքերով կատարվող կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրներին, առանձնապես ընդգծելով ՍՍՀՄ հեղինակության աճող և վճռական նշանակությունը համաշխարհային պատմության պրոգրեսի համար: Ծոշափելով միջազգային կյանքի հրատապ պրոբլեմները լենինյան ստրատեգիայի ու տակտիկայի տեսանկյունից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը հաստատակամորեն շեշտեց, որ ինչպես մինչև այսօր, նույնպես և հետագայում, ՍՍՀՄ եղել ու մնում է խաղաղության ու սոցիալական պրոգրեսի ամենահուսալի պատվարը, սոցիալիզմի, դեմոկրատիայի, իրենց ազգային ազատագրման համար մարտնչող ժողովուրդների անկեղծ բարեկամը:

Ըստ արժանվույն գնահատելով սովետական բազում ժողովուրդների վիթխարի հաջողությունները, նա ասաց. «Ամփոփելով անցած կես դարի հերոսական մեծագործությունների արդյունքները, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ ազգային հարցն այնպես, ինչպես մեզ հասավ անցյալից, լուծված է լիակատար կերպով, լուծված է վերջնականապես և անդառնալիորեն: Դա մի նվաճում է, որն իրավամբ կարելի է միևնույն շարքը դասել ՍՍՀՄ-ում նոր հասարակարգի կառուցման այնպիսի հաղթանակների հետ, որպիսիք են ինդուստրացումը, կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը» («Լենինյան ուղիով» ամսագիր, № 1, 1973 թ., էջ 11):

Անցած հիսուն տարիներին ամեն կերպ խրախուսելով և զարգացնելով կյանքի բոլոր մարզերում թափանցող, աշխատավորական հոծ զանգվածների համար միս ու արյուն դարձող մարքսիզմ-լենինիզմը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի անաղարտ գաղափարները, ՍՄԿԿ իր գործունեությունը պսակեց այն փառավոր հաղթանակով, որ սովետական սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների դաշինքը դարձավ անտրոհելի ու հավերժական: Պատմական այդ օբյեկտիվ պրոցեսի երևելի արգասիքը՝ **սովետական ժողովուրդ** հանրության գոյավորումն էր: ՍՍՀՄ հասարակական կյանքի որակա-



կան այս էական փոփոխությունն իր խոր կնիքն է դրոշմել սոցիալական մեր կյանքի բոլոր կողմերի վրա:

Այս պրոբլեմի համակողմանի լուսաբանությունն ենք գտնում Լ. Ի. Բրեժնևի վերոհիշյալ զեկուցման մեջ: Այստեղ ասված է, թե կես դարում սովետական հասարակության կյանքում «...ստեղծվել ու ծաղկել է իր ոգով և սկզբունքային բովանդակությամբ միասնական սովետական սոցիալիստական կուլտուրա: Այդ կուլտուրան ներառնում է մեր հայրենիքի ժողովուրդների յուրաքանչյուր կուլտուրայի ու կենցաղի առավել արժեքավոր հատկանիշներն ու ավանդույթները: Միևնույն ժամանակ սովետական ազգային կուլտուրաներից ամեն մեկը սնվում է ոչ միայն սեփական աղբյուրներից, այլև մյուս եղբայրական ժողովուրդների հոգևոր հարստություններից և, իր հերթին բարերար ներգործում դրանց վրա, հարստացնում դրանց» (նույն տեղը, էջ 19):

Բացահայտելով ու վերլուծելով ազգային կուլտուրաների փոխներգործման և փոխհարստացման բարդ դիալեկտիկան, նրանց կատարելագործման այլևայլ դրսևորումների դինամիկան, ընկեր Բրեժնևն ըստ այնմ մատնանշեց սովետական կուլտուրայի ծավալուն սահմաններում ամրակայվող կոմունիստական մշակույթի հիմքերը, որոնք արդեն ցայտուն կերպով նշմարվում են հասարակական կյանքում՝ իրենց առաջավոր նկրտումներով: «Սովետական սոցիալիստական կուլտուրայի ազգային ձևերի բազմազանության մեջ ավելի ու ավելի նկատելի են դառնում ընդհանուր ինտերնացիոնալիստական հատկանիշները: Ազգայինն ավելի ու ավելի է արգասավորվում մյուս եղբայրական ժողովուրդների նվաճումներով: Սա առաջընթաց պրոցես է: Այն համապատասխանում է սոցիալիզմի ոգուն, մեր երկրի բոլոր ժողովուրդների շահերին: Ահա այսպես են դրվում նոր, կոմունիստական կուլտուրայի հիմքերը, որը չգիտե ազգային պատնեշներ և հավասար չափով է ծառայում բոլոր աշխատավոր մարդկանց» (նույն տեղը):

Գաղափարական ճակատամասի բոլոր բնագավառների աշխատողների բարոյական պարտքն է՝ ազգայինի ու ինտերնացիոնալիստականի վերոհիշյալ ըմբռնման վրա խարսխել մեր ժողովրդի առաջիկա հոգևոր վերելքի միջոցառումները: Հետևողականորեն պայքարելով բուրժուական գաղափարախոսության հոսանքների ու երանգների դեմ, չպետք է մոռանալ, որ նոր սերնդի դաստիարակության կարևորագույն խնդիրը՝ մարդկանց հոգևոր աշխարհը պրոլետարական ինտերնացիոնալիզմով համակելն է: Գաղտնիք չէ, որ ազգային ինքնագովության և սահմանափակության միջավայրից սնվող մեծախոսիկ պարծենկոտությունը, որը դժբախտաբար, տեղ-տեղ երևան է գալիս մեր կյանքում, խանգարում է սովետական հայրենասիրությամբ մասսաների դաստիարակման գործին:

Հասուն սոցիալիզմի առօրյան լի է սովետական ժողովրդի իրական հայրենասիրության բազում մեծագործություններով, որոնք բազկապատկում են մեր մեծ հայրենիքի փառքն ու հզորությունը: Մեր օրերի մարդը, սովետական հայրենասերը, որն իրավամբ հպարտանում է այդ հոյակապ հասուններով և բոլոր ջանքերը գործադրում նոր հնգամյակում պատվով կատարելու կուսակցության վիթխարի կանխագծումները, չպետք է հանդուրժի այնպիսի թերություններ, որպիսիք մինչև օրս կան հանրապետության տնտեսական, կուլտուրական կյանքում: Հիրավի, մի՞թե հանդուրժելի է, երբ անցյալ տարի զգալիորեն թերակատարվեցին կապիտալ շինարարության պլանները, շահագործման չհանձնվեցին արդյունաբերական մի շարք օբյեկտներ, 200 հազար քմ

բնակելի տարածություն։ Մի՞թե հանրապետության շինարարներին պատիվ է բերում, երբ նրանք շահագործման են հանձնում անորակ շենքեր, երբ սպասարկման ոլորտի աշխատողները վատ են սպասարկում բնակչությանը։ Մի՞թե հանդուրժելի է, որ մեր որոշ մանկավարժների տեսական ու գիտական ցածր մակարդակի պատճառով երբեմն տուժում է հայոց և այլ լեզուների դասավանդումը դպրոցներում. մամուլում հաճախ են ոտնահարվում լեզվական կուլտուրայի տարրական կանոնները։ Ընթերցողներին չի կարող բավարարել հանրապետության պոլիգրաֆիայի անբավարար մակարդակը, բացահայտ անորակ գործերի հրապարակումը և այլն։ Բացառիկ չեն դեպքերը, երբ դասագրքերը մատուցվում են աշակերտներին լեզվական ցածր կուլտուրայով։

Կոմունիզմ կառուցող մարդու կարևոր հատկանիշներից մեկն այն է, որ նա վերցնելով անցյալի հուրը և ոչ թե մոխիրը, անզիջում պայքարում է մեր առաջընթացը խոչընդոտող ամեն կարգի բացասական երևույթների դեմ, որոնք խորթ են սոցիալիստական հասարակության գիտակից հայրենասերներին, ազգային առողջ հպարտության մեր ոգուն, հպարտություն այն ամենի համար, ինչ առաջավոր է մեր պատմության մեջ, ինչ գեղեցիկ է ու վեհ մեր այսօրվա կյանքում, ինչ մեզ օրգանապես կապում է սոցիալիստական ժողովուրդների՝ ինտերնացիոնալիստների լենինյան հանրությանը։

Բնավ պատահական չէ, որ լենինյան դարի հանճարեղ երգիչ Ե. Չարենցը պատգամում էր գալիք սերունդներին.

**Չի ընթանում սակայն երբեք պատմությունը դեպի ետ.**

**Ինչ որ կյանքում վեհ է ու լավ— մեր մեջ է արդ ու մեզ հետ։**

Գաղափարախոսական ոլորտի բոլոր գործիչների պարտականությունն է՝ առավել բարձր մակարդակով վարել սովետական նոր մարդու սոցիալական ակտիվության, աշխատավորությանն ավելի կենդանի և հրապուրիչ ձևերով մատուցել մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարները, հետևողական և անզիջող պայքար մղել բուրժուական աշխարհից մեզ մնացած նացիոնալիզմի մնացուկների դեմ։ Այս առումով կուսակցական կազմակերպություններին, պրոպագանդիստներին, մեր հանրապետության բոլոր աշխատավորներին ղեկավար ուղեցույց պետք է լինի Լ. Ի. Բրեժնևի՝ ՍՍՀՄ հիսնամյակին նվիրված հիմնարար զեկուցումը, որում ամփոփված են ՍՄԿԿ ավելի քան կեսդարյա փիթխարի գործունեության արդյունքները, որ նվաճվել են սոցիալիզմի առաջին երկրի տնտեսական ու քաղաքական հզորության ամրապնդման, սոցիալիստական ազգերի զարգացման ու մերձեցման, մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարների կենսագործման ոլորտներում։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԼԵՆԻՆՅԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՌԵՎԻԶԻՈՆԻԶՄԻ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ*

Ս. Ֆ. ՕԴՈՒԵՎ
փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*Մարքսիստական փիլիսոփայության բնագավառում Վ. Ի. Լենինի երկերը, սկսած 90-ական թվականների* «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» *աշխատությունից և վերջացրած* «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» *նրա վերջին փիլիսոփայական հոդվածով, փիլիսոփայական ոգեշունչ ստեղծագործության մի միասնական, անքակտելի շղթա են, որից չի կարելի անջատել ոչ մի օղակ, և կամ հակադրել մեկ օղակը մյուսին։ Խոսքը ո՛չ միայն այն աշխատությունների մասին է, որոնցում փիլիսոփայական պրոբլեմատիկան քննության է առնվում պրոֆեսիոնալ ձևով, այլ փիլիսոփայական ամենախոր պաթոսով տոգորված նրա տեսական ու քաղաքական ողջ գործունեության։ Այստեղ տեսությունն ու քաղաքականությունը օրգանապես այնքան են միահյուսված, որ դրանք չի կարելի անդամատել. փիլիսոփա, մտածող Լենինը անբաժանելի է հեղափոխության տակտիկ, մեծ ստրատեգ և աշխարհում առաջին սոցիալիստական պետության ղեկավար Լենինից։ Մարքսիզմը, նրա մեթոդը, նրա տեսական հիմունքները ստեղծագործաբար զարգացնելով հեղափոխական պրակտիկայի նոր պայմաններում, Վ. Ի. Լենինը փիլիսոփայությունը հասկանում և կիրառում էր որպես պրոլետարիատի հոգևոր զենք՝* մարդու ազատագրության, կոմունիզմի իդեալների կենսագործման համար *նրա մղած պայքարում։ Տեսության և պրակտիկայի միասնությունը լենինիզմի, նրա բովանդակության ու ոճի առավել բնորոշ հատկանիշն է։ Լենինի՝ միջազգային բանվորական շարժման ճանաչված առաջնորդի, մեր երկրի սոցիալիստական վերափոխումների նախաձեռնողի ու ոգեշնչողի պրակտիկ քաղաքական ամբողջ գործունեությունը, մի խոսքով՝ այն ամենը, ինչն անվանում ենք Լենինի գ ո ր ծ, խարսխվում է գիտական տեսության անխախտ հիմքի վրա, որի անկյունաքարերը դրել են Մարքսը և Էնգելսը։*

**) Տպագրվում է համառոտումներով։— ԽՄԲ.։*

Տեսության և քաղաքականության մեջ հետևելով Մարքսի հեղափոխական մեթոդին, նրա դիալեկտիկայի կենդանի ոգուն, հենվելով նրանց մշակած գիտական սկզբունքների ու չափանիշների վրա, պաշտպանելով դրանց անաղարտությունը բուրժուական կեղծարարների և ռևիզիոնիստական խեղաթյուրումների դեմ մղված մարտերում, Լենինը անգնահատելի ավանդ ներդրեց մարքսիզմի գանձարանը, առաջ քաշեց ու հիմնավորեց տեսական մի շարք նոր դրույթներ ու հետևություններ, որոնք ոչ միայն հետագա սոցիալական պրակտիկայի և պատմական նոր պայմաններում աշխատավորների ազատագրական պայքարի, գիտության և գիտելիքների առաջընթացի տեսական ընդհանրացումներ են, այլև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության հաղթանակի շնորհիվ սկսված նոր դարաշրջանի ընդհանուր և սպեցիֆիկ օրինաչափությունների տեսական կանխագուշակում և, հետևաբար, սոցիալական կանխատեսման, առկա սոցիալական կեցության և հոգևոր կացության նպատակասլաց փոփոխման տեսություն ու մեթոդոլոգիա՝ այս կամ այն երկրում կամ երկրների խմբում առաջացող առանձնահատկությունների հաշվառմամբ։

Առանց լենինյան տեսական ժառանգությանը տիրապետելու, առանց լենինյան մտքի ողջ հարստությունը յուրացնելու, առանց հաշվի առնելու այն ամենը, ինչ Լենինը ներդրել է մարքսիզմի տեսության մեջ, այժմ հնարավոր չեն ո՛չ այդ տեսության արդյունավետ մշակումը, ոչ էլ ստրատեգիական կամ տակտիկական հաջողությունը կոմունիզմի հիմունքներով աշխարհի պրակտիկ վերափոխման գործում։ Այդ մասին շատ դիպուկ է ասել մեր ժամանակի ականավոր մարքսիստ-լենինյաններից մեկը՝ Պալմիրո Տոլյատին. «Այն ամենը, ինչ արել է Լենինը, տեսականորեն ու գործնականորեն վերաբերում է ողջ բանվոր դասակարգին և աշխարհի ժողովուրդներին... չկա մի մտածող, պատմաբան, գիտնական, փիլիսոփա, որը այդ տեսակետից համեմատվեր Լենինի հետ... Լենինի վիթխարի գործունեությունը իր արտացոլումը գտավ փիլիսոփայական ու քաղաքական մտքի նրա հիմնարար կլասիկ աշխատություններում։ Ոչ ոք չի կարող անտեսել, չուսումնասիրել այդ աշխատությունները, եթե ուզում է որևէ բան հասկանալ այն ամենից, ինչ տեղի է ունեցել պատմության վերջին կես դարում և ինչ տեղի է ունենում այժմ» (П. Тольятти. Избранные статьи и речи. М., 1965, т. 2, стр. 362—363)։

Եվ աշխարհում որքան մեծանում են լենինյան գաղափարների հեղինակությունն ու ազդեցությունը, որոնք վճռական ներգործություն են ունենում ժամանակակից դասակարգային պայքարի ընթացքի ու ելքի վրա, այնքան բուրժուազիան ու նրա տեսական ջատագովները ավելի լայնորեն են ծավալում արշավանքը մեր դարաշրջանի մարքսիզմը մարմնավորող լենինիզմի դեմ, զուր ջանալով պսակազերծել այն որպես տեսական դրոշ, որի տակ այժմ ծավալվում է մարդկության ազատագրական շարժումը, աղավաղված լույսի տակ ներկայացնել նրա ազդեցությունը մարդկանց մտքերի ու սրտերի, մեր ժամանակի գաղափարական և հոգևոր մթնոլորտի վրա։

Սովետական ժողովուրդը, կատարելով Վ. Ի. Լենինի պատգամները, տնտեսական, պետական և կուլտուրական շինարարության բնագավառում հասել է աննախընթաց հաջողությունների, որոնք հայտնի են մարդկանց բացարձակ մեծամասնությանը։ Այդ հաջողություններն այնքան անվիճելի են, որ դրանք չեն կարող չընդունել նաև մեր թշնամիները։ Դա, անկասկած, մեր լենինյան կուսակցության ծառայությունն է։ Քաղաքականության մեջ հետևելով լենինյան կուրսին, նորանոր հաղթանակներ են ձեռք բերում սոցիալիստական մյուս պետությունների կոմունիստական կուսակցությունները։



Լենինյան գաղափարական ժառանգության դեմ կազմակերպված արշավանքին ակտիվ մասնակցում են նաև իրենց մարքսիզմի կողմնակիցներ, «ճշմարիտ», «ստեղծագործական», «իսկական» մարքսիստներ անվանող շատ տեսաբաններ և ուրիշներ, որոնք պայքարում են մարքսիզմը «վերածնելու», այն հետագա լրացումներից «մաքրելու» համար և այլն։ Հայտարարելով, որ իրենք կողմնակից են մարքսիզմին, նման տեսաբանները, իհարկե, չեն կարող թեկուզ խոսքով ժխտել, որ Վ. Ի. Լենինը եղել է Մարքսի աշակերտն ու հետևորդը և զարգացրել է նրա ուսմունքը. դա կնշանակեր հրաժարվել նաև մարքսիզմից։ Բայց լենինիզմը նրանք այնուամենայնիվ դիտում են որպես մարքսիզմի մեկնություններից մեկը միայն, որը ծագել է ռուսական սպեցիֆիկ հողի վրա և ճանաչում ստանալու իրավունք ունի իր մյուս մեկնություններին հավասար։

Զանդրադառնալով մարքսիզմի ռևիզիայի տենդենցներ ծնող պատճառների վերլուծությանը (սկզբունքորեն դրանք պարզաբանել են Վ. Ի. Լենինը և մյուս մարքսիստները), մենք կփորձենք միայն ցույց տալ լենինյան տեսական ժառանգության ռևիզիայի «նորագույն» եղանակներն ու ձևերը, նրա օբյեկտիվ հետևանքները, որոնք առաջանում են անկախ նրա քննադատների անձնական մտադրություններից։

50-ական թվականներին ռևիզիոնիստական շրջաններում մոդա էր դարձել «Ետ՝ դեպի Մարքսը» լոզունգը։ Այդ պրիոմը ինքնին նոր չէ։ Հեղափոխական մարքսիզմի դեմ, արդիականության սոցիալական շարժումների և գիտական իմացաբանության արմատական տեղաշարժերի փորձի հիման վրա նրա իբրք ստեղծագործական հարստացման դեմ մղվող պայքարում բոլոր երանգների ռևիզիոնիստներն անխուսափելիորեն դիմում էին Մարքսին, ջանալով ապացուցել, թե միայն իրենք են հասկանում «իսկական» մարքսիզմը և թե ամեն մի այլ մեկնաբանություն ոչ այլ ինչ է, եթե ոչ «դեֆորմացիա», «խեղաթյուրում», «վոլյունտարիզմ» և այլն։ Նման մեղադրանքներ քանիցս լսել են և՛ Վ. Ի. Լենինը, և՛ նրա աշակերտները, լենինյանները։

Ճիշտ այնպես, ինչպես 50-ական թվականներին նորից էին «հայտնագործում» Մարքսին, նրա ուսմունքը ձերբազատելով հետագա «շերտադարսվածքներից», «դոգմատիկական», «պոզիտիվիստական», «սցիենտիստական» և այլ խեղաթյուրումներից, որոնք իբր թույլ են տվել նրա հետևորդները, նույն պրիոմներն էլ սկսեցին կիրառել Լենինի տեսական ու քաղաքական մտածողության նկատմամբ. գնալով ավելի ու ավելի բարձրաձայն են հնչում լենինիզմը «փրկելու» իբր, տեղի ունեցած դեֆորմացիաներից այն «մաքրելու» պահանջները, փորձում են «սպամենաշնորհացնելու» այն, ցույց տալու «ճշմարիտ», «իսկական» լույսի տակ և այլն։ Այդ պահանջներն արդեն դարձել են վերջին ժամանակներս հայտնված որոշ աշխատությունների վերնագրեր,— Ֆ. Մարեկի և Է. Ֆիշերի Իրականում ինչ է ասել Լենինը երկը, որի հեղինակներն այն հորինել են քմահաճորեն քաղված և տենդենցիոզ կերպով մեկնաբանված լենինյան ցիտատների հիման վրա. Է. Ֆիշերի Իրականության նետերով գիրքը, ուր Լենինը ներկայացված է իբրև մի հեղափոխական ռոմանտիկ, ուտոպիստ, որն ստիպված է եղել հետամնաց Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո էական ուղղումներ մտցնել իր իսկ տեսական կոնցեպցիաների մեջ. Լենին առանց առասպելների (երկհատոր ժողովածու, որ 1971 թվականին հրատարակվել է Զագրեբում՝ Վ. Ի. Լե-

նինի ծննդյան 100-ամյակին նվիրված սիմպոզիումում քննարկելու համար ներկայացված նյութերի հիման վրա) և այլն։

Նման «հետազոտությունների» հեղինակներին ամենից քիչ իրականությունն է հուզում, որին նրանք ցանկանում են պաշտպան կանգնել. Նրանք ոգեշընչվում են այլ կարգի նպատակներով ու խնդիրներով՝ խարխլել պատմականորեն ստեղծված պատկերացումները Լենինի մասին՝ որպես մեծ տեսաբանի, փիլիսոփայի, հեղափոխական տեսության ու պրակտիկայի հանճարի, որի գաղափարներն ու գործերը ցնցեցին աշխարհը, մարդկության համար լուսավորեցին սոցիալական և հոգևոր ազատագրության հուսալի ճանապարհը։ Նրանք ցանկանում են անվստահություն սերմանել լենինյան գաղափարների ու գործերի նկատմամբ, իրականության փոխարեն հաստատել սեփական առասպելները։

Ռևիզիոնիստների գլխավոր խնդիրն է՝ թաղել լենինիզմը, որպես աշխարհը վերափոխող անհաղթելի ինտերնացիոնալ ուսմունք, որպես մեր դարաշրջանի մարքսիզմ։ Մարեկը չի համարձակվում ժխտել լենինիզմի միջազգային պատմական նշանակությունը՝ թեկուզ և նրա տեսության, ստրատեգիայի ու քաղաքականության մի քանի ասպեկտներում։ Սակայն նա փորձում է այն հանգեցնել իմպերիալիզմի՝ որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիայի վերլուծությանը, ընդամին, դիմելով Հիլֆերդինգին, որի հետազոտության վրա իբր ամբողջապես հենվում էր Վ. Ի. Լենինը։

Այսպիսով մարքսիզմի զարգացման լենինյան փուլը մի կողմ է նետվում։ Լենինիզմը որպես բոլոր մարքսիստական կուսակցությունների կողմից ճանաչված «տակտիկայի օրինակ բոլորի համար» հայտարարվում է իշխանության գլուխ անցած ռուս կոմունիստների հայտնագործություն, որի իմաստն է՝ իրենց սեփական փորձը ենթարկել «կանոնացման», որը լենինյան միտքը պարտադիր է դարձնում գիտության բոլոր, ինչպես և փիլիսոփայության, էսթետիկայի և այլ բնագավառների համար, որոնցում Լենինը «իրեն խոշոր մասնագետ չէր համարում»։ Այստեղից էլ սկսվում է նոր զիգզագ լենինյան ժառանգության «վերագնահատման» մեջ, քաղաքագետ Լենինը անջատվում է փիլիսոփա Լենինից։ Ընդամին, Մարեկը գովեստներ չի խնայում քաղաքագետ, ստրատեգ, կազմակերպիչ Լենինի հասցեին, բայց նրան պատկերում է ինչ-որ մի ռացիոնալիստի և վոլյունտարիստի տեսքով, որպես «հեղափոխական կրքի հրաբուխ, որը ցանկանում է որոշակի հանգամանքներում հասնել անհնարինին», տեսությունը հարմարեցնում է «իր անձնավորության թափին և իր անմիջական նպատակային դրույթների պահանջին։ Այնինչ անկանխակալ հետազոտողը չգիտե, որ Լենինը, ինչպես ոչ ոք, կարողանում էր իր գործունեության ընթացքում իրականության, պատմական զարգացման օրինաչափությունների գիտական օբյեկտիվ վերլուծությունը զուգորդել կոնկրետ իրավիճակի, գործող ուժերի տեղաբաշխման, սուբյեկտիվ գործոնների ազդեցության լրջմիտ հաշվառմանը։

Եթե անցյալում ռևիզիոնիզմը դեռ ինչ-որ ձևով փորձում էր լուսը մնալ, հայտարարելով իր հավատարմությունը (թեկուզ դոգմատիկական) մարքսիզմին՝ որպես ամբողջական տեսության, ապա այժմ այդ կեղծ, երկերեսանի հավատարմությունից շատ քիչ բան է մնացել։ Ժամանակակից ռևիզիոնիզմը հանդես է գալիս մարքսիզմի զարգացման լենինյան փուլը ճանաչելու դեմ՝ առանձ-



նապես նրա փիլիսոփայության բնագավառում, գիտակցելով, որ այդ ճանաչումը կկասեցներ բուրժուական մոդայական նմուշներով կեղծ մարքսիզմի զանազան տարբերակներ հնարելու «ազատությունը»։ Մարքսիզմի լենինյան փուլի ճանաչումը, իբր, «դոգմատիզմի մեջ խրված» սովետական մարքսիստների՝ ոչընչով չարդարացված «մենաշնորհային» հավակնությունն է, նրանց «տեսական գերիշխանության» դրսևորումը, Մարքսի ուսմունքի «նախասկզբնական» բովանդակության և իմաստի տեղաշարժումը՝ այն «ռուսական իրականության հակասություններին» հարմարեցնելու նպատակով։ Այդ է ներկայիս ռևիզիոնիստների բազմաձայն խմբի լեյտմոտիվը՝ սկսած «պրակսոլոգիայի» երկրպագուներից մինչև Է. Ֆիշերը, Ֆ. Մարեկը, Ռ. Գարոդին և ուրիշներ։ Այդ խմբում որոշակիորեն կարելի է ջոկել չեխոսլովակյան աջերի տեսաբանների ձայները, որոնք փորձում էին հիմնավորել «մարդկային դեմքով սոցիալիզմի» մոդելը։ Ահա, օրինակ, ինչ էր գրում նրանց լիդերներից մեկը՝ Ցիսարժը. «Չի կարելի ժխտել այն բանի որոշ բացասական կողմերը, որ սովետական կոմունիստների ընդհանրացված փորձն ատիճանաբար տարածվում էր որպես մարքսիստական մտածողության, մարքսիստական քաղաքականության զարգացման միակ հնարավոր ուղղությունը, որ լենինիզմը ժամանակի ընթացքում վերածվեց մարքսիզմի մենաշնորհային մեկնության» („Rude Pravo“. 7. Kvetna, 1968); Թե այս ակնարկների հետևում ինչ է թաքնված, ավելի որոշակիորեն արտահայտել է Յա. Ուհերը։ Մարքսիզմի «լենինյան փուլ» հասկացությունը, հավատացնում է նա, «արդեն ինքնին, եթե նկատի ունենանք մարքսիստական փիլիսոփայության փաստական զարգացումը XX դարում, ծնում է բազմաթիվ պրոբլեմներ և թյուրիմացություններ։ Այն առնվազն նեղ է։ Նրա այդպիսի կատեգորիկ (եթե ոչ դոգմատիկ) ըմբռնումը տեղ չի թողնում որոշ ստեղծագործ մարքսիստների համար, ինչպիսիք էին, օրինակ, Անտոնիո Լաբրիոլան, Անտոնիո Գրամշին, Գեորգ Լուկաչը և մի քանի այլ անձինք (էլ չենք խոսում, ավելացված է տողատակում, Կարլ Կորշի Մարքսիզմը և փիլիսոփայությունը աշխատության և դրա երկրորդ հրատարակության ներածական հոդվածի մասին։ Եվ, քանի որ լենինյան փուլի այդ ըմբռնումը, ըստ էության, ընդունվում էր որպես XX դարի միակ «ճշմարիտ մարքսիստական» փիլիսոփայություն, ապա ստացվում էր, որ այդ փիլիսոփայությունը այլ եղանակով և ուղղությամբ զարգացնող շատ աշխատություններ ու անձինք չեն մտել մարքսիստական փիլիսոփայության պատմության մեջ»։

Այստեղ ամեն մի բառը կամ շինծու միտք է, կամ կանխամտածված սուտ։ Բավական է բացել մարքսիստական փիլիսոփայության պատմության վերաբերյալ ՍՍՀՄ-ում հրատարակված ամեն մի ամփոփիչ ուսումնասիրություն՝ համոզվելու համար, որ այդ պատմության մեջ արժանի տեղ են գրավում և՛ Ա. Լաբրիոլան, և՛ Ա. Գրամշին (որոնց, ի դեպ, Պ. Տոլյատին անվանում է հետևողական լենինյաններ), և՛ Կ. Լիբկնեխտը, և՛ Ռ. Լյուքսեմբուրգը, և՛ Պ. Լաֆարգը, և՛ Ֆ. Մերինգը, և ուրիշ շատ մարքսիստներ, ինչպես նաև Գ. Լուկաչը (որը, չնայած իր տեսական սխալներին ու նահանջներին, միշտ էլ ընդգծում էր իր նվիրվածությունը լենինիզմին)։ Իհարկե, այդ հրատարակությունների մեջ մարքսիստների թվում չեք գտնի Կ. Կորշի անունը (տողատակի տեքստից դատելով, Ուհերը ամենից ավելի հոգում է հենց նրա մասին) և ուրիշ «հետազոտողների, Ա. Լեֆևրի, Է. Բլոխի, Է. Ֆրոմի, Գ. Մար-





կուզեր, Տ. Ադոռնոյի, որոնց, իբր, հարկավոր է դասել Լենինի կողքին։

Սակայն, քանի որ ոչ ոք ի վիճակի չէ ջնջելու Լենինի անունը մարքսիզմի պատմությունից, նսեմացնելու նրա ստեղծագործական ավանդը մարքսիստական տեսության զարգացման ոլորտում, «քննադատական» ռևիզիոնիստական գրականության մեջ նշմարվում են ինչ-որ նոր, կարծես անսպասելի, բայց փաստորեն կեղծարարությունների նույն հունով ընթացող տենդենցներ՝ լենինիզմն ընդունել (իհարկե՝ խոսքով) որպես մի որոշ ինտերնացիոնալ հոսանք, որը «մոնոպոլիզացրել», «ռեկվիզիայի է ենթարկել տեսության և պրակտիկայի գործում գերիշխանության հավակնող մեկ կոմունիստական կուսակցություն։ Այս իմաստով, գրում է, օրինակ, Մ. Ֆիլիպովիչը, ամենակարևոր ռեկվիզիան պետք է համարել լենինիզմը մեկ պետական գաղափարախոսության շրջանակներով սահմանափակելու ձգտումը՝ այն ներկայացնելու որպես «միաձուլության գաղափարախոսություն, զինված հեղափոխությունների և պատերազմների գաղափարախոսություն, սոցիալիզմի մեկ մոդելի գաղափարախոսություն»։ Ինչ վերաբերում է Ֆիլիպովիչին, ապա նա, ընդհակառակը, ընդունում է «ժամանակակից լենինիզմի զարգացման տարբերակների հարստությունը» պաշտպանողի կեցվածք, որոնք մեր դարաշրջանում ծագում են «հասարակական-պատմական պայմանների տարբերությամբ պայմանավորված սոցիալիզմի առաջընթացի հիման վրա»։ Մի խոսքով, լենինիզմի պաշտպանության անվան տակ առաջարկվում են նրա «բազմատարբերակ» էրզացներ։ Լենինիզմի հետ վարվում են այն նույն մեթոդով, ինչ և Մարքսի ողջ ուսմունքի հետ։ Արհեստականորեն անդամատված լենինյան տեսական ժառանգությունը փորձում են օգտագործել ժամանակակից ռևիզիոնիզմը փրկելու համար, նրան դավաճանել մաս-մաս, աստիճանաբար «նորացնելով» այն բուրժուական նորագույն աղբյուրներից քաղած տեսություններով։

Ինչպես վերը նշվեց, ռևիզիոնիստական ամենատարածված վերսիաներից մեկը (որոնք նույնպես քաղված են բուրժուական աղբյուրներից) քաղաքագետ Լենինի անջատումն է փիլիսոփա Լենինից, այն կեղծ վերսիան, թե Լենինը, լինելով պատմական խոշոր մասշտաբի քաղաքագետ ու պետական գործիչ, չի եղել, մարքսիզմի ականավոր գիտնական, մտածող, տեսաբան. ընդսմին, նրանք ո՛չ միայն վերարտադրում են բուրժուական նման շառանցանքները, այլև փորձում են «տեսականորեն» հիմնավորել դրանք։ Եթե Մարքսը «ամենից առաջ տեսաբան» է եղել, քարոզում են Ֆիշերը և Մարեկը, ապա Լենինը, չնայած իր տեսական աշխատություններին, եղել է «ամենից առաջ հեղափոխության ստրատեգ և տակտիկ»։ Եթե Մարքսի մոտ խոսքը առաջին հերթին հեղափոխական իմացության մասին էր, ապա Լենինի մոտ, որը մարքսիզմը դիտում է պրակտիկայի, քաղաքականության տեսակետից, «հեղափոխական գործի» մասին է։ Եթե Մարքսը գերազանցապես եղել է իմացության փիլիսոփա, ապա Լենինը պրակտիկ գործողությունների փիլիսոփա է, պրակտիկ, հեղափոխական կուսակցության առաջնորդ, որը միշտ չէ, որ իր որոշումները կապում էր տեսական ենթադրությունների հետ և կամ վերջիններս ենթարկում իր քաղաքական գործողություններին։ Այսպիսով, միաժամանակ ստվեր է գցվում Լենինի վրա՝ որպես քաղաքագետի, որը, իբր, չէր կարողանում իր հեղափոխական գործողությունները մանրամասն ճշգրտել գիտական տեսության կողմնացույցով, հաճախ ղեկավարվում էր ոչ թե տեսական սկզբունքներով, այլ կամային մղումներով և այլն։

Պայքարելով լենինիզմի դեմ՝ որպես «տակտիկայի օրինակ բոլորի հա-



մար», փորձելով ժխտել մարքսիզմի զարգացման լենինյան փուլը, ռևիզիոնիստական կեղծարարները պատրաստ են բոլորովին ժխտել Վ. Ի. Լենինի դերը, ամենից առաջ մարքսիստական փիլիսոփայության՝ դիալեկտիկական մատերիալիզմի, նրա տեսության ու մեթոդի ստեղծագործական հարստացման գործում։ Խուսափելով մարքսիզմի փիլիսոփայության մեջ Լենինի ներդրած ավանդի կոնկրետ վերլուծությունից, դիալեկտիկայի, բնական գիտությունների մեթոդոլոգիայի, գիտական իմացաբանության տրամաբանության, հասարակական պրակտիկայի, դասակարգային պայքարի, կոմունիստական շինարարության օրինաչափությունների, ինչպես նաև փիլիսոփայական գիտության շատ այլ բնագավառներում Լենինի առաջ քաշած տեսական նոր դրույթների և լենինյան ընդհանրացումներն ու կանխատեսումները լիովին հաստատող սոցիալական և գիտատեխնիկական առաջընթացի ռեալ պրոցեսների հարաբերակցության վերլուծությունից, լենինիզմի ռևիզիոնիստական մեկնաբանները գերադասում են մենախոսությունները, որոնց մեջ գիտական փաստարկները նենգափոխվում են կամ սոփեստությամբ և կամ առարկություններ չհանդուրժող դատարկ ճոռոմաբանությամբ։ Ըստ որում ելակետային նախադրյալ է հանդիսանում այն պնդումը, թե Լենինը «ուժեղ չէր փիլիսոփայության մեջ», թե իբր Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գրքից բացի, նա չի ունեցել իր կողմից հրապարակման պատրաստված մասնագիտական փիլիսոփայական աշխատություն։ Բայց հենց այդ աշխատությունն էլ, եթե հավատանք նման մեկնաբաններին, որի վրա խարսխվում է գլխավորապես «ոչ քննադատական վերսիան» մարքսիզմի փիլիսոփայության լենինյան էտապի մասին, կատարված է ոչ թե «ակադեմիական մակարդակով, այլ երևան է եկել «քաղաքական բախումների հետևանքով»։ Այդ աշխատության հիմնական դրույթները հետագայում «կանոնացվեցին» և դարձան «ենթադրյալ փիլիսոփայական լենինիզմ»։

Այդ ակնհայտ հերյուրանքը ինչ-որ կերպ ապացուցելու համար լենինիզմի նեոմարքսիստական քննադատները փորձում են փիլիսոփայության մեջ աշակերտ ներկայացնել Լենինին, որը մարքսիզմը յուրացրել է Պլեխանովի և Կաուցկու միջոցով, այն էլ այնպիսի ձևով, որ մշակել էր Էնգելսը՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի ձևով, որի «պարզեցրած» մեկնաբանումները, իբր, տրված են «Բնության դիալեկտիկա» և «Անտի-Դյուրինգ» աշխատություններում։

Մարքսիզմի փիլիսոփայության մեջ Վ. Ի. Լենինի ներդրած ավանդի դեմ սկսված գրոհի գլխավոր ուղղություններից մեկը ծավալվող հարձակումն է իրավացիորեն լենինյան կոչվող՝ արտացոլման տեսության դեմ։ Այդ տեսությունը Լենինը զարգացնում է որպես դիալեկտիկա-մատերիալիստական իմացաբանության ելակետ և միջուկ, նրա դրույթները խարսխելով բնագիտության, հասարակական գիտությունների նորագույն նվաճումների վերլուծության և սոցիալական պրակտիկայի վրա, բացահայտելով այն (արտացոլումը) ոչ թե վերացականորեն, առանց շարժման ու հակասությունների, այլ իբրև դրանց առաջացման և լուծման հավերժական պրոցես։

Լենինիզմի մեկնաբանման ժամանակակից, արդեն կայունացած ավանդական ռևիզիոնիզմը պատրաստ է ընդունելու, որ արտացոլման տեսությունը կապված է Լենինի անվան հետ, բայց դա, ըստ այդ գնահատականի, մարքսիզմի զարգացման գլխավոր (կամ միակ) ուղղությունը չէ և չի կարող լինել։ Այդ ուղին, որով ընթացավ «արևելյան մարքսիզմը», «դոգմատիկ ուղղափա-

ուլթյան» ուղին է, մարքսիստական տեսության կուսակցական, գաղափարախոսական «կանոնացման» ուղին։ Մարքսիզմի ժամանակակից ռևիզիային բնորոշ է, որ հակումը արտացոլման լենինյան տեսության նկատմամբ, նրա ամեն մի ձևով ոչ այլ ինչ է, եթե ոչ դոգմատիզմ, որ հենց այստեղից է անցնում ջրբաժանը «դոգմատիկական» («արևելյան») և «ստեղծագործական» («արևմտյան») մարքսիզմի միջև, որն «իսկականության» իր որոնումները խարսխում է պրակտիկայի մարքսյան ըմբռնման վրա։

Երկրորդ էտապում Լենինի փիլիսոփայական հայացքները, իբր, նշանակալի էվոլյուցիայի են ենթարկվել Հեգելի ազդեցությամբ, որի աշխատությունների ուսումնասիրմանը Լենինը ձեռնամուխ է լինում 1914 թվականին։ Ուսումնասիրելով Հեգելին, Լենինը ավելի խորն է ըմբռնում Մարքսի փիլիսոփայությունը, ազատագրվում է «մեխանիստական մատերիալիզմի» շատ թերություններից, նրա հայացքները, Մարեկի բնորոշմամբ, դառնում են ավելի «երանգավորված», նա կանգնում է դիալեկտիկայի հիմքի վրա, հեռանում է Պլեխանովից, քննադատում է Էնգելսին, նվիրվում ինքնաքննադատությանը, մաքրում է հաշիվները «իր փիլիսոփայական» խղճի հետ, հրաժարվում «երկու լագերների» տեսակետից՝ փիլիսոփայության և նրա կուսակցականության մեջ[1]։ Օբյեկտիվ վերլուծության միջոցով այդ բանն ապացուցել, իհարկե, անհնար է։ Ուստի, հարկադրված, հույսը, ամենից ավելի, դնում են մարքս-լենինյան փիլիսոփայական գրականությանը քիչ ծանոթ արևմտյան ընթերցողի անիրազեկության վրա, և «գիտական» սուտը հաճախ անցնում է ճշմարտության տեղ։ Իսկ խնդիրը, հավանաբար, այն է, որ Լենինին մոտեցնեն իդեալիզմի դիրքերին, ուր անխուսափելիորեն գլորվում է փիլիսոփայական ռևիզիոնիզմը, իրենց նահանջը դիալեկտիկական և պատմական մատերիալիզմից քողարկեն Լենինի հեղինակությամբ, որին համարյա հեգելական են դարձրել։

Բազմաթիվ ռևիզիոնիստ հեղինակների պաշտպանած ահա այս կոպիտ կեղծարարության կապակցությամբ անհրաժեշտ է ընդգծել հետևյալ փաստը, որն անմիջականորեն վերաբերում է Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին հոդվածին, այստեղ Վ. Ի. Լենինը, մատնանշում է. անհրաժեշտ է «սիստեմատիկաբար ուսումնասիրել Հեգելի դիալեկտիկան մատերիալիստական տեսակետից, այսինքն՝ այն դիալեկտիկայի տեսակետից, որ Մարքսը գործնականորեն կիրառում էր և իր Կապիտալում, և պատմական ու քաղաքական աշխատություններում»։ Վ. Ի. Լենինը, կարծես կռահելով բուրժուական և «ռևիզիոնիստական խեղաթյուրումները», զգուշացնում էր, որ «...հեգելյան դիալեկտիկայի այդպիսի ուսումնասիրության, այդպիսի մեկնաբանության և այդպիսի պրոպագանդայի աշխատանքը արտակարգ դժվար է և, անկասկած, առաջին փորձերն այդ տեսակետից կապված կլինեն սխալների հետ» (Երկեր, հ. 33, էջ 275)։ Եվ ոչ միայն սխալների, այլ նաև պրոպագանդիստական խարդախումների հետ, որոնք իրենց թույլ են տալիս փիլիսոփայության մեջ լենինիզմի բացահայտ ու թաքնված հակառակորդները, դրանք դարձնելով սիստեմ և հրամցնելով որպես իսկական լենինյան հայացքներ։ Այդ նույն նպատակի համար էլ օգտագործվում են կոնտեքստից պոկված լենինյան հանձնարարականները «հեգելյան դիալեկտիկայի մատերիալիստական բարեկամների ընկերություն» ստեղծելու մասին, իհարկե, առանց հաշվի առնելու հենց մատերիա-

[1] Այդ մասին հանգամանորեն գրում են և՛ Մարեկը, և՛ Ֆիշերը, և՛ Գարոդին, և՛ «Պրակսիսի» փիլիսոփաները և ուրիշներ։



լիստական մեկնաբանման պահանջը։ «Հենվելով այն բանի վրա, թե ինչպես էր գործադրում Մարքսը Հեգելի մատերիալիստորեն հասկացված դիալեկտիկան,— սովորեցնում է Վ. Ի. Լենինը,— մենք կարող ենք և պետք է բոլոր կողմերով մշակենք այդ դիալեկտիկան» (նույն տեղը)։ Այդ նպատակով նա «Պոդ զնամենեմ մարքսիզմա» ժուռնալի խմբագրությանը խորհուրդ է տալիս տպագրել «հատվածներ Հեգելի գլխավոր երկերից, մեկնաբանել դրանք մատերիալիստորեն, բացատրելով դիալեկտիկայի կիրառման մարքսյան նմուշներով, ինչպես նաև դիալեկտիկայի այն նմուշներով տնտեսական, քաղաքական հարաբերությունների ասպարեզում, ինչպիսիք արտասովոր չափով շատ է տալիս նորագույն պատմությունը, հատկապես արդի իմպերիալիստական պատերազմը և հեղափոխությունը» (նույն տեղը)։

Մեր քննարկած ռևիզիոնիստական վերսիայում հեգելյան տրամաբանության ազդեցությունը կանխամտածված դարձվում է ինքնաբավ, իսկ մատերիալիստական տեսությունները, ինչպես և հասարակության ու դասակարգային պայքարի զարգացման կոնկրետ սոցիալ-պատմական պայմանները բոլորովին հաշվի չեն առնվում, բայց հենց դրանում է դրսևորվել որակապես նորը հեղափոխական պրոլետարիատի աշխարհայացքի մեջ, որը, ինչպես հայտնի է, բոլոր փիլիսոփայական, սոցիալ-քաղաքական ուսմունքների ու գործոնների արդյունքն է, և ոչ թե միայն նախորդ փիլիսոփայական մտքի զարգացման քանակական արդյունքը։ Հենց այստեղ է դրսևորվում լենինյան պահանջների էությունը։

Ռևիզիոնիստ փիլիսոփաները լռության են մատնում Վ. Ի. Լենինի խոսքերը մատերիալիստական տեսակետի մասին, «մոռանում» նրա նախազգուշացումը, որ անհրաժեշտ է հենվել Մարքսի փորձի վրա, որը կլասիկ կերպով կիրառել է մատերիալիստորեն հասկացված հեգելյան դիալեկտիկան, քանի որ լենինյան նախազգուշացումը տվյալ դեպքում ուղղված է նրանց հորինած սխեմայի դեմ, որի համաձայն ստացվում է, թե, իբր, «Փիլիսոփայական տետրեր»-ում Լենինը հեռանում է դիալեկտիկական մատերիալիզմից, բարձրանում է մատերիալիզմից և իդեալիզմից վեր։ Ի դեպ, նման մեկնաբանման մենք հանդիպում ենք նաև Կ. Մարքսի հայացքների վերլուծության ժամանակ, իբր նա իր խնդիրն է համարել այդ հակադրությունից վեր բարձրանալ։

Ավելին «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» հոդվածում Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ անհրաժեշտ է ստեղծել մարտնչող մատերիալիզմի միություն՝ «ժամանակակից բնագիտության ներկայացուցիչների» հետ, որոնք հակվում էին դեպի մատերիալիզմը և չէին վախենում պաշտպանել ու պրոպագանդել այն՝ այսպես կոչված «կրթված» հասարակության» մեջ տիրապետող փիլիսոփայական մոդայական տատանումների դեմ՝ դեպի իդեալիզմն ու սկեպտիցիզմը։ Ռևիզիոնիստական մեկնաբանումը շրջանցում է լենինյան այս պատգամը, շրջանցում է միայն այն պատճառով, որ ժամանակակից բնագիտությունը մի ավելորդ անգամ հաստատում է ռևիզիոնիստական լարախաղացության հակամարքսիստական էությունն ու սնանկությունը, որը դուրս է իդեալիզմից ու մատերիալիզմից։ «Առանց լուրջ փիլիսոփայական հիմնավորման ոչ մի բնական գիտություն, ոչ մի մատերիալիզմ,— սովորեցնում է Վ. Ի. Լենինը,— բուրժուական գաղափարների գրոհի և բուրժուական աշխարհայեցողության վերականգնման դեմ մղվող պայքարում դիմանալ չի կարող»։ Այդ պայքարին դիմանալու և այն լիակատար հաջողությամբ մինչև վերջ

հասցնելու համար բնագետը պետք է լինի «...ժամանակակից մատերիալիստ, գիտակից կողմնակից այն մատերիալիզմի, որը ներկայացրել է Մարքսը, այսինքն՝ պետք է դիալեկտիկ մատերիալիստ լինի» (նույն տեղը, էջ 274)։ Այդ նպատակով էլ հենց Վ. Ի. Լենինը առաջարկում է ուսումնասիրել Հեգելի դիալեկտիկան մատերիալիստական տեսանկյունից։ Ռևիզիոնիզմը իր տեսական կառուցվածքներում չի կարող հենվել գիտության, ժամանակակից բնագիտության նվաճումների վրա (ինչպես նաև սոցիալական պրակտիկայի վրա), քանի որ գիտությունն ու դասակարգային պայքարի օբյեկտիվ ռեալությունը ժխտում են այդ կեղծ կոնցեպցիաները։

Բանավոր պայքարի մեջ մտնելով լենինյան տեսական ժառանգության համար, մարտնչելով լենինիզմի «իսկականության» համար, այն «դոգմատիկական դեֆորմացիաներից» «մաքրելու» համար, նրա «վերածնման», «նորացման» համար և այլն, ժամանակակից ռևիզիոնիստները հետապնդում են միանգամայն որոշակի նպատակներ՝ հաստատել իրենց սեփական տեսական դիրքը՝ որպես միակ ճիշտը մարդկության պատմության արդի էտապում, պատմության դատի առջև ինչ-որ կերպ արդարացնել իրենց դավաճանությունը այն գործին, հեղափոխական այն տեսությանը, որոնց իրենց կյանքը նվիրեցին Մարքսը, Էնգելսը, Լենինը և նրանց համախոհներն ու աշակերտները, այն շարժմանը, որն իր ուղեծրի մեջ է ներգրավում մարդկության նորանոր ջոկատներ, որոնք ավելի ու ավելի սերտորեն են համախմբվում սոցիալիզմի լոզունգների տակ։ Դրա վկայությունն է սանձարձակ հակասովետականությունը, հակակոմունիստական չարանենգությունը, որոնցում մարքսիզմ-լենինիզմի մեր օրերի դավաճանները մրցում են բուրժուական սովետագետների հետ, ընթանալով նրանց հետ միասնական շարքերով։

«Вопросы философии», №3, 1972.

# ՍՈՑՄՐՑՄԱՆ ԾԱՎԱԼՈՒՄԸ ՊՐՈՖՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՍԱԿԱՆ ԽՆԴԻՐՆ Է

ՆՎԱՐԴ ՄՈՒՐԱԴՅԱՆ
ՀԱՄԽ-ի քարտուղար

Սովետական ողջ ժողովուրդը, այդ թվում մեր հանրապետության աշխատավորներն աշխատում են բարձր խանդավառությամբ ու քաղաքական ակտիվության պայմաններում, պայքարում մեր հայրենիքի տնտեսական և սոցիալական առաջընթացի ընդարձակ ծրագրի, կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման համար։

Սովետական ժողովրդի աշխատանքային նվաճումները հանգամանորեն ցույց են տված ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման մեջ։ Բավական է ասել, որ միայն 1972 թ. արդյունաբերական արտադրանքի ծավալը կրկնապատիկ չափով գերազանցում է նախապատերազմյան հնգամյակներում թողարկված արտադրանքը։ 1971—1972 թթ. երկրի գործարաններն ու ֆաբրիկաները 1,5 անգամ ավելի շատ արտադրանք են տվել, քան ութերորդ հնգամյակի առաջին երկու տարում։

Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ մեր աշխատավորների կատարած համառ աշխատանքը հնարավորություն ընձեռեց հետևողականորեն կենսագործելու ժողովրդի բարեկեցության բարձրացման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի հավանությանն արժանացած ծրագիրը։ Միայն 1971—1972 թթ. բարձրացվել են մոտավորապես 34 մլն մարդու աշխատավարձը, կենսաթոշակներն ու կրթաթոշակները։ Այդ տարիներին նոր բնակարաններ են փոխադրվել մոտավորապես 23 մլն մարդ։

Այսպիսով, օրեցօր ավելի է մեծանում Սովետական Միության տնտեսական հզորությունը։ Այս գործում իրենց արժանի ավանդն են մուծում նաև մեր հանրապետության աշխատավորները։ Հայաստանի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի արտադրական կոլեկտիվներից 50-ը, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունում ձեռք բերած հաջողությունների համար արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիս-

տրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվոնշանների, իսկ 188-ը՝ հանրապետական հոբելյանական պատվոգրերի։ Գյուղատնտեսության մի խումբ առաջավորներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով։

Սոցիալիստական մրցության բնագավառում ձեռք բերած հաջողությունների մեջ իրենց ավանդն ունեն նաև արհմիութենական կազմակերպությունները, որոնք կուսկազմակերպությունների ղեկավարությամբ շատ բան արեցին, որպեսզի հոբելյանական տարում ծնունդ առած աշխատավորների նախաձեռնությունները դառնան շատերի սեփականությունը, նպաստեն արտադրական պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմանը։ ՀԱՄԽ-ը, արհմիությունների հանրապետական, շրջանային, քաղաքային, ֆաբրիկա-գործարանային և տեղական կոմիտեները մշակեցին և իրականացրին սոցիալիստական մրցության կազմակերպման գործում եղած թերությունների վերացման բազմաթիվ միջոցառումներ։ Ձեռնարկություններն ու կազմակերպությունները վերանայեցին իրենց սոցիալիստական մրցության պայմանները։ Համապատասխան փոփոխություններ մտցվեցին նաև ժողովրդական տնտեսության ճյուղային սոցիալիստական մրցության պայմաններում, որոշ չափով ուժեղացավ ՀԱՄԽ-ի և արհմիությունների հանրապետական կոմիտեների պրակտիկ օգնությունը սկզբնական կազմակերպություններին։ Ներկայումս հանրապետությունում սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են ավելի քան 700 հազար բանվորներ ու ծառայողներ, կոլտնտեսականներ, ինժեներներ ու տեխնիկներ։ Նրանցից 250 հազարը պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի պատվավոր կոչմանն արժանանալու համար, մոտ 10 հազարն արդեն կրում են այդ բարձր կոչումը։

Ուշադրության է արժանի «Էլեկտրոն» գործարանի արհմիութենական կազմակերպության դրական աշխատանքը։ Այստեղ մրցությունն ընդգրկում է արտադրական գործունեության բոլոր կողմերը։ Մարդիկ պարտավորություններն ստանձնում են կոնկրետ, նախօրոք մշակված պայմաններին համապատասխան։ Լայնորեն ծավալվել է անհատական մրցությունը, յուրաքանչյուր բանվոր գիտի, թե ինչ խնդիրներ են դրված կոլեկտիվի առջև և որոնք են իր անելիքները դրանք լուծելու համար։ Գործարհկոմը լուրջ ուշադրություն է նվիրում առաջավորների փորձի ուսումնասիրմանն ու արմատավորմանը, գյուտարարական ու նորարարական առաջարկությունների ներդրմանը, սոցիալիստական մրցության հրապարակայնությանը, ցուցադրական ագիտացիային։ Սոցիալիստական պարտավորությունների մեջ մեծ տեղ է տրված նաև կոլեկտիվի անդամների բնակարանային-կենցաղային պայմանների բարելավման, կուլտուրական հանգստի կազմակերպման հարցերին։ Սովետական Միության առաջավոր ձեռնարկությունների օրինակով կառուցվել և շահագործման է հանձնվել 1.000 նստելատեղով նոր ճաշարան, որտեղ գործարանի աշխատողները կարող են նախաճաշել 20 րոպեում։ Մրցությունում հաղթողները, դրամական խրախուսանքից բացի, ստացել են ձրի ուղեգրեր և հանգստացել հանրապետության ու Միության սանատորիաներում և հանգստյան տներում։ «Էլեկտրոն» գործարանի կոլեկտիվը, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները, հաշվի առնելով իրենց հնարավորությունները, պարտավորվել են 1974 թ. լիովին լուծել բանվոր-ծառայողների բնակարանային հարցը։

Աշխատանքի նման ոճը չէր կարող չտալ իր դրական արդյունքը։ Գործարանը սիստեմատիկ կատարում և գերակատարում է արտադրական պլանները,



աշխատում է շահույթով և նախատեսված նյութերի խնայողությամբ։ Աշխատանքի արտադրողականությունը 1971 թ., 1970 թ. համեմատությամբ, աճել է 39, իսկ 1972 թ.՝ 58 տոկոսով։ Ձեռնարկությունը վերջին երեք տարիների ընթացքում իր ձեռքին է պահում ռադիոարդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի առաջին կարգի մրցանակն ու փոխանցիկ դրոշը։ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ գործարանը հաղթող ճանաչվեց և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվո նշանի։

Սոցիալիստական մրցության կազմակերպմամբ լավ են զբաղվում նաև «Հայէլեկտրալույս», Արզնու «Բյուրեղ» արտադրական միավորումների, Լենինականի դարբնոցա-մամլիչային սարքավորումների, Կիրովականի «Ավտոգենմաշ», քիմիական մանրաթելի, Չարենցավանի գործիքաշինական գործարանների, Քաջարանի պղնձամոլիբդենային, Ղափանի պղնձահանքային կոմբինատների և արդյունաբերական ու տրանսպորտային շատ այլ ձեռնարկությունների, կառույցների արհմիութենական կազմակերպություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1972 թ.) պլենումը կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց սոցիալիստական մրցության լայն ծավալման վրա։ Սոցիալիստական մրցությունը մեր երկրում միշտ եղել և մնում է աշխատավորների նախաձեռնության զարգացման, արտադրության ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, ժողովրդատնտեսական պլանների կատարման և գերակատարման արդյունավետ միջոց։ Այդ իրողությունը մեկ անգամ ևս շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «1973 թ. ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» որոշման մեջ, որը քաղաքական մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ է։ Նրանում արտացոլված է սոցիալիստական մրցության կազմակերպման լենինյան գաղափարների հետագա զարգացումը, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղի առջև դրված կոնկրետ խնդիրները, ցույց են տրված դրանց լուծման ուղիները, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների անելիքները։

1973 թ. վճռական տարի դարձնելու և հնգամյակը ժամկետից շուտ կատարելու մասին կուսակցության կոչը լայն արձագանք գտավ նաև մեր հանրապետության աշխատավորության շրջանում։ 1973 թ. հունվարի 3-ին հրապարակվեց Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի, «Հայէլեկտրալույս» աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանակիր և Ստ. Շահումյանի անվան աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանակիր կաշվեղենի արտադրական միավորումների, Երևանի «Էլեկտրոն», Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանների, «Երարդշին» աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանակիր տրեստի կոլեկտիվների դիմումը՝ ուղղված հանրապետության աշխատավորներին՝ իններորդ հնգամյակի երրորդ տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար սոցիալիստական մրցություն ծավալելու մասին։

Ի պատասխան այդ կոչի, հանրապետության ձեռնարկությունների, շինարարական, տրանսպորտային, կապի և մյուս կազմակերպությունների, կոլտն-

տեսությունների ու սովխոզների կոլեկտիվները ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ։

Մրցությունն այսօր ստացել է նոր որակ ու բովանդակություն, որի ընթացքում ծնվում են հայրենասիրական նոր գործեր։ Նախաձեռնություններով հանդես են գալիս հազարավոր բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, կոլտնտեսականներ, բրիգադաներ, արտադրամասերի ու տեղամասերի կոլեկտիվներ։ Այդպիսի նախաձեռնության հեղինակ է արդյունաբերական շինարարության մինիստրության № 1 շինտրեստի 2-րդ շինվարչության ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանակիր Գ. Սարգսյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի կոմպլեքսային բրիգադան։ Փոքրիկ այս կոլեկտիվը պարտավորվել է ժամկետից 2 ամիս շուտ շահագործման հանձնել իր կառուցած բնակելի շենքը՝ 2.826 քմ ընդհանուր տարածությամբ, 1973 թ. առաջադրանքները կատարել մինչև նոյեմբերի 29-ը, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 10 տոկոսով, օբյեկտները շահագործման հանձնել միայն գերազանց գնահատականով, շինարարական աշխատանքների արժեքը կրճատել 3—10 հազար ռուբլով։ ՀԱՄԽ-ի նախագահությունը քննարկեց Գ. Սարգսյանի բրիգադայի նախաձեռնությունը և հանձնարարեց արհմիութենական կոմիտեներին՝ լայնորեն տարածել այն։

Հայրենասիրական նախաձեռնություններով հանդես են եկել և բարձր պարտավորություններ ստանձնել նաև Երևանի «Հիդրոհաղորդակ» գործարանի խառատ, 1972 թ. խառատների հանրապետական մրցույթում առաջին տեղ գրաված Ռ. Դավթյանը, էլեկտրատեխնիկական գործարանի առաջավոր բանվոր Ս. Ներսիսյանը, ալյումինի գործարանի էլեկտրոլիզավարներ Նախշուն Հակոբյանը, Ս. Գիշյանը, Երքաղսովետի «Երևանշին» գլխավոր վարչության մեքենայացման էքսկավատորավար Վ. Զաքարյանը և շատ ուրիշներ։

«ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումների կենսագործման ասպարեզում արհմիութենական կազմակերպությունների խնդիրների մասին» հարցը քննարկվեց ՀԱՄԿԽ-ի երրորդ պլենումում, որը կայացավ հունվարի 22-ին։ Պլենումն արհմիութենական կազմակերպությունների գլխավոր խնդիրը համարեց բանվորների, կոլտնտեսականների, աշխատավոր ինտելիգենցիայի ստեղծագործական ջանքերի մոբիլիզացումը՝ 1973 թ. վճռական տարվա պլանների կատարման համար, նշեց տնտեսական խնդիրների լուծման հիմնական ուղղություններն ու միջոցները։

ՀԱՄԿԽ-ի պլենումը արհմիութենական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց սոցիալիստական մրցության կատարելագործման և զարգացման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման կազմակերպման հետագա բարելավման, այդ գործում եղած թերությունների վերացման վրա։

Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում ՀԱՄԿԽ-ի բացահայտած թերությունները լիովին վերաբերում են նաև մեր հանրապետությանը։ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններից 97-ը, այդ թվում՝ Երևանի ավտոդողերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանները, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկան և մի շարք այլ ձեռնարկություններ 1972 թ. ո՛չ միայն չկատարեցին իրենց սոցիալիստական պարտավորությունները, այլև պլանով նախատեսվածից պակաս իրացրին 63,3 մլն ռուբլու արտադրանք։ Ավելին, շատ տեղերում չկատարվեցին աշխատանքի արտադրողա-



կանության բարձրացման, կենտրոնացված ներդրումների, նոր տեխնիկայի արմատավորման պլանները, արտադրության մեջ զգալի չափերի են հասնում ձեռքի աշխատանքն ու անհամաչափ աշխատելու արատավոր պրակտիկան, լինում են բանվորական ժամանակի մեծ կորուստներ։ Այդ ամենը վկայում են, որ մեր հանրապետության զգալի թվով ձեռնարկությունների ղեկավարներ և արհմիութենական կոմիտեներ դեռևս անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում սոցիալիստական մրցության կազմակերպմանը, թերագնահատում են այն, մրցությունը չեն դիտում որպես արտադրական պլանների կատարման կարևոր գործոն։ Բազմաթիվ են դեպքերը, երբ մրցությունը կրում է ձևական բնույթ, սոցիալիստական պարտավորություններն ստանձնում են հապճեպորեն, առանց հաշվի առնելու եղած ռեզերվներն ու հնարավորությունները։ Մի շարք ձեռնարկություններում ու կազմակերպություններում, ինչպես, օրինակ, Երևանի № 1 կոշիկի, տրիկոտաժի իրերի ֆաբրիկաներում բանվոր-ծառայողները մինչև այժմ էլ չեն ընդգրկվել մրցության մեջ, չեն ստանձնել անհատական սոցիալիստական պարտավորություններ։

Դեռևս մի շարք տեղերում շարունակվում է այն արատավոր պրակտիկան, երբ մրցողների փոխարեն, գործարհկոմները և, հատկապես, արտադրամասային կոմիտեները կազմում են ստանդարտ պարտավորություններ և հրամցնում կոլեկտիվներին։ Ստացվում է այնպես, որ երբեմն շատ բանվորներ տեղյակ չեն լինում իրենց պարտավորություններին։

Վերջերս ՀԱՄԽ-ը ուսումնասիրեց «Սոցիալիստական մրցության կազմակերպման վիճակը հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրության ենթակայության ձեռնարկություններում» հարցը։ Պարզվեց, որ մինիստրության ձեռնարկությունների զգալի մասը, ինչպես, օրինակ, Մարալիկի շինանյութերի և իրերի, Ջաջուռի կրի, Լենինականի ապակու և մյուս գործարաններում չկան ներգործարանային սոցիալիստական մրցության պայմաններ, չեն սահմանվել սոցմրցության արդյունքների ամփոփման կարգը, ժամկետները, հաղթողների խրախուսման միջոցները։ Չի ծավալված անհատական մրցությունը, արդյունքներն ամփոփվում են դեպքից դեպք, վատ է ցուցադրական ագիտացիան, լրիվ չեն օգտագործվում առաջավորների խրախուսման համար նախատեսված գումարները։

Սոցիալիստական մրցությունն արհմիությունների գործունեության հիմքն է։ Սոցիալիստական պարտավորությունների հետ կապված բոլոր հարցերը պետք է քննարկել բանվոր-ծառայողների ընդհանուր ժողովներում, հասնել այն բանին, որպեսզի կոլեկտիվի անդամներն ընդգրկվեն մրցության մեջ, բանվորը մրցի համանման աշխատանք կատարողի հետ, բրիգադան-բրիգադայի, արտադրամասը-արտադրամասի, ֆերման-ֆերմայի և ձեռնարկությունը-ձեռնարկության հետ։

Գործարար, արդյունավետ մրցությունը փոխադարձ օգնության կարևոր միջոց է։ Հանրապետության բազմաթիվ ձեռնարկություններ մրցում են մեկ—երկու համանման ձեռնարկությունների հետ, որը նպաստում է աշխատանքի ճիշտ կազմակերպմանը, նորի ու առաջավորի ներդրմանը։ Սակայն ձեռնարկությունների մի մասն էլ մրցության մեջ է գտնվում բազմաթիվ, նույնիսկ տարասեռ ձեռնարկությունների հետ, որը բարդացնում է գործը. հնարավոր չի լինում ժամանակին ստուգել պարտավորությունների կատարումը և գործնական կապ պահպանել միմյանց հետ։ Արթիկտուֆ կոմբինատը, օրինակ, մրր-

ցում է հինգ տարբեր կոլեկտիվների հետ։ Կա և հակառակ պատկերը, երբ ձեռնարկությունը ոչ մեկի հետ չի մրցում։ Դրա թվին են պատկանում Երևանի ցինկապատ ամանեղենի գործարանը, կաշույքի № 1 ֆաբրիկան, տրամվայ-տրոլեյբուսի վարչությունը և այլն։

Սոցիալիստական մրցության կազմակերպման մեջ կարևոր են արդյունքների ամփոփումը և առաջավորների խրախուսումը։ Ստուգումները ցույց են տալիս, որ այս հարցերը նույնպես անտեսվում են։ Օրինակ, Երևանի գինու կոմբինատում, հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում մրցության արդյունքներն արտադրամասերում ամփոփվում են յուրաքանչյուր ամիս, ձեռնարկության մասշտաբով միջարտադրամասային արդյունքները՝ եռամսյակը մեկ անգամ, իսկ կաշույքի № 1 ֆաբրիկայում մրցության արդյունքները ինչպես ներքին օղակներում, այնպես էլ ձեռնարկության մասշտաբով ամփոփվում են եռամսյակը մեկ անգամ։ Սա, ինչ խոսք, սխալ ձև է և, պարզ է, չի խթանի արտադրության վերելքը։ Որոշ տեղերում չեն ցուցադրվում մրցության արդյունքները, չկան պատվո և ցուցանիշների տախտակներ, կոմունիստական աշխատանքի և հարվածայինի կոչումները ժամանակին չեն վերանայվում կամ շնորհվում։ Ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները, մինիստրություններն ու գերատեսչությունները հաճախ բավարարվում են մրցության արդյունքների ձևական քննարկումով (տեղերը բաշխելու համար), չեն խորանում գոյություն ունեցող թերությունների պատճառների մեջ, հանդուրժում են պարտավորությունները չկատարողներին։

Սոցմրցության արդյունքների ամփոփումը հասարակ տեխնիկական գործ չէ։ Դա նշանակում է մտածված և խորությամբ վերլուծել յուրաքանչյուր կոլեկտիվի գործունեությունը, բացահայտել պլանների և սոցիալիստական պարտավորությունների թերակատարման պատճառները, համեմատել ծախսված նյութերը ստացված արդյունքի հետ։ Արդյունքների ամփոփման ժամանակ անհրաժեշտ է ո՛չ միայն աջակցել և խրախուսել առաջավորներին, այլև ի հայտ բերել նրանց, ովքեր բարեխղճությամբ չեն աշխատում և դա անել հրապարակայնորեն։

Սոցմրցության կազմակերպման ժամանակ անհրաժեշտ է մրցողների ուշադրությունը բևեռել թողարկվող արտադրանքի որակի բարելավման, նրա հուսալիության, երկարակեցության ու դիմացկունության ապահովման վրա։ Դա առաջին հերթին վերաբերում է թեթև, սննդի, տեղական, փայտամշակման արդյունաբերության ձեռնարկություններին, որոնք շարունակում են ստանալ բողոքներ՝ ցածրորակ արտադրանք թողարկելու և իրացնելու համար։ Կառույցներում ցածր է շինմոնտաժային աշխատանքների որակը, բնակելի շենքերը շահագործման են հանձնվում լուրջ թերություններով, որն առաջացնում է բնակչության իրավացի դժգոհությունը։ Արհմիութենական կազմակերպությունների խնդիրն է՝ գործը կազմակերպել այնպես, որ արտադրանքի որակի համար պատասխան տա առաջին հերթին արտադրողը, և դա իր արտահայտությունը գտնի նրա սոցիալիստական պարտավորության մեջ։ Անհրաժեշտ է առաջավոր ձեռնարկությունների օրինակով կազմակերպել ամենօրյա հաշվառում, ցածրորակ արտադրանքի թողարկումը դիտել որպես արտակարգ դեպք, վճռական միջոցներ ձեռնարկել դրա վերացման համար։

Սոցիալիստական մրցության կազմակերպման մեջ էական նշանակություն ունի աշխատանքի առաջավոր փորձի տարածումը։ Մրցության իմաստը պետք է լինի այն, որ առաջավորների օրինակը ոգևորի ու առաջ մղի մրցող կոլեկ-



տիվներին ու անհատներին։ Այս առումով հատկանշական են Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման հաջողությունները։ Արհմիութենական կազմակերպությունը (նախագահ՝ Լ. Տասալովա) հետևողականորեն զբաղվում է, որպեսզի բանվորները, արտադրության առաջավորներ Վ. Դավթյանի, Գ. Գալստյանի և մյուսների օրինակով, յուրաքանչյուր բանվորական տեղում արդյունավետ օգտագործեն աշխատաժամանակը, կանխեն պարապուրդները, անթերի կատարեն առաջադրանքները և ապահովեն արտադրանքի բարձր որակը։ Երարդշին տրեստի կոլեկտիվը 1972 թ. սոցմրցմամբ ստանձնած պարտավորությունները տեխնիկական-տնտեսական բոլոր ցուցանիշներով ավարտեց դեկտեմբերի 22-ին և կատարեց մոտ 400 հազար ռուբլու արտապլանային շինմոնտաժային աշխատանք։ Շինարարները դրան հասան նոր տեխնիկայի, աշխատանքի առաջավոր մեթոդների, պլանավորման նոր սիստեմի արմատավորմամբ, որակի հսկման արդյունավետ եղանակի կիրառմամբ և աշխատաժամանակի ճիշտ օգտագործմամբ։

Սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպումը և ստանձնած պարտավորությունների կատարման ապահովումը պահանջում են իրականացնել մի ամբողջ շարք սոցիալ-կուլտուրական միջոցառումներ, նորմալ պայմաններ ստեղծել մրցողների համար։ Ճիշտ է, վերջին տարիներին, ներքին ռեսուրսների օգտագործման հաշվին բավական գործ է կատարվել աշխատատար պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, հնացած սարքավորումները նորով փոխարինելու, նոր տեխնոլոգիայի արմատավորման, օդափոխության և լուսավորության գործի բարելավման, ինչպես նաև շենքերի նորոգման, տերիտորիայի բարեկարգման ու բանվորական տեղերում կարգ ու կանոն ստեղծելու ասպարեզում, սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս նաև, որ որոշ օբյեկտներում բանվորների աշխատանքի և սպասարկման գործում կան լուրջ թերություններ։ Առանձին ձեռնարկություններում դեռևս անբավարար պայքար է մղվում դժբախտ դեպքերը կանխելու համար։ Շատ ձեռնարկություններում անբավարար են զբաղվում բանվորների աշխատանքային պայմանների բարելավմամբ։ Արարատի ցեմենտ-շիֆերի, Երևանի կերամիկական իրերի կոմբինատի արտադրամասերում դեռևս բավականին բարձր է արտաղատվող փոշու և գազի տոկոսը, որոշ գործարաններում բանվորական տեղերը վատ են լուսավորված, հանդերձարանները, լվացարանները, ցնցուղները, բուժկետերը, ճաշարաններն ու բուֆետները սակավ են՝ զուրկ տարրական հարմարություններից։ Այդպես է վիճակը № 11 միավորման մետաքսի կոմբինատի մասնաճյուղում, որտեղ ավելի քան 700 բանվոր-ծառայողներ սնունդն ստանում են ընդամենը 20 ափսեով։ Նման վիճակ է տիրում նաև ժամացույցի գործարանում։

Ներկա պայմաններում սուր կերպով է դրվում աշխատանքային կարգապահության բարձրացման հարցը, մեծանում է պահանջկոտությունը աշխատանքի կազմակերպման և արտադրության ղեկավարման նկատմամբ։ Գոհունակությամբ նշելով մեր երկրի աշխատավորների ազնիվ ու բարեխիղճ գործունեությունը, միաժամանակ չենք կարող չասել, որ մեզ մոտ քիչ չեն նաև գործալիքները, անբաններն ու հարբեցողները, տեղից-տեղ փոխադրվող մարդիկ, որոնք սիստեմատիկաբար խախտում են աշխատանքային և արտադրական կարգապահությունը, խանգարում կոլեկտիվին, դժվարություններ ստեղծում պլանների և սոցպարտավորությունների կատարման գործում։ Նրանց

դեմ պայքարելու միջոցները բավական շատ են։ Սակայն, ցավոք, հաճախ տընտեսական և արհմիութենական կազմակերպությունները չեն օգտագործում դրանք, չեն ուզում կպչել մարդկանց խաթրին։ Պաշտպանելով աշխատավորության շահերը, արհմիութենական կազմակերպությունները չպետք է հովանավորեն նրանց, ովքեր խախտում են սոցիալիստական կարգապահությունը, այլ լիովին օգտագործեն իրենց տրված իրավունքները։

Մեր հանրապետության արհմիութենական կազմակերպությունների առջև ծառացած են բավականին լուրջ խնդիրներ, որոնց լուծումը պահանջում է լարված աշխատանք, մեծ ջանքեր, գոյություն ունեցող թերությունների արագ վերացում։ Հարկավոր է բարձրացնել արհմիութենական յուրաքանչյուր գործչի և ակտիվիստի պահանջկոտությունն իր պարտականությունների կատարման նկատմամբ, ամեն կերպ ապահովել աշխատավորության մասնակցությունը արտադրության կառավարմանը, մոբիլիզացնել նրանց ստեղծագործական ջանքերը՝ 1973 թ. վճռական տարվա ժողովրդատնտեսական պլանները անթերի կատարելու համար։ Արհմիութենական կազմակերպությունների պարտքն է ամեն կերպ նպաստել արտադրության մարդկանց նախաձեռնությունների զարգացմանը, կոնկրետ գործերով օգնել ձեռնարկությունների առջև դրված խնդիրների լուծմանը, աշխատանքի չափանիշը չհամարել միայն անցկացրած նիստերի և ընդունած որոշումների քանակը, այլ գործուն մասնակցությունը համընդհանուր առաջընթացին, սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպումը։

Մեծ պատիվ է, որ կուսակցությունը սոցիալիստական մրցության կազմակերպման գործը վստահել է արհմիութենական կազմակերպություններին, հետևաբար, նրանք այդ վստահությունը պետք է արդարացնեն իրենց աշխատանքով, պատվով կատարեն այդ պատվավոր հանձնարարությունը։ Սոցիալիստական մրցության կազմակերպումն արհմիությունների օրվա խնդիրն է։ Հնգամյակի երրորդ, վճռական տարում դրա լուծումն առավել հրատապ է։

---

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՄԻԼԻՏԱՐԻԶՄԻ ՌԵԱԿՑԻՈՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

**Ս. Ա. ՔՈՉԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր

Արդի հեղափոխական ուժերի պատմական նվաճումները հարաճուն ազդեցություն են գործում իմպերիալիզմի ներքին պրոցեսների և քաղաքականության վրա, ստիպում նրան հարմարվել փոփոխված պայմաններին և որոնել գաղափարական-քաղաքական պայքարի նոր ձևեր ու մեթոդներ։ Մոնոպոլիստական բուրժուազիայի դասակարգային պայքարի գլխավոր գործիքը միլիտարիզմն է, որը հենվում է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի բավականաչափ ուժեղ նյութա-տեխնիկական պոտենցիալի վրա։ Մենք չենք կարող հաշվի չառնել,— ասաց Լ. Ի. Բրեժնևը 1969 թ. հունիսին Մոսկվայում կայացած կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում,— որ մեր օրերի իմպերիալիզմը դեռևս հզոր, բարձր կազմակերպված արտադրական մեխանիզմ ունի։ Մենք չենք կարող հաշվի չառնել, որ արդի իմպերիալիզմն օգտագործում է նաև այն հնարավորությունները, որ նրան տալիս է մոնոպոլիաների ավելի ու ավելի սերտաճումը պետական ապարատի հետ։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի արդի փուլի առանձնահատկություններից մեկը տարբեր ընկերությունների վերաճումն է հզոր մոնոպոլիաների-կոնգլոմերատների՝ արտադրության և կապիտալի հետագա համակենտրոնացման հիման վրա։ Այդ գերհզոր կորպորացիաների ձևավորումը բուրժուազիային հնարավորություն է տալիս մանրելու ներքին ոլորտում՝ բռնությունը սոցիալական դեմագոգիայի հետ միահյուսելու առումով, և արագացնում է իմպերիալիզմի ռազմատենչ քաղաքականության նյութական հենարանի՝ կապիտալիստական էկոնոմիկայի ռազմականացման օրինաչափ պրոցեսը։

Հայտնի է, որ միլիտարիզմը արտադրամիջոցների մասնավոր սեփականության վրա խարսխվող դասակարգային հասարակության անհրաժեշտ արգասիքն է։ Շահագործողական խմբերի համար այն մշտապես ծառայել է իբրև իշխանությունը պահպանելու գործիք։ Ժամանակակից միլիտարիզմը ֆիզիկական հարկադրանքի ռազմական մեքենա է, պատերազմի ու բռնության ջատագովություն, ագրեսիայի և ռեակցիայի քաղաքական կուրս։ Իմպերիալիզմի օրոք միլիտարիզմը դառնում է գերիշխող սոցիալական ինստիտուտ, որը կա-

տարում է մոնոպոլիստական բուրժուազիայի հեգեմոնիան բռնությամբ պաշտպանելու ֆունկցիա։ Միլիտարիզմը ներթափանցում է հասարակական կյանքի բոլոր հիմնական՝ տնտեսության, քաղաքականության, գաղափարախոսության ոլորտները, հասնում աննախընթաց մասշտաբների։ Միլիտարիզմը սուր ծայրով ուղղված է ներքին և արտաքին հակաիմպերիալիստական հեղափոխական ուժերի դեմ և բոլոր միջոցներով ձգնում է կասեցնել հասարակական նոր հարաբերությունների գոյավորման ընթացքը։ «Ժամանակակից միլիտարիզմը կապիտալիզմի արդյունք է։ Իր երկու ձևերով նա կապիտալիզմի «կենսական արտահայտությունն է»— որպես ռազմական ուժ, որ կապիտալիստական պետությունները գործադրում են իրենց արտաքին ընդհարումների ժամանակ... և որպես մի զենք, որ իշխող դասակարգերի ձեռքին ծառայում է պրոլետարիատի ամեն տեսակ (տնտեսական և քաղաքական) շարժումները ճնշելու համար...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 228—229)։

Պատմական փորձը ցույց է տալիս, որ մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման օրինաչափությունների գործողության հետևանքով միլիտարիզմի ու ռեակցիայի կենտրոնը պարբերաբար տեղափոխվում է մի կապիտալիստական երկրից մյուսը։ Արդեն երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ակներևաբար նշմարվում էին ամերիկյան իմպերիալիզմի աննախադեպ քաղաքական ակտիվության և հեգեմոնիստական տենդենցների ուրվագծերը։ Պատերազմն ավարտվելուց հետո միակ իմպերիալիստական տերությունը, որ օժտված էր գործուն ռազմա-տնտեսական կարողություններով, ԱՄՆ-ն էր։ Ուստի, պատահական չէ, որ այն դարձավ շահագործման ու ճնշման միջազգային համակարգի գլխավոր պահապանը։ Ամերիկյան իմպերիալիզմը ժամանակակից կապիտալիզմի տնտեսական, ֆինանսական և ռազմական գլխավոր ուժն է։ «Նա ձգտում է գերիշխել ամենուրեք, խառնվում է ուրիշ ժողովուրդների գործերին, անպատկառորեն խախտում նրանց օրինական իրավունքներն ու սուվերենությունը, փորձում է ուժի, կաշառման, տնտեսական ներթափանցման միջոցով իր կամքը պարտադրել պետությունների և աշխարհի ամբողջ շրջանների» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, 1971, էջ 20)։

Իմպերիալիզմի գաղափարա-քաղաքական գործունեության գլխավոր առանցքը պայքարն է ընդդեմ կոմունիստական և ազգային-ազատագրական շարժումների։ Հակակոմունիզմը մոնոպոլիստական բուրժուազիայի ռեակցիոն քաղաքականության անկյունաքարն է։ Այդ տեսակետից հատկանշական են ամերիկյան սենատոր Ջոն Ուիլյամ Ֆուլբրայտի խոսքերը. «...մենք ստեղծել ենք այնպիսի մի հասարակություն, որի գլխավոր զբաղմունքը բռնությունն է... միլիտարիզմի հետ մեկտեղ ամերիկյան հասարակությունն ախտահարված է մեկ ուրիշ կենսունակ վիրուսով՝ հակակոմունիզմի գաղափարական մոլուցքով» (Американский милитаризм, 1970, М., 1972, стр. 5)։

Սակայն վերոհիշյալից չի կարելի հետևցնել, թե ներկայումս թուլացել կամ մարել են իմպերիալիստական տերությունների միջև գոյություն ունեցող տնտեսական, քաղաքական սուր հակասությունները։ ՍՄԿԿ XXIV համագումարում արձանագրվեց, որ ո՛չ ինտեգրացիայի պրոցեսները, ոչ էլ համաշխարհային սոցիալիզմի դեմ համատեղ պայքարելու իմպերիալիստների դասակարգային շահագրգռվածությունը չեն վերացրել իմպերիալիստական պետությունների միջև եղած հակասությունները։ 70-ական թվականների սկզբից հայտնի դարձան իմպերիալիստական մրցակցության հիմնական կենտրոնները. դրանք են՝ ԱՄՆ—Արևմտյան Եվրոպա—Ճապոնիա։



Կասկածից վեր է, որ այդ հակասություններն անդրադառնում են միջազգային հարաբերությունների ընթացքի վրա, ցայտունորեն դրսևորվում իմպերիալիստական տերությունների միջպետական հարաբերություններում։ Սակայն իմպերիալիզմի միլիտարիստական քաղաքականության մեջ գերիշխում է հակակոմունիստական տենդենցը։ Մոնոպոլիստական բուրժուազիայի համադասակարգային ստրատեգիայի գլխավոր ուղղությունը կապիտալիզմի փրկությունն է։ Այդ խնդիրն իմպերիալիզմի պաշտպանները փորձում են լուծել պատերազմների, սպառազինությունների մրցավազքի, ռազմա-քաղաքական ագրեսիվ խմբավորումների միջոցով։ Միայն հետպատերազմյան տարիներին միջազգային իմպերիալիզմը հողագնդի տարբեր գոտիներում սանձազերծեց 30 պատերազմ և ռազմական բախում։ Դրանցում առանձնահատուկ տեղ է գրավում ամերիկյան իմպերիալիզմի ինտերվենցիան վիետնամական ժողովրդի դեմ։ Այդ անարդարացի գործողությունը, որ, ի վերջո, ձախողվեց, դրըսևորեց իմպերիալիզմի միլիտարիստական քաղաքականության և նրա ռեալ հնարավորությունների, նրա ագրեսիվ պլանների և դրանց իրականացման միջև եղած հակասությունը։

Եթե երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակահատվածում ձևավորվում էին իմպերիալիստական պետությունների տարբեր ռազմա-քաղաքական բլոկներ, ապա ներկայումս ստեղծված ագրեսիվ դաշինքներն ուղղված են բացառապես սոցիալիստական երկրների և բոլոր առաջադեմ դեմոկրատական ուժերի դեմ։ «Այդ բարդ կառուցվածքի գլխավոր նպատակը՝ սովետական բլոկի երկրները դաշինքների սիստեմով շրջապատելն է,— խոստովանում է Հ. Քիսինջերը,— անվտանգության վերաբերյալ մեր բոլոր համաձայնագրերը ռեգիոնալ բնույթ են կրում, բայց, այնուամենայնիվ, դրանց գլոբալ նշանակություն է տրվում» (Киссинджер, Ядерное оружие и внешняя политика, М., 1959, стр. 329)։ Այստեղ պարզ տված է, որ բոլոր, այսպես կոչված՝ ռեգիոնալ ռազմա-քաղաքական ագրեսիվ խմբավորումները ծառայում են գլոբալ ստրատեգիական խնդրին՝ վիժեցնել համաշխարհային հեղափոխական պրոցեսը, փրկել կապիտալիզմը։

Երկու համաշխարհային պատերազմների փորձը ցույց է տալիս, որ իմպերիալիզմի ռազմաագրեսիվ բլոկների կազմավորումը համաշխարհային պատերազմի նախապատրաստության բաղկացուցիչ մասն է։ Բնորոշ է, որ մոնոպոլիստական բուրժուազիայի քաղաքական ղեկավարությունը ռազմա-քաղաքական խմբավորումների ստեղծման կուրս ընտրեց երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվելուց անմիջապես հետո։ Յոթ տարիների ընթացքում (1949—1955 թթ.) երևան եկան մի քանի խոշոր իմպերիալիստական ռազմական միավորումներ՝ ՆԱՏՕ (Հյուսիս-ատլանտյան դաշինք), ՍԵԱՏՕ (բլոկ Հարավ-Արևելյան Ասիայում), ՍԵՆՏՕ (բլոկ Մերձավոր և Միջին Արևելքում) և ԱՆԶՅՈՒՍ (Անվտանգության խաղաղօվկիանոսյան պակտ)։ Միլիտարիստական այդ բոլոր բլոկները կազմավորվեցին համաշխարհային ռեակցիայի գլխավոր ուժի՝ ԱՄՆ-ի նախաձեռնությամբ և նրա հովանու տակ։ Միլիտարիստական խմբավորումների համակարգում առաջնակարգ տեղ է գրավում ՆԱՏՕ-ն։ Հյուսիս-ատլանտյան պակտը իմպերիալիստական ագրեսիայի և ավանտյուրաների, Արևմտյան Եվրոպայում սոցիալիզմի ազդեցության ուժեղացմանը դիմակայող, հակակապիտալիստական շարժումների դեմ մղվող պայքարի, Եվրոպայի սոցիալիստական երկրների դեմ ուղղված քայքայիչ դիվերսիոն գործունեու-

թյան օջախն է։ Դրա շրջանակներում են մշակվում միջազգային իմպերիալիզմի հիմնական ստրատեգիական դոկտրինաները։

Ռազմա-ագրեսիվ բլոկների կառուցվածքի բաղադրամասերից մեկը աշխարհով մեկ տարածված ամերիկյան ռազմական բազաներն են։ Ըստ ամերիկյան տվյալների ԱՄՆ-ը 90 երկրներում ունի 429 խոշոր և 2972 փոքր ռազմական բազաներ՝ մեկ միլիոն զինծառայողով։ Այդ երկրների տերիտորիաները վերածվում են հրթիռային տեխնիկայի մեկնարկի հրապարակների։ Անշուշտ, այդ բազաները, ռազմական բախման դեպքում, պատասխան հարվածների օբյեկտներ կդառնան և այդ երկրները ակամա կներքաշվեն պատերազմի հորձանուտը։ Դա նշանակում է, որ ամերիկյան իմպերիալիզմը բազում երկրների ազգային շահերը զոհաբերում է իր իմպերիալիստական նկրտումներին։

Միլիտարիզմի հարուցած բռնության ու պատերազմի պաշտամունքը, հակակոմունիզմի հիվանդագին մոլուցքը ստեղծում են այնպիսի գոյավիճակ, երբ անչափ աճում է զինվորականության դերն ու ազդեցությունը տնտեսական, սոցիալական և քաղաքական ոլորտներում։ Այդպիսի պայմաններում խոշոր կապիտալի և զինվորականության դաշինքը անհրաժեշտություն է դառնում, կազմավորվում է հզոր ռազմա-արդյունաբերական կոմպլեքս, որը երկիրը մղում է պատերազմի։ Այս իրավիճակից շահում են մոնոպոլիաները։ Այսպես միայն 1970 թվականին ԱՄՆ-ի ռազմական մինիստրությունը մոնոպոլիաներին տվել է 50 միլիարդ դոլարի պատվեր։ Ուշագրավ է, որ «Լոկխիդ էյկրաֆտ» կոնցեռնի արտադրության ընդհանուր ծավալի 80 տոկոսը կազմում են Պենտագոնի ռազմական պատվերները։ Հատկանշական է, որ շահույթի միջին նորման ԱՄՆ-ի արդյունաբերության մեջ 5,5—6,5 տոկոս է, իսկ գլխավոր ռազմական կապալառուներինը՝ հասնում է 50—70 տոկոսի։

Ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի հարաճուն ազդեցությունը ամերիկյան հասարակության վրա ընդհանրապես կատարվում է սանձարձակ հակակոմունիստական, հակասովետական պրոպագանդայի ֆոնի վրա։ Վերահիշյալ երևույթն անհանգստացրեց ԱՄՆ-ի որոշ քաղաքական գործիչների ու գաղափարախոսների, որոնք այդ տենդենցի ուժեղացման մեջ ամերիկյան հասարակության ինքնաքայքայման նախանշաններ են նկատում։ Այդ երկյուղն ակնառու դրսևորվում է սենատոր Ջ. Ֆուլբրայտի հետևյալ դատողության մեջ՝ «Ես կարող եմ համոզված ասել, որ եթե ամերիկյան դեմոկրատիան ոչնչացվի գալիք սերնդի կյանքի ընթացքում, ապա նա կոչնչացվի ոչ ռուսների և ոչ էլ չինացիների, այլ հենց մեր կողմից և այն միջոցների օգնությամբ, որոնք մենք օգտագործում ենք, իբր, հենց այդ դեմոկրատիան պաշտպանելու համար» (Американский милитаризм, 1970, стр. 237—238)։

Դեռևս 1961 թվականին Դուայտ Էյզենհաուերը տրտնջում էր, որ աշխատանքը, ռեսուրսները, կենսամիջոցները և ամերիկյան հասարակության կառուցվածքը ենթարկվում են ռազմա-արդյունաբերական կոմպլեքսին։ Համանման կարծիք է հայտնում Կլերմոնտի բարձրագույն դպրոցի միջազգային հարաբերությունների ամբիոնի պրոֆեսոր Ֆրեդ Ուոռներ Նիլը. «Մենք ռազմա-արդյունաբերական վիթխարի կոմպլեքսի ծուղակն ենք ընկել... Սեփական երկրի ներսում ևս ախտահարված ենք խորացող սոցիալական հիվանդությամբ, որն այժմ թափանցել է մեր կողմից ամենից ավելի հարգված ինստիտուտները» (Նույն տեղը, էջ 87)։

Այսպիսով, ռազմա-արդյունաբերական կոմպլեքսն ուժեղացնում է իմպերիալիստական տերությունների քաղաքականության ռեակցիոն ու ագրեսիվ



բնույթը և, միաժամանակ, գտնվում է իշխող ֆինանսական օլիգարխիայի տնօրինության տակ, որը, վերջին հաշվով, որոշում է դասակարգային քաղաքականության բովանդակությունն ու ուղղությունը։ «Առավել զարգացած կապիտալիստական երկրներում արագ աճում է, այսպես կոչված՝ ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի, այսինքն՝ խոշորագույն մոնոպոլիաների և պետական ապարատի զինվորականության դաշինքի ազդեցությունը։ Այդ չարագուշակ դաշինքը գործուն ազդեցություն ունի իմպերիալիստական շատ պետությունների քաղաքականության վրա և այն դարձնում է ավելի ռեակցիոն ու ագրեսիվ» (Լ. Ի. Բրեժնև, Հանուն կոմունիստների համախմբվածության ամրապնդման, հանուն հակաիմպերիալիստական պայքարի նոր վերելքի, Հայպետհրատ, 1969, էջ 10)։

Ժամանակակից միլիտարիզմը սպառազինությունների անզուսպ մրցավազք է, որը դրսևորվում է զինված ուժերի թվի մեծացմամբ, ռազմական տեխնիկայի անընդհատ կատարելագործմամբ, արտադրության ու գիտության ռազմականացմամբ, ռազմական վիթխարի ծախսերով։

1969 թվականին ԱՄՆ-ի զինված ուժերի թիվը հասավ 3,5 միլիոնի, որն ավելի քան 6 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ը ռազմական կարիքների համար ծախսեց 1400 միլիարդ դոլար։ Ամեն տարի ԱՄՆ-ը 100 միլիարդ դոլար է տրամադրում ռազմական նպատակների համար, որ գերազանցում է սոցիալական ապահովության, առողջապահության, կրթության, բնակարանային շինարարության և գյուղատնտեսության համար նախատեսված ծախսերի գումարը։ Ռազմական բյուջեն որոշում է ամերիկյան էկոնոմիկայի և արտաքին քաղաքականության զարգացման ընթացքը։ Երկրի բնակչության զգալի մասը կախման մեջ է ռազմական կոնյունկտուրայից։ 1969 թվականին ռազմական արդյունաբերության ոլորտում աշխատում և զինված ուժերին սպասարկում էր ավելի քան 5 միլիոն մարդ (տե՛ս Американский милитаризм, 1970, стр. 14, 156, 206)։

Սպառազինությունների մրցավազքի վրա ԱՄՆ-ը վատնում է հսկայական նյութական միջոցներ այն դեպքում, երբ երկրում մոտ 40 միլիոն մարդ տառապում է աղքատությունից, զրկված է բժշկական սպասարկումից ու սոցիալական ապահովությունից, երբ միլիոնավոր երեխաներ մուրացիկ գոյության են դատապարտված, որովհետև նրանց ուսման համար դպրոցներ կամ բոլորովին չկան կամ խիստ սակավ են (տե՛ս նույն տեղը, էջ 33)։

Այս փաստերը վերստին հաստատում են, որ կապիտալիզմն անկարող է լուծել մարդկության առջև ծառացած սոցիալական պրոբլեմները։

Միլիտարիզմն այնպիսի իրավիճակ է ստեղծել, երբ սոցիալիստական և ազատագրված երկրների պաշտպանունակության ամրապնդումը հրամայական պահանջ է դարձել։ Բնական է, իմպերիալիզմին հակազդելու համար անհրաժեշտ է զգալի միջոցներ առանձնացնել։ Ուստի, իմպերիալիզմի մեղքով ռազմական ոլորտում նյութական վիթխարի արժեքներ են կորչում։ Այսպես, 1967 թ. ռազմական ծախսերն աշխարհում հասան 182 միլիարդ դոլարի (Курьер ЮНЕСКО, январь, 1970, стр. 15)։ Ուշագրավ է, որ աֆրիկյան մայրցամաքում ռազմական ծախսերն ավելանում են տարեկան 7—8 տոկոսով, այսինքն՝ ավելի բարձր տեմպերով, քան ողջ աշխարհում (տե՛ս նույն տեղը, էջ 8)։

Միլիտարիզմը շահութաբեր է մոնոպոլիաների համար, որոնք այն օգտա-

գործում են տնտեսական կոնյունկտուրան պահպանելու և ներտնտեսական ցնցումներից զերծ մնալու համար։ Միաժամանակ, ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը կարևոր տեղ է հատկացնում մասսաների գաղափարական մշակմանը, իր գործողությունների տեսական հիմնավորմանը։ Արդյունաբերա-ֆինանսական բուրժուազիայի տեսաբանները բազմապիսի փաստարկներ են որոնում, որպեսզի միլիտարիզմն արդարացնեն զբաղվածության պրոբլեմի լուծման տեսանկյունից։ Բռնությունն ու պատերազմը գովերգող ավանդական հակադիտական ռեակցիոն գաղափարների պրոպագանդմանը զուգընթաց, փառաբանվում է միլիտարիզմը, ռազմական էկոնոմիկան համարվում է կենսական անհրաժեշտություն։ Իմպերիալիզմի ջատագովները պնդում են, թե, իբր, միլիտարիզմն ապահովում է զբաղվածությունը, հնարավորություն տալիս խուսափելու դեպրեսիայից, նպաստում մարդկանց բարեկեցությանը։ Ամերիկյան սոցիոլոգ Բիվերիջը նույնիսկ գտնում է, որ «գործազրկությունը վերացնելու այժմ միակ հայտնի... առավել գործուն միջոցը՝ տոտալ պատերազմն է» (Х. Люмер, Военная экономика и кризис, М., *1955*, стр. *65*)։

Տրամաբանության տարրական կանոնների համաձայն այդ դատողությունը համանշանակ է այսպիսի թեզի. «բարգավաճում՝ պատերազմի միջոցով», այսինքն՝ «երջանիկ կյանք՝ գերեզմանում»։ Ասես Բիվերիջին ի պատասխան, նրա հայրենակից, գիտնական տնտեսագետների ամերիկյան ասոցիացիայի պրեզիդենտ, պրոֆեսոր Քեննետ Բոլդուինգը գրում է. «Ռազմական մեքենան չարորակ ուռուցք է ամերիկյան հասարակության մարմնի վրա, որ աճման առանձնահատուկ բնույթ ունի։ Այն մի սիստեմ է, որը, ըստ էության, կամա թե ակամա, օբյեկտիվորեն հարվածում է ամերիկյան ժողովրդի բարեկեցությանը, թեև ինքն իրեն համարում է նրա պաշտպանը» (Американский милитаризм, *1970*, стр. *70*)։

Միլիտարիզմը զբաղվածության անհամաչափ աճ է առաջացնում արդյունաբերության տարբեր բնագավառներում։ Ռազմական արտադրության արագորեն ընդարձակվող ճյուղերում զբաղվածությունն աճում է քաղաքացիական ճյուղերի զբաղվածությունը կրճատելու հաշվին։ Դրա հետևանքով տնտեսական ցիկլի դեֆորմացում է տեղի ունենում՝ տնտեսության որոշ մարզերի հարաճուն անկման հաշվին արհեստականորեն խթանվում և աշխուժանում են մյուսները։ Բացի այդ, արտադրության քաղաքացիական ճյուղերը ձեռք են բերում ռազմական արտադրության գծեր։

Միլիտարիզմն անկարող է կասեցնել կապիտալիզմի տնտեսական օրենքների գործողությունը, քանի որ ինքն այդ օրենքների գործողության համապատասխան դրսևորումն է։ Միլիտարիզմը, մի կողմից՝ հանգեցնում է բանվորական ուժի շահագործման ուժեղացմանը, հարկերի ավելացմանն ու աշխատավորների կենսամակարդակի նվազեցմանը, մյուս կողմից՝ մոնոպոլիաների շահույթների աճմանը։ Ամերիկյան սոցիոլոգների ուսումնասիրություններում արձանագրված է, որ ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրությունը տնտեսական մեծ վնաս է հասցնում երկրին։ Այն կրճատում է ներքին սպառումը մոտավորապես 15 տոկոսով, իսկ տնտեսական աճի տարեկան տեմպերն իջեցնում երկու տոկոսով։ Ջոն Բեռնալի խոսքերով ասած. «Ժամանակակից աշխարհի շատ չարիքներ, ինչպես նաև պատերազմի հանգեցնող լարվածությունը, ծնունդ են կապիտալիստական արտադրության եղանակի ծայրաստիճան անկայունության, ճգնաժամերի և գործազրկության վտանգի, որոնք կարող են վերանալ միայն վերազինման բումը արդարացնող, պարբերաբար կրկնվող



պատերազմներով կամ պատերազմի նախապատրաստությամբ» (Дж. Бернал, Мир без войны, М., *1960*, стр. *17*)։

Հարկավոր է նշել, որ միլիտարիզմի միջոցով տնտեսական կյանքի արհեստական աշխուժացումը միայն կեղծ ու կարճատև պատրանք է առաջացնում։ Այդ դրությունը լավ է նկարագրել ամերիկյան տնտեսագետ Լյումերը։ Ռազմական արտադրությունը համարելով հակաթույն տնտեսական ճգնաժամերի դեմ, մոնոպոլիստական բուրժուազիան, ըստ նրա, հիշեցնում է նարկոմանի, որի մեջ թմրադեղի նվազ դոզան սկզբում բարեհաջողության զգացողություն է առաջացնում։ Սակայն դրան հետևում է հիվանդագին վիճակ, որից կարելի է ազատվել դիմելով միայն թմրադեղի նոր, ավելի մեծ դոզաների։ Բայց ամեն մի նոր դոզա թուլացնում է բարեհաջողության զգացողությունը, մինչդեռ հետևանքները գնալով ավելի հիվանդագին են դառնում և նարկոմանը վերջապես քայքայում է ողջ օրգանիզմը։ «Այդպիսին է... ռազմական ծախսերի «ներարկումների» ազդեցությունը։ Յուրաքանչյուր «ներարկում» մի որոշ ժամանակահատվածով կանխում է ճգնաժամի բռնկումը, բայց միայն ճգնաժամ ծնող գործոնների ուժեղացման հաշվին։ Պարբերական «ներարկումը» կարող է միայն ավարտվել աղետով կա՛մ տնտեսական կրախով, կա՛մ երրորդ համաշխարհային պատերազմով» (Х. Люмер, Военная экономика и кризис, стр. *171*)։

Միլիտարիզմը բարեկերտական տեսանկյունով ներկայացնելու մոնոպոլիստական կապիտալի պաշտպանների բոլոր մտախաղերը, մասսաներին խաբելու և ռազմամոլության ու խոշոր մոնոպոլիաների հակազգային գործունեությունն արդարացնելու միջոց են։ Միլիտարիզմը ոչ թե բարեգործական ձեռնարկություն է, այլ սոցիալական օրգանիզմի կենսագործունեությունը խախտող ախտաբեր վիրուս։ Նա մի ճահիճ է, որ կլանում է աշխատավորների ստեղծված նյութական վիթխարի արժեքներ։

Իմպերիալիստական շրջաններում այն միտքն է հոլովվում, թե, իբր, հարկավոր է տարեցտարի ավելացնել ռազմական ծախսերի ծավալը, որպեսզի սոցիալիզմի երկրները ևս այդ ուղին ընտրեն։ Դրանով հնարավոր կլինի կասեցնել նրանց տնտեսական վերելքը։ Այս տեսակետը վերստին արտացոլում է իմպերիալիզմի ռեակցիոն բնույթն ու նրա չարանենգ էությունը։ Միաժամանակ այն վկայում է, որ կապիտալիզմը ոչինչ չի կարող առաջարկել մարդկությանը, բացի պատերազմի սպառնալիքից ու սպառազինությունների մրցավազքից։ Սակայն «մարդկության խիղճը, նրա բանականությունը չեն կարող հաշտվել իմպերիալիզմի ոճրագործությունների հետ։ Իմպերիալիզմը տասնյակ միլիոնավոր կյանքեր խլած երկու համաշխարհային պատերազմների մեղավորն է։ Նա ստեղծել է այնպիսի ռազմական մեքենա, որը կլանում է մարդկային և նյութական վիթխարի ռեսուրսներ, ուժեղացնելով սպառազինությունների մրցավազքը։ Նա տասնամյակներ առաջ պլանավորում է նոր զենքի արտադրություն, ստեղծում համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի սպառնալիք...» (Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը, *էջ 23*)։

Արդի դարաշրջանի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ մարդկության օրինաչափ շարժումը դեպի սոցիալական կեցության բարձրագույն ձևը, զուգորդվում է գիտա-տեխնիկական թռիչքի հետ։ Գիտությունը վերածվելով հզոր արտադրաուժի, խթանում է հասարակության վերընթաց զարգացու-

մը։ Գիտա-տեխնիկական հեղափոխությունը մարդկության առջև լայն հորիզոններ է բացում նյութական բարիքների արտադրության աննախընթաց բազմապատկման, մարդկանց բարեկեցության արմատական բարելավման համար։ Սակայն չպետք է անտեսել գիտության նվաճումների կիրառման առանձնահատկությունները կոնկրետ սոցիալական պայմաններում։

Ռեակցիայի ու առաջընթացի, սոցիալիզմի ու կապիտալիզմի ուժերի պայքարը քննարկելիս պետք է խստորեն հաշվի առնել իմացության ձեռք բերած աստիճանը։ Բուրժուազիան ռազմականացնում է գիտությունը, վերածելով այն բռնի քաղաքականության զենքի։ Պատմական փորձը վկայում է, որ հակամարտ հասարակական-տնտեսական ֆորմացիաներում գիտա-տեխնիկական նվաճումներն ամբողջովին ծառայում են իշխող շահագործողական դասակարգերի շահատենչ նկրտումներին։ Լենինը գրում էր, որ տեխնիկայի և գիտության առաջընթացը կապիտալիստական հասարակության մեջ նշանակում է՝ առաջընթաց քրտինք քամելու արվեստում։ Շահագործողական ոչ մի դասակարգ այնպիսի մոլուցքով գիտությունը չի վերածել պատերազմի գործիքի, ինչպես դա անում է իմպերիալիստական բուրժուազիան։

Իմպերիալիզմի ագրեսիվ բնույթի դրսևորումներից մեկը միլիտարիզմի ու գիտության փոխներթափանցումն է։ Մարքսն ու Էնգելսն ընդգծում էին, որ կապիտալիզմի վերընթացը օրինաչափորեն կհասցնի արտադրաուժերի միակողմանի զարգացման և դրանց վերածմանը կործանարար ուժերի։ Զարգացնելով այդ դրույթը, Լենինը նշում էր, որ ժամանակակից կապիտալիզմը գիտության ու տեխնիկայի բոլոր նվաճումներն օգտագործում է մասսայական մասշտաբներով սպառազինություն արտադրելու և արտադրաուժերը կործանելու համար։

Իմպերիալիզմն աղճատում, այլանդակում է գիտության իսկական կոչումը, սոցիալական դերն ու ֆունկցիան, իմացության արդյունքները նյութականացնելով սպառազինությունների մեջ։ Մոնոպոլիստական բուրժուազիան գիտությունը դարձրել է իր ագրեսիվ պլաններն իրականացնելու գործիք։

Միլիտարիզմի ոլորտն են ներքաշված հազարավոր գիտնականներ և գիտության ու արտադրության տարբեր ճյուղերի մասնագետներ։ ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կորպորացիաները գիտնականներին ու ինժեներներին օգտագործում են այնպիսի հետազոտական ու փորձա-կոնստրուկտորական աշխատանքներ կատարելու համար, որոնք բացառապես ռազմական նշանակություն ունեն։ Ազգի լավագույն մտածողների բանականությունն ու աշխատանքը, ստեղծագործական եռանդն ու տաղանդը հարկադրաբար տրամադրված են ռազմական արտադրությանը։ Համալսարանները վերածվել են Պենտագոնի գործիքների, որը միայն 1960 թվականին ռազմական հետազոտությունների վրա ծախսեց 7,5 միլիարդ դոլար։ Հակասական է, բայց փաստ. Պենտագոնը դարձել է գիտա-հետազոտական արտադրանքի խոշորագույն հափշտակողն ու սպառողը։

«Մտքերի ներքին արտահոսք է» կատարվում քաղաքացիական ոլորտից՝ ռազմական ապարատը։ 1939/40-ից մինչև 1963/64 թթ. ֆինանսական տարին ընկած ժամանակամիջոցում ռազմա-հետազոտական աշխատանքների համար հատկացված ընդհանուր գումարը ԱՄՆ-ում ավելացավ 352,6 անգամ, ընդ որում, ռազմական նպատակներով գիտության վրա կատարված ծախսերը տասն անգամ գերազանցեցին գիտական հետազոտությունների համար նախատեսված ծախսերի գումարը։ Ամերիկյան գիտնականների ու մասնագետների կեսից ավելին զբաղված է ռազմական պրոբլեմներով։



Մոնոպոլիստական բուրժուազիան նյութական խթանումների օգնությամբ առևանգել է գիտական միտքը, հասել գիտության ու ռազմամոլության հակաբնական դաշինքի։ Նա ռազմականացված տնտեսության ոլորտներում վատնում է ազգային հարստությունները։ Ինչպես արձանագրվեց կոմունիստական և բանվորական կուսակցությունների՝ 1969 թվականի Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում, իմպերիալիզմն է մեղավոր, որ բազմամիլիոն մարդկանց աշխատանքը, մարդկային բանականության, գիտնականների, հետազոտողների, ինժեներների տաղանդի փայլուն նվաճումները ի սպաս են դրվում ո՛չ թե մարդկությանը, ո՛չ թե ծառայում են երկրի վրա կյանքի առաջընթացին ու վերափոխմանը, այլ բարբարոսական, ռեակցիոն նպատակների՝ պատերազմի կարիքների համար։

Միաժամանակ գիտա-տեխնիկական հեղափոխությունն օբյեկտիվորեն արագացնում է արտադրության հանրայնացման պրոցեսը, որ մոնոպոլիաների անբաժան տիրապետության պայմաններում անհրաժեշտորեն տանում է դեպի սոցիալական հակամարտությունների վերարտադրություն։ Այսօր ավելի մեծ մասշտաբներով, առավել սրությամբ հակասություն է ծագել գիտա-տեխնիկական հեղափոխության բացած անսահման հնարավորությունների և այն խոչընդոտների միջև, որոնք հարուցում է կապիտալիզմը ողջ հասարակության օգտին դրանք օգտագործելու ճանապարհին։

Մարքսիզմի կլասիկները, բացահայտելով միլիտարիզմի դասակարգային ծագումն ու էությունը, դրա հետ մեկտեղ կանխորոշեցին նրա զարգացման գլխավոր տենդենցը։ Էնգելսը գրում էր, որ միլիտարիզմը ինքնաբացասման սաղմ է բովանդակում։ Լենինը գտնում էր, որ իմացության առաջընթացի որոշակի աստիճանում կործանարար ռազմական տեխնիկայի կիրառությունն անհնար կդառնա։

Արտադրաուժերի անկասելի զարգացումն ու կատարելագործումը նպաստում են միլիտարիզմի վերացման նյութա-տեխնիկական նախադրյալների ձևավորմանը։ Միլիտարիզմը օբյեկտիվորեն հասունացնում է կապիտալիզմի փլուզման անհրաժեշտ գործոնները։ Մի կողմից, միակողմանի զարգացում ստացած արտադրաուժերը կյանքի են կոչում կապիտալիստական մասնավոր սեփականատիրությունը վերացնելու հրամայական խնդիրը, մյուս կողմից՝ միլիտարիզմի ուժեղացման հետևանքով առաջացած նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը մարդկային հասարակության ամենալայն խավերին մղում է ակտիվ պայքարի հանուն խաղաղության։ Կայուն խաղաղության համար ծայր առած շարժումը շաղկապվում է իմպերիալիզմի ու միլիտարիզմի դեմ մղվող պայքարի խնդիրների հետ։

Սոցիալիզմը իմպերիալիզմի միլիտարիստական քաղաքականությանը հակադրում է սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության ստրատեգիան։ ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյա հոբելյանին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ Սովետական Միության հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը և իրադարձությունների ողջ ընթացքը հետզհետե հանգեցնում են այն բանին, որ կապիտալիստական աշխարհն ընդունում է խաղաղ գոյակցության հիման վրա սոցիալիստական պետությունների հետ գործերը վարելու անհրաժեշտությունը։ Սովետական Միությունը կձգտի այն բանին, որ երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև մղվող պատմականորեն անխուսափելի պայքարն ընթանա առանց պատերազմների և սպառազինությունների մրցավազքի։

Վերջին ժամանակներս Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության մյուս պետությունների և խաղաղասեր բոլոր ուժերի համատեղ ջանքերի շնորհիվ որոշակի դրական տեղաշարժեր կատարվեցին միջազգային կյանքում, որոնց բաղադրամասերից մեկը զինաթափման պրոբլեմի լուծման ասպարեզում ձեռք բերված առաջընթացն է (միջուկային զենքը չտարածելու, տիեզերքում, ծովերի և օվկիանոսների հատակում միջուկային զենքի տեղավորումն արգելելու վերաբերյալ պայմանագրերը, սովետա-ամերիկյան պայմանագիրը հակահրթիռային պաշտպանության սիստեմների սահմանափակման, ժամանակավոր համաձայնագիրը ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման որոշ միջոցառումների մասին)։

ՍՄԿԿ XXIV համագումարի հաստատած խաղաղության ծրագրում արձանագրված է, որ ուժ գործադրելուց և դրա կիրառման սպառնալիքից հրաժարվելը պետք է դառնա միջազգային կյանքի օրենքը։ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVI նստաշրջանը հավանություն տվեց Սովետական Միության առաջարկություններին զինաթափման համաշխարհային կոնֆերանս հրավիրելու և «Միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու, միջուկային զենքի կիրառությունը առհավետ արգելելու մասին»։ Խաղաղության ծրագրում ընդգծված է ռազմական օջախների վերացման կարևորությունը իմպերիալիզմի միլիտարիստական ուժերի դեմ մղվող պայքարում։ Այս իմաստով սկզբունքային նշանակություն ունի ամերիկյան իմպերիալիզմի ռազմա-քաղաքական պարտությունը Վիետնամում։ Այն, ամենից առաջ, ցույց տվեց զինված բռնության եղանակով միջազգային հարցերը լուծելու իմպերիալիստական կուրսի սնանկության անխուսափելիությունը։ Վիետնամական ժողովրդի պատմական հաղթանակը վերստին հաստատեց, որ «իմպերիալիզմն անզոր է վերադարձնելու իր կորցրած պատմական նախաձեռնությունը, շրջելու ժամանակակից աշխարհի զարգացումը։ Մարդկության զարգացման մայրուղին որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը, բոլոր հեղափոխական ուժերը» (Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը, էջ 8)։

Պատմական զարգացման օբյեկտիվ ընթացքն ապացուցում է, որ համաշխարհային հեղափոխական պրոցեսի հետագա խորացման և իմպերիալիզմի հիմքերի համապատասխան թուլացման համեմատ է՛լ ավելի մեծ ուժով կդրսևորվի հակասությունը մոնոպոլիստական բուրժուազիայի հարաճուն ագրեսիվության և նրա նվազող հնարավորությունների միջև։ Սակայն, որքան ջլատվում են իմպերիալիզմի դիրքերը, այնքան բախտախնդիր ու վոլյունտարիստական է դառնում նրա քաղաքականությունը։ Այստեղից բխում է բոլոր հակաիմպերիալիստական հեղափոխական ուժերի գործողությունների միասնության հրամայական անհրաժեշտությունը՝ իմպերիալիզմի ու միլիտարիզմի դեմ առավել մեծ ու սկզբունքային գրոհ կազմակերպելու համար։

# ՉԱՊԱԿԱՆԵԼ, ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՍԵՎԱՆԻ ՋՈՒՐԸ

Մ. Ս. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
«Հայկոմուննախագիծ» ինստիտուտի դիրեկտոր

Վերջերս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում ընդունեցին «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին»: Իր խորությամբ և հարցերի պրակտիկ ընդգրկմամբ այն մեր երկրում բնության պահպանության, բնական ռեսուրսների օգտագործման հետագա բարելավման միջոցառումների մի հոյակապ ծրագիր է, որի իրականացումը համարվում է պետական կարևորագույն խնդիր:

Որոշման մեջ նշվում են մեր երկրում բնության պահպանության և բնական ռեսուրսների օգտագործման ոլորտում ձեռք բերված հաջողությունները, միաժամանակ ուշադրություն է հրավիրվում այն բանի վրա, որ շատ մինիստրություններ, գերատեսչություններ, ձեռնարկություններ և գիտահետազոտական կազմակերպություններ դեռևս պատշաճ չափով չեն զբաղվում շրջապատի բնական միջավայրը աղտոտումից պահպանելու, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն ապահովելու հարցերով, ինչպես հարկն է, չեն ուսումնասիրում կեղտաջրերի մաքրման և բնության պահպանության հետ կապված մյուս հրատապ պրոբլեմները: Որոշման մեջ կոնկրետ միջոցներ են նշվում քաղաքների, արդյունաբերական ձեռնարկությունների կեղտաջրերի, մակերեսային բնական ջրերի մաքրման, դրանց որակի ստուգման, սարքավորումների, նորանոր սարքերի ստեղծման, ինչպես և 1973—75 թվականներին կեղտաջրերի մաքրման նոր մեթոդների մշակման և արմատավորման նպատակով:

Ժողովրդական տնտեսության վերելքը, մեր հանրապետությունում քիմիական ու լեռնահանքային արդյունաբերության կենտրոնացումն առանձին շրջաններում, բնակչության զգալի աճը, հանգստի գոտիների և տուրիստական օթևանների ստեղծումը պահանջում են հանրապետությունում բարելավել բնության պահպանության գործը, առաջին հերթին լուծել ջրային և օդային մակերեսներն աղտոտումից զերծ պահելու, արտադրական և կենցաղային կեղտաջրերը մաքրելու և վնասազերծելու խնդիրները: Դրանց լուծումըն առավել հրատապ է ու անհրաժեշտ Հայաստանում, քանի որ այն ունի համեմատաբար ոչ մեծ տարածք, որի օգտագործելիության տոկոսը ցածր է, իսկ ջրային ավազանները՝ սակավ:

Զանդրադառնալով հանրապետությունում բնության պահպանության և բնական ռեսուրսների օգտագործման հետ կապված բազում պրոբլեմներին, ցանկանում ենք խոսել դրանցից միայն մեկի՝ Սևանի ավազանի արտադրական, կենցաղային կեղտաջրերի մաքրման ու վնասազերծման մասին՝ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի հիշյալ որոշման առնչությամբ:

Վերջին տարիներին Հայկական ՍՍՀ կոմունալ տնտեսության մինիստրության Հայկոմուննախագիծ ինստիտուտում մշակվել են բնակավայրերի և արդյունաբերական ձեռնարկությունների կեղտաջրերի մաքրման կառույցների շատ նախագծեր (առանձնապես Կամոյում, Ալավերդում, Լենինականում և այլուր), որոնք, ցավոք, խիստ դանդաղ են իրականացվում՝ այդ նպատակով նախատեսվող կապիտալ ներդրումները

տարիներ շարունակ չիրացնելու, մաքրման կառույցների շինարարության ու մոնտաժի, ինչպես նաև կարգավորման մասնագիտացված կազմակերպությունների բացակայության հետևանքով: Եվ այսօր հանրապետությունում գործում է կեղտաջրերի մաքրման միայն մի կառույց՝ Կիրովական քաղաքինը:

Վիճակն առանձնապես անմխիթար, նույնիսկ տագնապալի է Սևանի ժողովրդա-տնտեսական շրջանում, ուր բնակավայրերի, հանգստի և առողջապահական օբյեկտների, արդյունաբերական ձեռնարկությունների կենցաղային ու արտադրական կեղտաջրերն առանց մաքրման, անարգել թափվում են Սևանա լիճը: Այս հանգամանքն իր հետևանքներով անմիջականորեն առնչվում է Սևանի և հանրապետության համար մեծ նշանակություն ունեցող ներկա ու հեռանկարային զարգացման մի շարք խնդիրների հետ:

Ինչպես հայտնի է, Հայաստանի քաղաքների, շրջկենտրոնների, քաղաքատիպ ավանների և մյուս բնակավայրերի ազգաբնակչության ջրամատակարարումն իրականացվում է ստորգետնյա շերտերից բխող աղբյուրներից, որոնցով համեմատաբար հարուստ է հանրապետությունը: Սակայն, ինչպես ցույց են տալիս ջրաերկրաբանական ուսումնասիրությունները, այդ աղբյուրների պաշարներն անսպառ չեն և ոչ հեռավոր ապագայում, բնակչության աճի ու արդյունաբերության բուռն զարգացման պայմաններում հարկ կլինի բնակավայրերի ջրամատակարարման նպատակով օգտվել մակերևութային ջրերից՝ գետերից ու լճերից: Հանրապետության ջրային զարկերակները՝ Հրազդան, Դեբեդ, Ախուրյան, Քասախ, Սևջուր, Ոխչի, Մեղրի և այլ գետեր չունեն կայուն ռեժիմ և սակավաջուր են. այդ առանձնապես նկատելի է ամռան ամիսներին, երբ ավելանում է գոլորշիացումը, և ջրերի զգալի մասն օգտագործվում է հողերի ոռոգման նպատակով: Բացի այդ, գրեթե բոլոր գետերն ամեն օր են կեղտոտվում բնակավայրերի և արդյունաբերական ձեռնարկությունների կեղտաջրերից, արտադրական թափոններից: Արփա լիճը, որ գտնվում է հանրապետության հյուսիսարևմտյան ծայրամասում և սակավաջուր է, պակաս պիտանի է հիմնական տնտեսական շրջանների ջրամատակարարման համար:

Հանրապետության ազգաբնակչության խմելու ջրի, ինչպես և Արարատյան դաշտավայրի ու նախալեռնային շրջանների ոռոգման կարիքների բավարարման պահեստային միակ աղբյուրը, փաստորեն, մնում է Սևանա լիճը: Արփա գետի ջրերը Սևանա լիճ հասցնելու խնդրի լուծմամբ կկայունանա Սևանի ջրային ռեժիմը, որով և մեծ չափով կընդլայնվեն նշված նպատակին ծառայելու Սևանի հնարավորությունները: Ուստի, Սևանի ջուրն առավել ռացիոնալ օգտագործելու նպատակով, անհրաժեշտ է այժմվանից հոգ տանել նրա ջրային ռեսուրսներն անաղարտ պահելու համար:

Աշխատավորության բարեկեցության աճի, աշխատաժամանակի կրճատման, երկու հանգստյան օրով աշխատանքային շաբաթի պայմաններում անհրաժեշտ է հանրապետությունում ընդլայնել առողջապահության և հանգստի գոտիների ցանցը: Իր բնակլիմայական բարենպաստ պայմաններով, լեռնային սառնորակ աղբյուրներից բխող վճիտ ջրերով, գեղատեսիլ բնությամբ, պատմական արժեքավոր հուշարձաններով հարուստ Սևանի ավազանը սքանչելի հանգստավայր կարող է դառնալ:

Արդեն մշակված են Սևանի առողջապահական և հանգստի գոտիների ըստեղծման ներկա ու հեռանկարային զարգացման պլանները, որոնք արժանացել են հանրապետության կառավարության հավանությանը: Նախատեսվում է Սևանա լճի շուրջն ստեղծել հանգստի հինգ գոտի— Այրիվանքի, Մարտունու, Արտանիշի, Սևանի, Վարդենիսի, 1980 թ. դրանք կունենան 70 հազար տեղ: Միաժամանակ ավելի կմեծանա Սևանի դերը՝ որպես Երևան քաղաքի, Սևանի ավազանի և Երևան—Սևան արդյունաբերական հանգույցի բնակավայրերի մերձքաղաքային հանգստի գոտի: Սևանա լճի շրջակա լեռների հրաբխային լավայով ծածկված շերտերից շատ տեղերում բխում են աղբյուրներ՝ սառնորակ, մաքուր ջրով, հաճախ հանքային՝ բուժիչ արժեքավոր հատկանիշներով, որոնք լրացնում են Սևանի կուրորտային ռեսուրսների համալիրը և դառնում առողջարանների ստեղծման հիմք:

Ներկայումս պանսիոնատների, հանգըստյան տների, տուրիստական հանգրվանների, մանկական առողջարանների կառուցման լայն աշխատանքներ են ծավալվում Սևանա լճի հյուսիս-արևմտյան և Արեգունի կոչվող ափերին: Դրանց մի մասն արդեն օգտագործվում է: Սակայն ինչպե՞ս է լուծվում առողջարանային և հանգստյան այդ օբյեկտների կեղտաջրերի հեռացման հարցը: Լավագույն դեպքում տրվում են տեղական, ժամանակավոր լուծումներ:

Առանց մաքրման Սևան հոսող Գավառագետ և Մասրիկ գետերն են թափվում Սևանի ավազանի շրջկենտրոնների (Կամո, Վարդենիս) կեղտաջրերը: «Գիպրոմոլպրոմի» Վոլգոգրադի բաժանմունքի Վարդենիսի և Մարտունու կաթի գործարանների համար նախագծված կոյուղու մաքրման կայաններն ունեն փոքր հզորություն և չեն կարող բավարարել կից բնակավայրերի կարիքները:

Սևանի ավազանի գյուղերն ապահովված չեն կոյուղով, դրանցում կառուցվող առանձին օբյեկտների (դպրոց, մանկապարտեզ-մանկամսուր, ակումբ, բնակելի շենքեր, արտադրական բնույթի ձեռնարկություններ և այլն) կեղտաջրերը չեն հեռացվում կազմակերպված ձևով, որի հետևանքով ստեղծվում է հակասանիտարական վիճակ:

Սևանի ավազանի արդյունաբերական զարգացման հեռանկարները կապվում են ո՛չ միայն այժմ գոյություն ունեցող սննդի և թեթև արդյունաբերության զարգացման, այլև հիմնականում նոր ճյուղերի՝ լեռնահանքային արդյունաբերության, մեքենաշինության, կերամիկական իրերի արտադրության հետ: Արդեն սկսված է հանքային հարուստ ռեսուրսների արդյունաբերական յուրացումը:

Սևանի ավազանի արագ զարգացող արդյունաբերությունը ևս անմիջականորեն առնչվում է արտազատվող կեղտաջրերի մաքրման պրոբլեմի հետ, որը նախագծերում առայժմ միայն ժամանակավոր լուծում է ստանում: Սևանի ավազանի տնտեսական (և ո՛չ միայն տնտեսական) զարգացմանը խոշոր չափով կխթանի Երևան—Ջող երկաթգծի և լիճն օղակող ավտոմայրուղու շինարարության ավարտը:

Սևանա լիճը հանրապետության կարևոր, միակ ձկնարդյունաբերական շըրջանն է: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վերջին տարիներին զգալիորեն պակասել է Սևանա լճի արժեքավոր ձկնատեսակների բնական աճը, որը, բացի լճի ջրային հայելու մակարդակի իջեցումից, բացատրվում է նրա մեջ թափվող կեղտոտ գետաջրերով:

Հեռանկարային զարգացման պլանով նախատեսվում է կառուցել նաև Կամոյի ու Կարճաղբյուրի ձկնաբուծական տնտեսություններ, ընդլայնել կերային և բազմացման բազաները:

Այսպիսով, Սևանն այսօր մեզ համար թանկ է ո՛չ միայն որպես խմելու ջրի շտեմարան, այլև՝ որպես ժողովրդա-տնտեսական կարևոր շրջան: Ուստի, այն բոլոր կողմերով անմիջականորեն առնչվում է արտադրական և կենցաղային կեղտաջրերի մաքրման ու վնասազերծման հարցի հետ:

Հանրապետության մյուս շրջանների կեղտաջրերի մաքրման հետ կապված խնդիրները պարզ են, և դրանց նախագծային լուծումը բարդություններ չի հարուցում: Նույնը չի կարելի ասել Սևանի մասին, Սևանի ավազանի փոսի մեջ գտնվելը, ռելիեֆի կտրտվածությունը, մաքրման կառույցների շինարարական հրապարակների համար նպաստավոր հողամասերի բացակայությունը, սանիտարա-հիգիենիկ առավելագույն պահանջների առկայությունը մեծ չափով դժվարացնում են Սևանի պրոբլեմի լուծումը և թելադրում ուրույն մոտեցում:

Նկատի առնելով խնդրի հույժ կարևորությունը՝ Հայկական ՍՍՀ կոմունալ տնտեսության մինիստրության առաջադրանքով «Հայկոմուննախագիծ» ինստիտուտում 1971 թ. մշակվեց Սևանի ավազանի արտադրական և կենցաղային կեղտաջրերի մաքրման ու վնասազերծման տեխնիկա-տնտեսական հիմնավորում՝ երկու տարբերակով, 1990 թ. հաշվային ժամանակաշրջանի համար:

Ըստ առաջին տարբերակի (սխեմա 1) նախատեսվում է բնակչության, արդյունաբերական և հանգստի հինգ գոտիներից յուրաքանչյուրում, կենտրոնացման շրջաններում, ստեղծել կեղտաջրերի կենսաբանական ամբողջական մաքրման առանձին կառույցներ: Ընդ որում, դրանք կմաքրեն ո՛չ միայն հանգստի գոտիների, այլև այդ շրջաններում գտնվող բոլոր բնակավայրերի

(ինչպես և գյուղերի) ու արդյունաբերական ձեռնարկությունների կեղտաջրերը: Կենսաբանական մաքրման ենթարկված ջրերը կանցկացվեն կրկնակի մաքրման կառույցներով, որով ջրի մաքրման աստիճանը կհասցվի թույլատրելի սահմանին: Այդպիսով, Սևանա լիճը կթափվի միայն վնասազերծված ջուրը: Մաքրման պրոցեսի տեխնոլոգիան և տեխնիկան կհամապատասխանեն հայրենական և արտասահմանյան վերջին նորույթներին:

Ըստ երկրորդ տարբերակի (սխեմա 2) նախատեսվում է Սևանի ավազանի բնակավայրերից և հանգստի գոտիներից խողովակաշարերով և պոմպակայաններով կեղտաջրերը հեռացնել ու կենսաբանական մաքրման ենթարկելուց հետո թափել Հրազդան գետը: Սևանի շուրջը փաստորեն ստեղծվում է կոյուղու մագիստրալ գծի 3/4 օղակ, որի մի ծայրն սկսվում է Վարդենիսի, մյուսը՝ Արտանիշի հանգստյան գոտիներից: Հավաքված կեղտաջուրը 15 պոմպակայանների միջոցով մղվում է դեպի կոյուղու գլխավոր կոլեկտորը: Վերջինիս միջոցով այն, Սևանա լճից հեռացվելով ավելի քան 27 կմ, նասցըվում է մաքրման կառուցվածքներին:

Երկու տարբերակների հանգամանորեն մշակված նախահաշվային-ֆինանսական հաշվարկների համադրումը ցույց է տալիս, որ առաջին տարբերակը տնտեսապես անհամեմատ ձեռնտու է՝ թե՛ կառուցման և թե՛ շահագործման համեմատաբար ոչ մեծ (ավելի քան 2,5 անգամ պակաս) ծախսումների առումով: Սակայն առաջին տարբերակը կարելի է կիրառել միայն ջրի մաքրման նպատակով առաջադրվող սանիտարահիգիենիկ պահանջներին հասնելու դեպքում: Վերջինս հիմնականում կախված կլինի կրկնակի մաքրման կառույցների արդյունավետ գործողությունից, որն, իր հերթին, պայմանավորված է կոյուղու մաքրման կառույցների շինարարության պրակտիկայով և շահագործման փորձով, որպիսին, ցավոք, դեռևս չունի մեր հանրապետությունը:

Սխեմա 1




ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

Մաքրման կառույցներ։
—Մաքրված կեղտաջրերի խողովակաշար։

Սխեմա 2




ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

Մաքրման կառույցներ։
Պոմպակայան
-- Կոյուղի։

Երկրորդ տարբերակը, առաջինի համեմատ տնտեսապես թեև թանկ է, երաշխավորում է հարցի միանգամայն հուսալի ու հիմնական լուծում: Հիշյալ երկու տարբերակների վերաբերյալ տեխնիկա-տնտեսական հիմնավորումը 1972 թ. սկզբին վերադաս օրգանների քննարկմանն է ներկայացվել:

Սևանի ավազանի անաղարտ պահպանման ու հետագա զարգացման, ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման շահերը պահանջում են անպայման ձեռնամուխ լինել արտադրական ու կենցաղային կեղտաջրերի մաքրման և վնասազերծման պրոբլեմի մշակմանն ու իրականացմանը: Մեր հանրապետության համար այդ կլինի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին» որոշման կենսագործման ամենակարևոր քայլերից մեկը:

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ ՎԱՐԵԼ ԿՈՒՍՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՓՈԽԱՆԱԿՈՒՄԸ

Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ

1973 թ. մարտի 1-ին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ստորագրեց ՍՄԿԿ հիմնադիր և առաջնորդ Վ. Ի. Լենինի անունով լրացված, առաջին համարը կրող, կուսակցական նոր տոմսը: Այդ առթիվ հրապարակված հաղորդագրության մեջ նշվում է, որ Վ. Ի. Լենինի անունով կուսակցական տոմսի ձևակերպումը սոսկ խորհրդանիշ չէ, այլև նրա պատգամների նկատմամբ մեր կուսակցության անսասան հավատարմության առհավատչյան:

*Ինչպես Սովետական Միության, այնպես էլ մեր Հանրապետության կուսկազմակերպությունները երկու ամիս է, ինչ սկսել են կուսփաստաթղթերի փոխանակումը։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշմամբ այն պետք է անցկացվի 1973—1974 թթ. ընթացքում։ Հայաստանում նախատեսված է այդ աշխատանքները հիմնականում ավարտել 1974 թ. օգոստոսին։ Կուսփաստաթղթերի փոխանակումը համակուսակցական գործ է, կազմակերպական ու քաղաքական խոշոր միջոցառում, որը պահանջում է բազմակողմանի, հետևողական ու տևական աշխատանք և լուրջ մոտեցում։ Կուսփաստաթղթերի փոխանակումը ուղղված է կազմակերպական-քաղաքական ու գաղափարական աշխատանքների հետագա բարելավմանը, կուսշարքերի համախմբմանն ու ամրապնդմանը, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ այս հարցը սկզբունքային, քաղաքական բնույթ ունի, շոշափում է իր որակական կազմի ամրապնդման ասպարեզում կուսակցության գործունեության կարևորագույն կողմը։ Կուսփաստաթղթերի փոխանակման հետ կապված կազմակերպական-քաղաքական աշխատանքի համակուսակցական իմաստը նախ այն է, որ է՛լ ավելի բարձրանա կոմունիստների ավանգարդային դերը կոմունիզմի կառուցման գործում, ամրապնդվի նրանց գիտակցական կարգապահությունը, կարգանա ակտիվությունն ու նախաձեռնությունը։*

*Կուսփաստաթղթերի փոխանակումը կլինի մեր կուսակցության, բոլոր կոմունիստների ուժերի յուրօրինակ ստուգատեսը, այն բանի խստապահանջ*

տուգումը, թե յուրաքանչյուր կուսկազմակերպություն ինչպես է իրականացնում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումից անցել է բավականին ժամանակ՝ գրեթե մեկ տարի. կուսակցության կյանքում քաղաքական կարևոր նշանակություն ունեցող այդ գործը՝ կուսփաստաթղթերի փոխանակումը, արդեն վճռական ընթացքի մեջ է։ Կարելի է վստահորեն ասել, որ ամեն մի կուսկազմակերպություն, քաղկոմ ու շրջկոմ նախապատրաստական լուրջ աշխատանք է կատարել կուսփաստաթղթերի փոխանակումը բարձր մակարդակով անցկացնելու համար։ Մշակված միջոցառումների պլանների համաձայն կուսկազմակերպությունները հաճախակի իրենց պլենումների ու բյուրոների նիստերում, ժողովներում քննարկել և քննարկում են կուսակցական փաստաթղթերի փոխանակմանը վերաբերող բազմաբնույթ հարցեր։ Այդ քննարկումները, անտարակույս, նպաստում են կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, արտադրության մեջ և հասարակական-քաղաքական կյանքում կոմունիստների ավանգարդային դերի ապահովմանը։

Կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստությունն աշխուժացրեց կուսկազմակերպությունների գործունեությունը, էլ ավելի զարգացրեց ներկուսակցական դեմոկրատիան։ Աճեց կուսժողովների ներգործությունը տնտեսական խնդիրների կատարման վրա, բարձրացավ դրանց դաստիարակչական դերը և կոմունիստների շահագրգռությունը՝ հասունացած հարցերի քննարկման և լուծման ասպարեզում։ Զարգացնելով կոմունիստների ակտիվությունը, բարձրացնելով նրանց պատասխանատվությունը կանոնադրական պարտականությունների կատարման գործում՝ կուսկազմակերպությունները ձգտում են իրենց տեսադաշտում պահել կուսակցության ամեն մի անդամի և թեկնածուի։

Կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի նկատմամբ կոմունիստների պատասխանատվության բարձրացման համար կարևոր դեր խաղացին կոմունիստների հետ անցկացված անհատական զրույցները, հատկապես այն կոմունիստների, որոնց նկատմամբ կուսկազմակերպությունները ինչ-որ պահանջներ ունեն։ Կուսփաստաթղթերի փոխանակության նախապատրաստման ընթացքում հանրապետության կուսկազմակերպություններում զրույցներ են անցկացվել ավելի քան 20 հազար կոմունիստների հետ։

Պրակտիկան ցույց է տալիս, որ շատ կոմունիստներ այդ զրույցներից արել և անում են համապատասխան հետևություններ. նրանցից շատերն ավելի ակտիվ ու եռանդուն կերպով են մասնակցում կոլեկտիվների հասարակական-քաղաքական կյանքին։ Հետևաբար, կուսկազմակերպություններից պահանջվում է նման զրույցներ անցկացնել նաև կուսփաստաթղթերի փոխանակման ժամանակաշրջանում։ Ընդ որում, այն պետք է կազմակերպել և անցկացնել խելացիորեն, պարզել, թե ինչպես է կոմունիստը, որպես քաղաքական մարտիկ, արդարացնում իրեն, ինչպես է բարձրացնում իր քաղաքական-գաղափարական մակարդակը, ինչպես է իրեն դրսևորում կոլեկտիվում, հասարակական միջավայրում և կենցաղում։ Կուսկազմակերպությունների պարտքն է՝ իրենց հետագա գործունեության համար անհրաժեշտ հետևություն անել այդ ամենից։

Կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստման և անցկացման պրոցեսում կարևոր է այն հարցը, թե ինչպես վարվել տույժ ունեցող կոմունիստների հետ։ Կուսկազմակերպությունները մինչև այժմ էլ դրա նկատմամբ



ցուցաբերել են ավելի ուշադիր և անհատական մոտեցում։ Նրանք վերացրել են իրենց արդարացրած մեծ թվով կոմունիստների տույժերը, նրանց ներգրավելով կուսակցական ակտիվ աշխատանքի։ Այդ տույժերը, պատժի հետ միասին, ունեցել են նաև դաստիարակչական նշանակություն։ 1972 թ. մայիսյան պլենումից հետո վերացվել են 1.426 կոմունիստների կուսակցական տույժերը։ Սակայն 1973 թ. հունվարի 1-ի դրությամբ, հանրապետությունում դեռևս 2.995 կոմունիստներ ունեին տույժեր՝ գրանցված հաշվառման քարտերում։ Նրանցից 255-ը Օրջոնիկիձեի շրջանից են, 81-ը՝ Արտաշատի, 66-ը՝ Մասիսի և այլն։ Ցավոք, նրանց թվում կան նաև այնպիսի կոմունիստներ, որոնք թեպետ լիովին արդարացրել են իրենց և արժանացել առաջքաշման ու պարգևների, բայց երկար ժամանակ, նույնիսկ 10 և ավելի տարիներ, կրում են կուսակցական տույժը։ Ուստի, մինչև փաստաթղթերի փոխանակումը, կուսկազմակերպությունները պետք է քննարկեն և լուծեն նրանց տույժերի վերացման հարցը։

Տույժերի վերացումն ինքնանպատակ չէ։ Յուրաքանչյուր կոնկրետ դեպքում պետք է հանգամանորեն խորամուխ լինել կուսակցության առանձին անդամների գործունեության մեջ, պարզել նրանց վարքագիծն աշխատանքում, հասարակական միջավայրում ու կենցաղում, թերությունների ու պասիվության պատճառները, բացահայտել, թե ինչ չափով են կախված դրանք կոմունիստներից կամ կուսկազմակերպություններից։ Կուսկազմակերպությունները պարտավոր են մի դեպքում բարձրացնել մարդուն ներկայացվող պահանջը, մյուս դեպքում՝ օգնել նրան, մտածել, թե նրան ինչպես ավելի ակտիվորեն մասնակից դարձնել կազմակերպության հասարակական-քաղաքական կյանքին։

Կուսակցության որոշ անդամներ մի քանի նկատողություն ունեն, բայց անհրաժեշտ հետևություններ չեն անում դրանցից և շարունակում են իրենց վատ դրսևորել, իսկ համապատասխան կուսկազմակերպություններն էլ բավականաչափ սկզբունքայնություն հանդես չեն բերում նրանց նկատմամբ։ Կուսակցական գործի շահերը պահանջում են, հոգատարության և ուշադիր վերաբերմունքի հետ միասին, ցուցաբերել պահանջկոտություն և անհաշտվողականություն այն կոմունիստների հանդեպ, ովքեր չեն կատարում իրենց կանոնադրական պարտականությունները, արատավորում են լենինյան կուսակցության անդամի բարձր կոչումը։ Այս հարցերում կուսկազմակերպությունները պետք է ցուցաբերեն սկզբունքային և անհատական մոտեցում, պարզեն, թե ով ինչպիսի հետևություն է արել ստացած տույժից, և բոլոր դեպքերում հարցը լուծել ՍՄԿԿ կանոնադրության պահանջների շրջանակներում՝ հաշվի առնելով յուրաքանչյուր կոմունիստի աշխատանքն ու վարքագիծը, զանցանքի բնույթը և տույժերի վաղեմության ժամկետը։ Եթե կոմունիստն իրեն չի ուղղել, նրա կուսակցական տույժը չպետք է հանել, այլ գրանցել նոր փաստաթղթերում։ Իսկ եթե որոշ կոմունիստներ շարունակում են իրենց անվայել պահել, ապա նրանց փաստաթղթերը չպետք է փոխանակել, այլ հարկավոր է դնել կուսակցության շարքերում նրանց մնալու կամ չմնալու հարցը։

Կուսկազմակերպությունները ներկայումս այդպես էլ վարվում են։ Աճել և աճում է պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ։ Նրանք ավելի սկզբունքային դիրքերից են հանդես գալիս որոշ ընկերների անտարբերության դեմ, դատապարտում կարգապահության, կոմունիստական բարոյականության նորմերի խախտման դեպքերը։ Վերջին շրջանում կուսկազմակերպություններն սկսել են ավելի վճռականորեն ազատվել այն մարդկանցից, ովքեր իրենց վար-

քագծով արատավորում են կուսակցության անդամի վեհ կոչումը։ 1972 թ. քաղկոմ-շրջկոմները երկու անգամ ավելի շատ մարդ են կուսակցությունից վտարել կամ դուրս թողել, քան 1965, 1966 և 1967 թվականներին։

Կուսկազմակերպություններն առաջնորդվում են ՍՄԿԿ Կենտկոմի այն ցուցումներով, որ կուսփաստաթղթերի փոխանակումը կուսակցության զտում չէ, բայց կարելի է և պետք է կուսակցական շարքերն անաղարտ պահել՝ կոմունիստների նկատմամբ պահանջկոտությունը բարձրացնելու, նրանց քաղաքական դաստիարակությունն ու գաղափարական կոփվածությունը պատշաճ ձևով կազմակերպելու միջոցով։ Դրանով պետք է բացատրել, որ շատ կոմունիստներ ուղղել են իրենց սխալները, սկսել են լավ աշխատել, ակտիվորեն մասնակցել կոլեկտիվների ու կազմակերպությունների հասարակական-քաղաքական կյանքին։

Կուսկազմակերպությունները, կոմունիստների տույժերի հարցով զբաղվելիս, մինչև փաստաթղթերի փոխանակումը, պետք է վերացնեն նաև կոմունիստների կուսակցական ստաժում արտահայտված ընդմիջումները, որոնք սահմանվել են որպես կուսակցական տույժի միջոց՝ ՍՄԿԿ անդամությունից թեկնածու իջեցնելու ժամանակ։ Այդ ընդմիջումների հանման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը չպետք է տարածել այն ընդմիջումների վրա, որոնք սահմանվել են նախկինում ՍՄԿԿ շարքերից վտարված կամ դուրս մնացած լինելու պատճառով։

Կուսակցությունը միշտ էլ հոգում է իր շարքերի ամրապնդման մասին։ Նրա մարտական ջոկատը՝ Հայաստանի կուսկազմակերպությունը, ևս որոշակի աշխատանք է կատարել ՍՄԿԿ շարքերն ընդունվողների որակական կազմը բարելավելու համար։ Բավական է ասել, որ 1972 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունված բանվորների թիվը աճեց և հասավ 56,9 տոկոսի, 1965 թ. 37,7-ի դիմաց, կոմերիտականներինն ընդհանուր ընդունելության մեջ ավելացավ մոտ 30 տոկոսով և կազմեց 65,1 տոկոս, իսկ կանանցը՝ համապատասխանաբար՝ 15 և 33,2 տոկոս։

Կուսկազմակերպությունները բավականաչափ գործ են արել կոմունիստների հաշվառման և կուսակցական տնտեսության մեջ պատշաճ կարգ ու կանոն հաստատելու համար։ Նրանք ավարտել են կոմունիստների առկա կազմի համեմատումը հաշվառման քարտերի հետ։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները ստուգումների ժամանակ հայտաբերել և գրանցել են կոմունիստների հաշվառման քարտերում ավելի քան 40 հազար փոփոխություններ, որոնք կատարվել են ՍՄԿԿ անդամների կյանքում։ Նրանք կազմել են կոմունիստների լուսանկարման, փաստաթղթերի փոխանակման գրաֆիկները, առանձնացրել ու կահավորել են այն սենյակները, որտեղ կատարվելու է փաստաթղթերի փոխանակումը։ Ընտրվել են ավելի քան 320 աշխատողներ՝ քաղկոմ-շրջկոմներում կուսփաստաթղթերը ձևակերպելու համար և այլն։ Քաղկոմ-շրջկոմները և կուսկազմակերպությունները հիմնականում լուծել են կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստման և անցկացման հետ կապված կազմակերպական ու տեխնիկական հիմնական հարցերը։

Չնայած այս ամենին՝ կուսակցական փաստաթղթերի փոխանակման ասպարեզում կատարվելիք աշխատանքը չի կարելի ավարտված համարել։ Դա տակավին հիմնական գործի սկիզբն է, այն պետք է շարունակել մինչև փաստաթղթերի փոխանակման վերջը։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշմանը համապատասխան՝ քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կուսկազմակեր-



պությունները պետք է բուն փոխանակումը լիովին նպատակամղեն ներկուսակցական կյանքի հետագա ակտիվացմանը, կուսակցական ղեկավարման ձևերի և մեթոդների կատարելագործմանը։ Ցանկալի է, որ կուսփաստաթղթերի փոխանակման ընթացքում առաջվա նման քաղկոմ-շրջկոմները բյուրոների նիստերում պարբերաբար հաշվետվություններ լսեն կատարվող աշխատանքի ընթացքի մասին։ Անհրաժեշտ է բազմակողմանիորեն զբաղվել կուսփաստաթղթի փոխանակման ասպարեզում կուտակված դրական փորձն ընդհանրացնելու և լայնորեն տարածելու հարցով, միաժամանակ հաշվի առնելով երևան եկած թերությունները։

Ուսումնասիրությունները վկայում են, որ որոշ կուսկազմակերպություններում ձևական մոտեցում են ցուցաբերում կոմունիստների հետ զրույցներ անցկացնելու նկատմամբ։ Ամենուրեք չէ, որ պատշաճ ուշադրություն է նվիրվում նրանց կողմից կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների հասցեին արված առաջարկությունների, դիտողությունների քննարկմանն ու իրականացմանը։ ՍՄԿԿ որոշ անդամներ տրված տույժերից համապատասխան հետևություններ չեն անում և իրենց դարձյալ վատ են պահում, իսկ առանձին կուսկազմակերպություններ նրանց նկատմամբ սկզբունքայնություն հանդես չեն բերում, առաջ չեն քաշում ու լուծում նրանց կուսակցականության հարցը։

Կուսակցական հաշվառումը կուսկազմակերպության գործունեության կարևոր բնագավառ է։ Այդ գործում այժմ առավել հստակություն է պահանջվում։ Կուսակցության քաղկոմ-շրջկոմները համեմատական ստուգումների ժամանակ պետք է խորամուխ լինեն կոմունիստների քաղաքացիական և կուսակցական փաստաթղթերում հայտնաբերված տարբերությունների և հակասությունների մեջ, պարզեն իսկությունը, ճշգրտեն տվյալները։ Մինչև փաստաթղթերի փոխանակումը քաղկոմ-շրջկոմները պարտավոր են բյուրոների նիստերում քննարկել այն կոմունիստների հարցը, որոնց տոմսերը կորած են կամ փչացած։ Հաշվառման գործի ոչ հստակությամբ պետք է բացատրել, որ քաղկոմ-շրջկոմներում ավելի քան 200 կոմունիստների հաշվառման քարտերն ստացվել են, բայց մինչև օրս նրանք հաշվառման չեն վերցվել, 77 կոմունիստներ հանրապետության շրջաններից մեկնել են, սակայն նրանց տեղը հայտնի չէ։ Հաշվառման գործը կարգավորելու համար հարկավոր է արագացնել որոնումները, պարզել նրանց տեղերը և լուծել հաշվառումից հանելու կամ կուսակցականության հարցը։

Չափազանց կարևոր նշանակություն ունի բուն փոխանակման տեխնոլոգիան։ Դրա հաջողությունը պայմանավորված է կազմակերպչական-տեխնիկական լավ նախապատրաստությամբ և անցկացմամբ։ Ուստի, անհրաժեշտ է ճշգրիտ պլանավորել փոխանակման կոմպլեքսային աշխատանքը և հոգ տանել, որ այն ամենուրեք անցնի ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներին համապատասխան։ Ճիշտ է, կուսակցության քաղկոմ-շրջկոմներում կազմվել են փոխանակման գրաֆիկները, սակայն որոշ տեղերում հաշվի չեն առնվել առանձին կուսկազմակերպությունների գործունեության առանձնահատուկ պայմաններն ու բնույթը, ինչպես նաև ժամանակը։ Գործի հաջողությունը պահանջում է լուրջ ուշադրություն նվիրել նաև այս հարցին։

Կուսփաստաթղթերի փոխանակման գործում երկրորդական աշխատանք չկա։ Այստեղ ամեն մի փոքր հարց կարևոր է։ Սակայն, առաջնային նշանակություն պետք է տալ հատկապես հետևյալ խնդրին։ Դա այն է, որ քաղկոմ-շրջկոմների քարտուղարները, կուսփաստաթղթերը փոխանակելիս, մանրազնին

ստուգեն հին նմուշի կուստոմսի իսկությունը և դրա գրանցումները համեմատեն հաշվառման քարտի գրանցումների հետ։

Համեմատության ընթացքում հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել կոմունիստների ազգանվան, անվան, հայրանվան ճշտության վրա, պարզել, արդյոք կուստոմսի լուսանկարը համապատասխանո՞ւմ է հաշվառման քարտի լուսանկարին, փոխանակման ներկայացված կուսփաստաթղթերում չկա՞ն ջնջումներ, միատեսա՞կ են դրված կնիքները։ Երբ կուսանդամի փաստաթղթերում հայտնաբերվում են գրանցումների անճշտություններ կամ տարբերություններ, կուսակցության քաղկոմ-շրջկոմների քարտուղարները պարտավոր են պարզել դրանք, քննարկել բյուրոյի նիստում, որոշում ընդունել կասկածելի անճշտություններն ուղղելու մասին։ Երբ ներկայացված կուսփաստաթղթերի ճշտությունը կասկածանք է հարուցում, քաղկոմ-շրջկոմները պետք է որոշեն տվյալ փաստաթղթերը նորով փոխանակե՞ն, թե՞ ոչ։

Կուսակցության քաղկոմ-շրջկոմների առաջնահերթ խնդիրներից մեկն էլ այն է, որ առանձնացված սենյակները կահավորեն այնպես, որպեսզի ապահովվեն մաքուր բլանկների ու հաշվառման փաստաթղթերի պատշաճ պահպանումը, փաստաթղթերի ճիշտ ու որակյալ ձևակերպումն ու հանձնումը։ Միանգամայն անթույլատրելի է սխալ կամ ուղղումներով ու ջնջումներով, անընթեռնելի կնիքներով վավերացված տոմսերի հանձնումը կոմունիստներին։

Շատ կարևոր է կոմունիստների լուսանկարման հաջող կազմակերպումը։ Ընդհանուր առմամբ այդ գործը բարեհաջող է։ Սակայն առանձին շրջկոմներում ու քաղկոմներում նկատվում են լուրջ թերություններ. Ներկայացված լուսանկարների զգալի մասը ցածրորակ է լինում, որի պատճառով կոմունիստները լուսանկարվում են կրկնակի, նույնիսկ եռակի անգամ, հարկավոր է ընտրել գործին գիտակ, բարձրորակ լուսանկարիչներ։

Կուսփաստաթղթերի փոխանակման հաջող կազմակերպման գործում մեծ նշանակություն ունի կադրերի ճիշտ ընտրությունը։ Փաստաթղթերի կոմպլեկտների լրացման ու ձևակերպման գործում պետք է ներգրավել ստուգված, գրագետ, լավ ձեռագիր ունեցող ընկերների։ Մինչդեռ առանձին քաղկոմ-շրջկոմներ կադրերի ընտրության հարցում ցուցաբերել են ձևական մոտեցում և փաստաթղթերի փոխանակման պրոցեսում հարկադրված են որոշ աշխատակիցների փոխարինել նորերով։

Կուսակցական նոր կոմպլեկտները, ինչպես նաև մյուս փաստաթղթերը պետք է լրացվեն և ձևակերպվեն խնամքով, պարզ, լիովին ընթեռնելի ձեռագրով, առանց սխալների, ուղղումների ու ջնջումների՝ նկատի ունենալով, որ կուսփաստաթղթերից որևէ մեկի փչացման դեպքում չեղյալ է համարվում ամբողջ կոմպլեկտը։

Կուսփաստաթղթերի փոխանակումը պետք է ծավալել աստիճանաբար, թույլ չտալով հապճեպություն։ Դրանից ելնելով ՀԿԿ Կենտկոմի բյուրոն որոշեց մեր հանրապետությունում փոխանակման աշխատանքները մարտի 1-ին սկսել միայն 4 կազմակերպությունում՝ Երևան քաղաքի Սպանդարյանի և 26 կոմիսարների շրջանային, Լենինականի քաղաքային և Հրազդանի շրջանային կոմիտեներում՝ նպատակ ունենալով հաշվի առնել նրանց փորձը և դրա հիման վրա ապրիլի 1-ից սկսել փոխանակումը բոլոր քաղկոմ-շրջկոմներում։

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ

ՆԻՆԱ ՕՀԱՆՋԱՆՅԱՆ
ՀԿԿ Լենինականի քաղկոմի
պրոպագանդայի և ագիտացիայի
բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների հաջող կենսագործումը մեծապես պայմանավորված է կոմունիստների շրջանում տարվող կազմակերպական և քաղաքական աշխատանքի բարձր մակարդակով։ Ներկայումս անհրաժեշտ է կուսակցության քաղկոմ-շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության բոլոր բնագավառներում հետևողականորեն ներդնել գիտական մեթոդները։ Իսկ դա, անշուշտ, անհնար է առանց հստակորեն կազմակերպված ինֆորմացիայի։ ՍՄԿԿ XXIV համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց կուսակցական ինֆորմացիայի կատարելագործմանը։ Ինֆորմացիան պետք է օգնի կուսակցական մարմիններին՝ ճիշտ կողմնորոշվելու իրադրության մեջ, լայնորեն օգտագործելու կոմունիստների, աշխատավորների կարծիքներն ու փորձը։ Համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք պետք է այսուհետև ևս բարելավենք ներկուսակցական ինֆորմացիան, բարձրացնենք նրա ներգործությունը, այն ավելի լայնորեն օգտագործենք որպես ղեկավարման գործիք, դաստիարակության և վերահսկողության միջոց» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 126)։

Անընդմեջ զարգացնելով ներկուսակցական դեմոկրատիան՝ կուսակցության Լենինականի քաղկոմը լրջորեն զբաղվում է ինֆորմացիայի սիստեմի կատարելագործմամբ։ Մենք ձգտում ենք բարձրացնել ինֆորմացիայի մակարդակը ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին համապատասխան՝ կոմունիստներին, ակտիվին սիստեմատիկաբար տեղյակ պահել Սովետական Միության ներքին և միջազգային կյանքի, մեր քաղաքի կուսկազմակերպության ընթացիկ գործունեության կարևորագույն հարցերին։

Կուսակցական ինֆորմացիայի նկատմամբ հիմնական պահանջը օպերատիվությունն է, օբյեկտիվությունը և, իհարկե, սիստեմատիկությունը։ Այսինքն, ինֆորմացիան պետք է օգնի ուշադրությունը կենտրոնացնելու գլխավոր խնդիրների վրա։ Քաղկոմը մեծ տեղ է տալիս այդ սկզբունքով «վերևից ներքև» և «ներքևից վերև» ներկուսակցական ինֆորմացիային, պատշաճ կերպով ընդհանրացնում այն։ Քաղկոմը որոշակի կարգ է սահմանել կուսակցական ին-

ֆորմացիայի ստացման և մշակման գործում: Մենք ձգտում ենք, որպեսզի այն համապատասխանի ժամանակի պահանջներին, նպաստի կուսակցության դիրեկտիվների և որոշումների կատարմանը:

Քաղկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները բարելավել են ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության, ներկուսակցական կյանքի, կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրների իրականացման ասպարեզում կատարված աշխատանքի մասին կոմունիստներին և աշխատավորներին տեղեկացնելու գործը: Դրա համար մշակել և կիրառում ենք բազմազան ձևեր ու մեթոդներ, որոնց մասին կխոսվի ստորև:

ՍՄԿԿ կանոնադրությունը կուսկոմիտեներին պարտավորեցնում է կոնֆերանսների միջև ընկած ժամանակաշրջանում կոմունիստներին սիստեմատիկաբար տեղեկացնել իրենց գործունեության մասին: Վերևից եկող ինֆորմացիան կուսակցության բոլոր օղակների միասնության ամրապնդման և մարտունակության բարձրացման անժխտելի պայմանն է, աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործման երաշխիքը:

Կուսակցական մասսաներին և բոլոր աշխատավորներին կուսակցության գործունեության մասին տեղյակ պահելը, նշվում է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում, մեր կուսակցական կյանքի սկզբունքն է, և մենք պետք է հաստատակամորեն հետևենք դրան: Ելնելով դրանից, պարբերաբար կազմակերպում ենք քաղկոմի քարտուղարների, բյուրոյի անդամների և սովետական ղեկավար աշխատողների զեկուցումներն ու հաղորդումները քաղկոմի գործունեության մասին:

Յուրաքանչյուր ամսվա առաջին ուրբաթ օրը քաղկոմում անցկացնում ենք «Քարտուղարի օր», իսկ սկզբնական կուսկազմակերպություններում կազմակերպում կուսբյուրոների և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների օրեր: Այդ միջոցառման ժամանակ քաղկոմի քարտուղարներից որևէ մեկը սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին մանրամասն ինֆորմացիա է տալիս անցած ամսվա ընթացքում Միության, հանրապետության, քաղաքի մասշտաբով տեղի ունեցած կարևորագույն իրադարձությունների մասին, հաղորդում, թե ինչ ուղղությամբ է աշխատում քաղկոմը, ինչպիսի հարցեր, պրոբլեմներ են անհանգստացնում նրան: Անկաշկանդ, բարեկամական զրույցի, կարծիքների փոխանակման միջոցով հնարավոր է լինում ավելի հստակ և ճկուն կերպով լուծել կազմակերպությունների հետ կապված հարցերը, տեղյակ պահել վերադաս կազմակերպությունների հրատապ որոշումներին, հրահանգավորել այս կամ այն խնդրի վերաբերյալ:

Արդեն մի քանի տարի է, ինչ քաղկոմում գործում է սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների միամյա դպրոց, որի պարապմունքներն անցկացվում են ամիսը մեկ անգամ և նպաստում կուսկազմակերպություններին ժամանակին ինֆորմացիա հաղորդելուն: Դա միաժամանակ տեղերից եկող անմիջական ինֆորմացիայի աղբյուր է: Դպրոցի պարապմունքներին մասնակցում են նաև ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմի, քաղսովետի գործկոմի պատասխանատու աշխատողները: Դպրոցի անցյալ տարվա պարապմունքներն ավարտվեցին հաջողությամբ: Այս տարվա առաջին պարապմունքը նվիրված էր ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման մեջ շոշափված գլխավոր խնդիրներին:

Ինֆորմացիայի կարևոր միջոցներից մեկը կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցն է: Պարապմունքների թեմատիկան նախատեսվում է հեռանկարային պլանով և ընդգրկում է քաղաքի կուսակցական-տնտեսական ակտիվին հուզող ամենահրատապ հարցերը: Պարապմունքները նպաստում են կուսկազմակերպությունների ճիշտ կողմնորոշմանը և հնարավորություն են ընձեռում հաջողությամբ կոորդինացնել ընդհանուր ջանքերը: Այդ նպատակին է ուղղված նաև քաղաքային «Բանվոր» թերթի և «Լենինականյան կյանք» տեղական ռադիոհաղորդումների գործունեությունը: «Կյանքը կուսակցական կազմակերպություններում», «Եղբայրական մրցակից քաղաքներում», «Տնտեսական աշխատողի ամբիոն», «ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը» և այլ խորագրերի տակ հրապարակվել են նյութեր, որոնք իրենց օպերատիվությամբ, օբյեկտիվությամբ և սիստեմատիկությամբ օգնել են ճիշտ կողմնորոշվելու կադրերին այս կամ այն հարցի լուծման ընթացքում, հիմնական ուշադրությունը դարձնելու գլխավոր խնդիրների վրա: Այսօր, անշուշտ, դրանք բխում են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից և իններորդ հնգամյակի դիրեկտիվներից ու կանխորոշում մեր ինֆորմացիոն աշխատանքի հիմնական ուղղությունները: Ինչպես են կյանքի կոչվում համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները տնտեսական ու կուլտուրական շինարարության տարբեր ասպարեզներում, ինչ նոր օգտակար նախաձեռնություններ են ծնվել տեղերում, ինչպիսի քայլեր են արվում առաջացած դժվարությունները հաղթահարելու համար,— ահա մեր ներկուսակցական աշխատանքի առանցքը:

Կոմունիստներին ինֆորմացիա տալու գործում մեծ դեր է խաղում քաղկոմի մեթոդական կաբինետը, ուր կան կուսակցական շինարարության վերաբերյալ բազմազան նյութեր, քաղաքային կուսկազմակերպությունը բնորոշող լավ ձևավորված ստենդներ, ցուցադրվում են լավագույն կուսկազմակերպությունների, առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների գործունեության վերաբերյալ ինֆորմացիոն նյութեր: Մեթոդական կաբինետում միշտ կարելի է ձեռք բերել անհրաժեշտ նյութեր, ստանալ գործնական խորհուրդներ:

Ինֆորմացիայի արդյունավետ ձևերից են պլենումները, ակտիվի ժողովները, խորհրդակցությունները, որոնց ընթացքում, գործերի վիճակի մանրամասն վերլուծությանը զուգընթաց, կոնկրետ խնդիրներ են առաջադրվում ինչպես սկզբնական կուսկազմակերպություններին, այնպես էլ առանձին կոլեկտիվներին: Ինֆորմացիայի այդ ձևը նպաստում է տեղերում պատշաճ կերպով ուսումնասիրել և վերահսկել գործերի կոնկրետ վիճակը, գործնական խնդիրներ դնել կազմակերպությունների առջև:

Քաղկոմի գործունեության մեջ ավանդույթ է դարձել տարբեր բնագավառների աշխատողներին ինֆորմացիաներ տալը: Դա կարևոր, ինչպես մենք համոզվել ենք, տեղեկացման արդյունավետ ձև է, որը զեկուցողին հնարավորություն է ընձեռում լսարանի ուշադրությունը բևեռել տվյալ բնագավառի աշխատողներին հուզող կարևոր հարցերի և պրոբլեմների վրա: Ինֆորմացիաներով հանդես են գալիս քաղաքի կուսակցական, տնտեսական ղեկավարները, գիտության, արվեստի, կուլտուրայի գործիչները: «Ինֆորմացիայի օրեր» են կազմակերպվել լուսավորության, առողջապահության, կուլտուրայի, շինարարության, տրանսպորտի աշխատողների համար՝ «Լենինականի զարգացման հեռանկարները իններորդ հնգամյակում», «Քաղաքական աշխատանքի կազմակերպման մասին», «Կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աճը առաջիկա հինգ տարում» և այլ թեմաներով:

«Ինֆորմացիայի օրերը» մեծ հետաքրքրություն են առաջացրել աշխատավորության շրջանում: Դա բնական է, քանի որ դրանք ո՛չ միայն օպերատիվ

ինֆորմացիայի աղբյուր են, այլև կուսակցական աշխատողներին օգնում են տեղերից ահազանգեր ստանալ, իմանալ, թե ինչպիսի հարցեր են հուզում աշխատավորությանը։ Այսպես, երկաթուղայինների համար կազմակերպված «Ինֆորմացիայի օր» միջոցառման ժամանակ լուրջ դիտողություններ ու առաջարկություններ եղան քաղաքի կենցաղսպասարկման օբյեկտների վերաբերյալ, որոնց աշխատանքի մասին խոսեց քաղսովետի գործկոմի կենցաղսպասարկման վարչության պետ Ս. Ասատրյանը։ Նա հանգամանորեն ինֆորմացիա տվեց այն մասին, թե ինչ միջոցառումներ են իրականացվում քաղաքի բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու համար։ Նշվեց, որ բոլոր տեսակի ծառայություններից ամեն օր օգտվում է 15—20 հազար մարդ, ավելի մեծ ուշադրություն է նվիրվում տարբեր ծառայությունների իրագործմանը, կահավորված տաղավարների ցանցի ընդարձակմանը։ Իրենց ելույթներում մի շարք արժեքավոր հարցեր բարձրացրին երկաթուղայիններ Գ. Գրիգորյանը, Վ. Մանուկյանը, Ֆ. Սաֆարյանը և ուրիշներ։ Քննադատական խոսք ասվեց այն մասին, որ երկաթուղայինների ավանը բարեկարգման կարիք է զգում, այնտեղ չկան կենցաղային սպասարկման տաղավարներ։

Քաղաքային կոմիտեն հանձնարարեց քաղսովետի համապատասխան բաժիններին, քաղսովետի գործկոմի նախագահի տեղակալ Ա. Մինասյանին, մշակել համապատասխան միջոցառումներ։ «Ինֆորմացիայի օրվա» ժամանակ եղած ահազանգը առիթ եղավ, որպեսզի քաղսովետի գործկոմը մշակի երկաթուղայինների բանավանի բարեկարգման կոմպլեքսային պլան։ Այս տարի ավանում շահագործման կհանձնվի կենցաղային սպասարկման տաղավարը։ Այստեղ բացվելու են նաև լուսանկարչական տաղավարներ։ Տարվա ընթացքում հոգ կտարվի այլ ծառայությունների արմատավորման մասին։

Կուսակցության քաղկոմը կիրառում է նաև ինֆորմացիայի այնպիսի արդյունավետ միջոց, ինչպիսին է հանձնարարականը։ Քաղկոմը զեկուցագիր ստացավ դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանի կուսկազմակերպությունից՝ կոլեկտիվում աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու մասին։ Կարգապահության ամրապնդմանը մեծապես նպաստում են այն միջոցառումները, որոնք հետևողականորեն իրականացնում է կուսկազմակերպությունը։ Գործարանում սիստեմատիկաբար անցկացվում են հանդիպման երեկոներ՝ «Սիրիր քո մասնագիտությունը» թեմայով։ Այդ ժամանակ, որպես կանոն, հանդես են գալիս արտադրության վետերանները։ Նրանք պատմում են իրենց անցած ուղու և աշխատանքային փորձի մասին։ Այդ պրակտիկան դաստիարակչական մեծ նշանակություն է ունենում, նպաստում կադրերի ամրապնդմանը։ Հաճախ ագիտացիոն զրույցները նվիրվում են առանձին առաջավոր բանվորների փորձին, մասսայական կարծիք է ստեղծվում նորարարների մասին։ Կարգապահության ամրապնդմանը մեծապես նպաստում է նաև կոմունիստների, արտադրության հրամանատարների ինֆորմացիաների ունկնդրումը կուսբյուրոյի նիստերում և կուսժողովներում։ Ուսանելի շատ բան սովորեցին երիտասարդ բանվորները արտադրության վետերան Ա. Մարտիրոսյանի ինֆորմացիայից։ Նա հանգամանորեն պատմեց իր անցած ուղու մասին, հիշատակեց այն դժվարությունները, որոնք հաղթահարվել են փոքրիկ արհեստանոցը ժամանակակից ձեռնարկության վերածելու ճանապարհին։ Խոսելով իր ղեկավարած արտադրամասի կոլեկտիվի ձեռք բերած հաջողությունների մասին, նա միաժամանակ թվարկեց այն թերությունները, որոնք դեռևս առկա են արտադրության կազմակերպման գործում։



Ձեռնարկությունում մեծ ուշադրություն է նվիրվում ագիտատորների և քաղինֆորմատորների գործունեությանը, երիտասարդ բանվորների դաստիարակությանը, աշխատանքային լավագույն ավանդույթների պրոպագանդմանը։ Կուսբյուրոն պարբերաբար քննարկում է կոմունիստների պատասխանատվության բարձրացման, աշխատանքային կարգապահության ամրապնդման հետ կապված հարցեր։ Պրակտիկա են դարձել կոմունիստների անհատական հաշվետվությունները կանոնադրական պահանջների կատարման վերաբերյալ։

Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, հանգամանորեն ուսումնասիրելով այդ փորձը, մշակեց հանձնարարական և ուղարկեց քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններին։

Մեկ այլ օրինակ։ Ագիտատորների և քաղինֆորմատորների քաղաքային խորհրդում զեկուցումներ լսվեցին տեքստիլ կոմբինատի քաղինֆորմատորների և հղկող հաստոցների գործարանի ագիտկոլեկտիվի աշխատանքի փորձի մասին։ Գտնելով, որ նրանց մոտ ուսանելի շատ բան կա, պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը նրանց փորձի հիման վրա մշակեց հանձնարարական և ուղարկեց բոլոր ձեռնարկությունների ագիտկոլեկտիվներին ու քաղինֆորմատորներին։

Քաղաքային կոմիտեն հետևողականորեն է զբաղվում քաղինֆորմատորներին օպերատիվ ինֆորմացիա տալու, նրանց համապատասխան նյութերով ապահովելու հարցով։ Անցկացնում ենք կոնսուլտացիաներ, մեթոդական խորհրդակցություններ, ուր հանդես են գալիս բազմափորձ, գործին լավատեղյակ մասնագետներ։

Հետևողականորեն զարգացնելով ներկուսակցական դեմոկրատիան, ընդլայնելով բոլոր օղակների գործունեության հրապարակայնությունը՝ քաղկոմն անընդհատ կատարելագործում է կուսակցական ինֆորմացիայի սիստեմը, մշտապես ջանում, որպեսզի կուսկազմակերպությունները հաղորդեն միայն օպերատիվ ու հստակ ինֆորմացիա։ «Ավելի օպերատիվ ու բովանդակալից է դարձել այն ինֆորմացիան,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ,— որը գալիս է ներքևից դեպի վերև, ընդհուպ մինչև Կենտկոմ։ Նման ինֆորմացիան օգնում է ավելի լավ կողմնորոշվել իրադրության մեջ, ավելի լրիվ հաշվի առնել կուսակցական կազմակերպությունների, աշխատավորների փորձն ու կարծիքը հարցերը լուծելիս» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 125—126)։

Քաղաքային կոմիտեն օգտագործում է բազմազան ուղիներ, որոնցով ինֆորմացիա է ստացվում կուսկազմակերպություններից, գործարաններից ու ֆաբրիկաներից, առանձին քաղաքացիներից։ Այդ ասպարեզում նշանակալի տեղ է գրավում ղեկավար գործիչների անմիջական շփումը աշխատավորության հետ։ Քաղկոմի քարտուղարները, բյուրոյի անդամները, բաժնի վարիչները հաճախ լինում են ձեռնարկություններում, բանվորների, մասնագետների հետ անհատական զրույցների միջոցով բացահայտում բազմաթիվ թերություններ, որոնք այլ պայմաններում կարող էին աննկատ մնալ։

Ներկուսակցական ինֆորմացիայի փորձված մեթոդներից մեկը քաղաքային կոմիտեի աշխատողների խորհրդակցություններն են։ Յուրաքանչյուր երկուշաբթի առաջին քարտուղարը անցկացնում է ապարատի աշխատողների խորհրդակցություն, որի ընթացքում բաժնի վարիչները, հրահանգիչները մանրամասն ինֆորմացիա են տալիս այն կազմակերպությունների գործերի վիճակի մասին, որտեղ նրանք եղել են նախորդ շաբաթ։ Այստեղ էլ վճռվում են

շատ հարցեր: Այսպիսի ինֆորմացիան բարձրացնում է յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը, նպաստում ուժեղացնելու գործնական օգնությունը կուսկազմակերպություններին և անհրաժեշտ վերահսկողությունը նրանց գործունեության նկատմամբ: Նույնպիսի պրակտիկա էր կիրառվում սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների ժամանակ, որտեղ կոմունիստների արած քննադատական դիտողություններն ու առաջարկությունները հասցվում էին քաղկոմ և նրա միջամտությամբ լուծվում տեղական կազմակերպություններում:

Ներքևից եկող ինֆորմացիայի աղբյուրներից մեկն էլ կուսկոմիտեների և կուսբյուրոների հաշվետվությունների քննարկումն է: Գաղտնիք չէ, որ քաղաքում դեռևս քիչ չեն այն կազմակերպությունները, որտեղ գործերի վիճակն այնքան էլ բարեհաջող չէ: Այն բարելավելու, կուսակցական աշխատանքն աշխուժացնելու և համապատասխան օգնություն ցույց տալու համար տվյալ կուսկազմակերպության հաշվետվությունը քննարկում է քաղկոմի բյուրոն: Այդպիսի քննարկումներն օգնել են վերացնելու ետ մնացող ձեռնարկություններում (սառնարանային կոմպրեսորների, կոնդենսատորների գործարաններ, կաշույքի ֆաբրիկա և այլն) եղած մի շարք թերություններ:

Ներկայումս կուսքաղկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում վերջին կարևորագույն իրադարձություններն են: Հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում հաջողությամբ կիրառվում են քաղաքական-մասսայական աշխատանքի բազմազան ձևեր ու մեթոդներ՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցումը մասսայականացնելու, այդ պատմական փաստաթուղթը կոմունիստների, քաղաքի ողջ աշխատավորության սեփականությունը դարձնելու համար: Կուսկազմակերպությունների գործունեությունը նպատակաուղղված է նաև կուսակցության և կառավարության՝ 1973 թ. համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին որոշումը ըստ ամենայնի մասսայականացնելուն, նրա գործնական կիրառումը ապահովելուն: Այդ նպատակով լայնորեն օգտագործվում են ինչպես մասսայական, այնպես էլ ներկուսակցական ինֆորմացիայի ամենատարբեր ձևերը:

Հասկանալի է, որ վերը նշված օրինակներով բնավ չեն սահմանափակվում ներկուսակցական ինֆորմացիայի ձևերն ու մեթոդները: Դա մի ստեղծագործական աշխատանք է, որը չի հանդուրժում շաբլոն և պահանջում է անընդհատ որոնումներ ու նախաձեռնություններ:

Վերջերս կուսքաղկոմի ապարատի կուսկազմակերպության ժողովում քննարկվեց «Ներկուսակցական ինֆորմացիան քաղաքային կազմակերպությունում» հարցը: Ժողովում ծավալված լուրջ ու հանգամանալից խոսակցությունը կրկին ցույց տվեց, որ քաղկոմը, կուսակցության XXIV համագումարի առաջադրած պահանջներին համապատասխան, որոնում է նոր ուղիներ ու ձևեր, որոնք պետք է ակտիվորեն ծառայեն մեր ողջ աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, մասսաների հետ կապերի հետագա ամրապնդմանը:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԼՈՒԾՈՒՄ ՊԱՀԱՆՋՈՂ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

ԷԴ. Պ. ՇԱՀԻՆՅԱՆ
ՀԿԿ Երևանի քաղկոմի շինարարության և
քաղաքային տնտեսության բաժնի վարիչ

Հանրահայտ է, թե սովետական իշխանության տարիներին և, հատկապես, վերջին ժամանակաշրջանում Երևանում ինչպիսի վիթխարի աշխատանք է կատարված քաղաքաշինության ասպարեզում: Դրա վառ ապացույցը արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկությունների, գիտահետազոտական կազմակերպությունների, բարձրագույն, միջնակարգ ու հանրակրթական ուսումնական հաստատությունների, կուլտուր-լուսավորական հիմնարկների, հիվանդանոցների ու բնակելի հոյակապ շենքերն են, լայնահուն պողոտաները, ծաղկազարդ զբոսայգիները, հրապարակները և այլն, որոնցով Երևանը նոր տեսք ստացավ ու նոր քաղաք դարձավ, որն իր ուրույն գեղեցկությամբ հիացմունք է պատճառում ոչ միայն բնակիչներին, այլև դրսից եկած այցելուներին:

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ջերմ հոգատարության ու ցույց տված մեծ օգնության շնորհիվ քաղաքաշինությունը Երևանում ուժեղ թափ ու լայն ծավալ է ստացել: Բավական է ասել, որ միայն անցած ութերորդ հնգամյակում միութենական և հանրապետական կապիտալ ներդրումների հաշվին Երևանում կատարվել է 1 միլիարդ 130 միլիոն ռուբլու շինարարություն: Հինգ տարվա ընթացքում կառուցվել ու շահագործման են հանձնվել 1.813 հազար քառակուսի մետր ընդհանուր օգտակար տարածությամբ բնակելի շենքեր, 34 դպրոց, 42 մանկապարտեզ ու մանկամսուր, 1.080 մահճակալով հիվանդանոցներ, կինոյի, ակումբների, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շենքեր ու այլ բազմաթիվ օբյեկտներ:

Երևանում կատարվող բնակարանային-քաղաքաշինական առավել մեծ ծրագիր է նախատեսված ընթացիկ հնգամյակում: Այդ ծրագրի իրագործման համար ամբողջությամբ վերցրած, կատարվելու են մոտ 2 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ: Մնում է, որ քաղաքի սովետական օրգանները, տնտեսական ղեկավարները և շինարարական կազմակերպությունները բոլոր ուժերը մոբիլիզացնեն կապիտալ շինարարության տեմպերն արագացնելու, որակական ցուցանիշները բարելավելու, նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսները արդյունավետ օգտագործելու և սահմանված պլանային առաջադրանքները ժամանակին կատարելու համար:

Այժմ դա է հիմնականը, գլխավորը, որը միշտ պետք է պահել ուշադրու-

թյան կենտրոնում։ Բայց, ցավոք, փաստերը ցույց են տալիս, որ այդ ասպարեզում լուրջ թերություններ կան, որ քաղաքում կապիտալ շինարարության տեմպերը չեն համապատասխանում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին։ Բավական է նշել, որ 1971—1972 թվականներին Երևանում, ընդհանուր առմամբ վերցրած, հիմնական ֆոնդերի հանձնման պլանը կատարվել է միայն 77 տոկոսով։ Այլ կերպ ասած, տվյալ ժամանակամիջոցում պակաս են շահագործման հանձնված 100 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր, որոնցից 70 միլիոնը՝ անցած տարի։

Քաղաքի շինմոնտաժային կազմակերպությունները երկու տարում պլանի դիմաց պետությանը պակաս են տվել 105 հազար քառակուսի մետր բնակելի ընդհանուր տարածություն, այդ թվում Երքաղսովետի կապիտալ շինարարության վարչության գծով 70 հազար քառակուսի մետր, դպրոցական շենքեր 3 հազար աշակերտական տեղով, մանկապարտեզներ և մանկամսուրներ՝ 2.023 հազար տեղով, 230 մահճակալանոց հիվանդանոցային հիմնարկներ։ Այդ ժամանակամիջոցում արտադրական կարողությունների շահագործման հանձնելու առաջադրանքները չեն կատարվել Ս. Մ .Կիրովի անվան քիմիական կոմբինատում, Հայէլեկտրագործարանում, մեքենաշինության, էլեկտրատեխնիկական, շինանյութերի արդյունաբերության և այլ ճյուղերի մի շարք օբյեկտներում։

Քաղաքի շինմոնտաժային տրեստների աշխատանքի վերլուծությունը հիմք է տալիս ասելու, որ Երևանում կապիտալ շինարարության ետ մնալու հիմնական պատճառը աշխատանքի վատ կազմակերպումն է, կապալային, ենթակապալային կազմակերպությունների և պատվիրատուների միջև փոխգործողությունների բացակայությունը, ինչպես նաև կապիտալ շինարարության պլանավորման ժամանակ թույլ տրվող լուրջ սխալներն ու շեղումները։

Անհամաչափ աշխատանքի, շինարարական պրոցեսների տեխնոլոգիայի և հաջորդականության խախտման, պլանավորման մեջ տեղ գտած անհամաձայնեցվածության հետևանք է քաղաքի նոր բնակելի զանգվածների և թաղամասերի կառուցապատման անբարվոք վիճակը։ Նորքում, Շահումյանի շրջանում, Ջեյթունում, Էրեբունի թաղամասում, Հարավ-Արևմտյան շրջանում և այլուր քաղաքաշինության և հատակագծման հարցերը ժամանակին կոմպլեքս ձևով չլուծելով հանդերձ, սկսեցին բնակարանների կառուցումը՝ առանց տերիտորիայի հատակագծման, մերձատար ուղիների կառուցման, ինժեներային կոմունիկացիաների տեղադրման և շինարարության համար նորմալ պայմանների ստեղծման։

Քաղաքի շինարարական կոլեկտիվների զգալի մասում անհրաժեշտ բարձրության վրա չի գտնվում պետական և աշխատանքային կարգապահությունը. շինմոնտաժային կազմակերպությունների ղեկավարների, որոշ մինիստրությունների և գերատեսչությունների, պլանավորող օրգանների և պատվիրատուների մեղքով կազմակերպական-տեխնիկական անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկվում՝ տարվա հենց սկզբին ռիթմիկ աշխատանքն ապահովելու նպատակով։ Դրա պատճառով տարվա հետագա ամիսներին և, հատկապես վերջին, սկսվում են գրոհայնություն, հապճեպություն, որոնք ցանկալի արդյունք չեն տալիս։ Այսպես. 1972 թ. շահագործման հանձնված 385 հազար քառակուսի մետրը բնակտարածությունից ավելի քան 200 հազարի շինարարությունն ավարտվեց և շահագործման հանձնվեց դեկտեմբերի վերջին՝ շենքերի ծայրահեղ ցածր որակով։ Նորքի 6-րդ միկրոշրջանում 25 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր անցյալ տարի շահագործման



չհանձնվեցին ինժեներային կոմունիկացիաները և ներթաղամասային ճանապարհները պատրաստ չլինելու պատճառով։

Քաղաքի շինարարական և մոնտաժային 98 կազմակերպություններից 36-ն անցյալ տարի չկատարեցին իրենց պլանային առաջադրանքները։ ՀՍՍՀ արդշինմինիստրության քաղաքային 9 տրեստներից միայն 2-ը («Երարդշին»-ը և № 1 տրեստը) կատարեցին կապալային աշխատանքների տարեկան պլանները։ № 3 տրեստի (կառավարիչ՝ Մ. Բադալյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Վ. Շափախաթյան), Երևանի տնաշինական կոմբինատի (պետ՝ Ռ. Մելիքյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ռ. Ղազախեցյան), «Բարձրաբերձշին»-ի (կառավարիչ՝ Ռ. Կանեցյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ռ. Ամիրյան) մեղքով 1972 թ. շահագործման չհանձնվեցին 70 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր։ Արդշինմինիստրության, Երևանի քաղաքային տրեստները և մի շարք այլ կապալային կազմակերպություններ վիժեցրին 1972 թվականի դպրոցական շինարարության, մանկական նախադպրոցական հիմնարկների, առողջապահական շատ օբյեկտների, կոմունալ և կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող օբյեկտների շահագործման հանձնելու պլանները, նույնիսկ այնպիսիների, որոնք մտցված էին քաղաքի սոցպարտավորությունների մեջ։

Շինարարական նորմաների և կանոնների կոպիտ խախտումներ են թույլ տրվել № 2 «Բարձրաբերձշին» տրեստի, Երևանի տնաշինական կոմբինատի, ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրության շինտրեստի և այլ կազմակերպությունների օբյեկտներում։ Շինարարներն ու պատվիրատուները դեռևս չեն հասել այն բանին, որպեսզի օբյեկտների հանձնումը կատարվի ռիթմիկ ձևով, ամսական գրաֆիկների համաձայն, իսկ օբյեկտների տեխնիկական հսկողությունն ու ընդունումն անցկացվի ըստ կանոնի։ Դրա հետևանքով է, որ 1972 թվականին պետական հանձնաժողովների կողմից շահագործման ընդունված մի շարք շենքեր դեռևս չեն բնակեցվել՝ հանձնաժողովների բացահայտած թերությունները չվերացնելու պատճառով։

Քաղաքի կառույցների կուսակցական կազմակերպություններին և ղեկավարներին դեռևս չի հաջողվել իրենց աշխատանքը վերակառուցել շինարարության կազմակերպման և կառավարման մեթոդների կատարելագործման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջների ոգով։ Տրեստների կուսակցական կոմիտեները անհրաժեշտ չափով չեն վերահսկում ադմինիստրացիաների գործունեությունը, բավարար պահանջկոտություն չեն ցուցաբերում պետական և աշխատանքային կարգապահությունը խախտողների, խոտանի և նման կարգի այլ երևույթների նկատմամբ։

Արտադրության կազմակերպման տեխնիկական մակարդակը կառուցվող օբյեկտների մեծ մասում դեռևս ցածր է, շատ աշխատանքներ կատարվում են ձեռքով։ Արդյունավետ չեն օգտագործվում մեխանիզմներն ու տրանսպորտը, Երևանի կառույցներում աշխատանքի կազմակերպման և վարձատրման առաջավոր մեթոդներն անբավարար են ներդրվում։ Բավական է նշել, որ Նիկոլայ Զլոբինի մեթոդով (բրիգադային կապալային եղանակով) Երևանում դեռևս չի աշխատում ոչ մի բրիգադ։ Այս և այլ կարգի թերությունների պատճառով քաղաքային տրեստների և շինվարչությունների մեծամասնությունն անցյալ և նախանցյալ տարիներին չկատարեց աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը։ Միջին աշխատավարձի աճը այդ կազմակեր-

պությունններում 5-ից մինչև 10 տոկոսով գերազանցեց աշխատանքի արտադրողականության աճին։

Քաղաքի կառույցներում անբավարար են աշխատում նաև ենթակապալառու մի շարք կազմակերպություններ, որոնք չեն պլանավորում բնակելի տների, դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների և բնակարանային-քաղաքացիական շինարարության այլ օբյեկտների շահագործման հանձնելու ժամկետները։ Ենթակապալառու կազմակերպությունների մեծ մասը անցած տարի ուներ զգալիորեն իջեցված պլաններ, բայց չապահովեց դրանց կատարումը։ Դրանում մեղավոր են ոչ միայն «Հայէլեկտրամոնտաժ», «Հայսանտեխմոնտաժ», «Հայարդմոնտաժ», «Հայգազշին», Ջերմամեկուսացում մոնտաժային վարչության և ենթակապալառու այլ կազմակերպությունների, այլև գլխավոր կապալառու կազմակերպությունների ղեկավարները, որոնց մեղքով մասնագիտացված կազմակերպությունները ժամանակին չեն ստանում աշխատանքի նախապատրաստված տեղ։ Ավելին՝ լիմիտավորված մի շարք նյութեր, հատկապես՝ ցեմենտի, փայտանյութի, մետաղի և խողովակների, պարկետի անկանոն մատակարարումը շինարարական կազմակերպություններին ծանր վիճակի մեջ է դցում։

Էական թերություններ կան կապիտալ ներդրումների պլանավորման բնագավառում։ Միջոցների փոշիացման, բարեկարգման աշխատանքների համար անբավարար հատկացումների հետ միասին ընթացիկ հնգամյակի անցած երկու տարվա ընթացքում անհրաժեշտ միջոցառումներ չեն ձեռնարկված Երևանում բնակարանային շինարարության կազմակերպումը բարելավելու և լրիվ հավաքովի տնաշինության անցնելու համար։

Բավական է նշել, որ Երևանի տնաշինական կոմբինատի պատրաստած խոշորապանել շենքերի տեսակարար կշիռը, միջին հաշվով, կազմում է քաղաքում ամեն տարի շահագործման հանձնվող բնակելի տարածությունների միայն 15—16 տոկոսը։ Այն 1972 թվականին իջել է, հասնելով մինչև 11 տոկոսի։ Կոմբինատը, չունենալով անհրաժեշտ արտադրական տարածություններ, ժամանակակից տեխնոլոգիական սարքավորումներ և հարմարանքներ, թողարկում է անբավարար և ոչ որակյալ արտադրանք, որը զգալի չափով շեղվում է ստանդարտներից։ Իր տեխնիկական մակարդակով և արտադրության կազմակերպմամբ Երևանի տնաշինական կոմբինատը զգալի չափով ետ է մնում միութենական մյուս հանրապետությունների մայրաքաղաքների տնաշինական կոմբինատներից։ Նրա դերը Երևանի ընդհանուր պատկերի մեջ փաստորեն չի երևում և շատ պատվիրատուներ ճարտարապետական անարտահայտչության, բնակարանների ոչ հարմարավետ հատակագծման և տեխնիկապես թույլ բաղադրամասերի պատճառով հրաժարվում են շինարարության տիտուլային ցուցակների մեջ մտցնել կոմբինատի արտադրության հինգհարկանի բնակելի շենքեր։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1970 թվականի փետրվարի 14-ի որոշմամբ սահմանված են տնաշինական կոմբինատը արտադրության նոր տեխնոլոգիայի փոխադրելու ժամկետները, նրա հզորությունը հասցնելով տարեկան մինչև 150 հազար քառակուսի մետր օգտակար տարածության։ Սակայն արդշինմինիստրության, նրա «Հայտեխշինկազմ» տրեստի (կառավարիչ՝ Յու. Խալաթով) մեղքով խիստ ձգձգվեց կոմբինատի ընդլայնման և վերակառուցման նախագծի մշակումը։ Առանձին արտադրամասերի մանր վերակառուցումները, որոնք կատարվեցին անցած երեք տարում, բացառությամբ իր



հարկանի շենքերի տիպերի և արտադրության տեխնոլոգիայի որոշ բարելավման, ոչինչ չտվին։

Հանրապետության տնաշինության զարգացման հնգամյա պլանի կատարումն ապահովելու և Երևանի բնակարանային շինարարության զգալիորեն աճող ծրագրի իրականացման համար կենսական անհրաժեշտություն են Երևանի տնաշինական կոմբինատի շուտափույթ ընդլայնումն ու վերակառուցումը՝ նրա հզորությունը հասցնելով տարեկան 150 հազար քառակուսի մետր օգտակար տարածության։

Հանրապետության արդշինմինիստրությունը, քաղաքային կառույցների և շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունները շինարարության և, մասնավորապես, հավաքովի երկաթբետոնե կառուցվածքների արտադրության մեջ պետք է արագորեն ներդնեն գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները, ըստ ամենայնի բարձրացնեն կապիտալ շինարարության ինդուստրացման մակարդակը։

Իր հերթին հանրապետության պետշինը պետք է ուժեղացնի հսկողությունը և անհրաժեշտ օգնություն ցույց տա քաղաքի կառույցներին, շինարարական ինդուստրիայի ձեռնարկություններին, նախագծային կազմակերպություններին, տեխնիկական ղեկավարման, երկաթբետոնե արտադրատեսակների միասնականացման, նախագծերի որակի բարելավման և քաղաքաշինության մյուս էական հարցերում։ Անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել բնակելի շենքերի նոր ինդուստրիալ տիպերի մշակմանն ու ներդրմանը, շինարարության առաջավոր մեթոդների կենսագործմանը, մանավանդ որ վերջին երկու տարում լուրջ թերություններ են թույլ տրվել բարձրաբերձ շենքերի տիպերի ընտրության, դրանց համար արտադրական կարողությունների զարգացման գործում։

Երևանում, շինարարական տրեստների և արդշինմինիստրության վարչությունների կողքին, բնակարանային-քաղաքացիական շինարարությամբ զբաղվում են ավելի քան 15 այլ շինարարական և նորոգման-շինարարական կազմակերպություններ, զանազան գերատեսչություններ և մինիստրություններ։ Հանրահայտ է, որ մինիստրություններին կից շարժական մեքենայացված շարասյուները ստեղծվել են գյուղական շրջաններում կապալային աշխատանքներ կատարելու համար։ Բայց ահա, չգիտես թե ինչ նկատառումներից ելնելով է, որ Երևանում արդեն 5 տարի է, ինչ կազմակերպել են ՀՍՍՀ գյուղշին և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունների մեքենայացված շարժական շարասյուներ, որոնց վրա է դրված քաղաքի բնակարանային շինարարությունը։ Դրանք անցած երկու տարվա ընթացքում ձախողել են ավելի քան 17 հազար քառակուսի մետր քաղաքային բնակտարածության հանձնումը։

Ներկայումս Երևանում բնակարանային շինարարությամբ զբաղվում են ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրության, «Հայէներգոշին», «Հայջրշին» տրեստները, Արփա—Սևանշին վարչությունը, ՀՍՍՀ գյուղշինմինիստրության, ՀՍՍՀ սննդի արդյունաբերության նորոգման-շինարարական տրեստները, գործկոմների և այլ գերատեսչությունների նորոգման-շինարարական կազմակերպությունները։ Այս կազմակերպություններից յուրաքանչյուրը, իր համար ոչ պրոֆիլային աշխատանքներ կատարելու հետ միասին, ստեղծում է իր բազաները, բետոնի հանգույցները, այլ նյութատեխնիկական ռեսուրսներ՝ Երևանում բնակարաններ կառուցելու համար։ Բայց դրանցից ոչ մեկն էլ իր առաջա-

դրանքները չի կատարում։ Օրինակ, ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրության տրեստը Երևանում ունի չորս շինվարչություն, որոնք անցյալ տարի պլանային 19 հազար քառակուսի մետրի փոխարեն հանձնել են միայն 10 հազար քառակուսի մետր։ Քաղաքի բազմաթիվ նորոգման-շինարարական կազմակերպությունների ծանրաբեռնվածության ավելի քան 50 տոկոսը պլանավորված է կապիտալ շինարարությամբ, որը չի համապատասխանում նրանց գործունեության բնույթին։

Քաղաքի բազմաթիվ շինարարական կազմակերպությունների (խոշոր և մանր) առկայությունը դժվարեցնում է օպերատիվ ղեկավարման ու ճկուն մատակարարման գործը։ Վերցնենք թեկուզ քաղաքի կառույցները կապակցող նյութերով մատակարարելու հարցը։ Հանրապետության արդշինմինիստրության Երևանի տրեստներն ունեն 29 բետոնախառնիչ հանգույց։ Դրանցից մի քիչ պակաս հանգույցներ ունեն քաղաքի մյուս շինարարական կազմակերպությունները։ Այդ բանի հետևանքով սխտեմ է դարձել բետոնի հանդիպական փոխադրումները, որն անտեղի ծախսերի տեղիք է տալիս։ Մեր կարծիքով արդեն հասունացել է քաղաքում խոշոր բետոնախառնիչ գործարանների ստեղծման հարցի լուծումը. Այն պետք է կառուցվի տերիտորիալ սկզբունքով, դրա տնտեսական արդյունավետությունը մեծ կլինի։

Քաղաքում ավելի քան 120 շինմոնտաժային և նորոգման-շինարարական կազմակերպությունների առկայությունը (որոնց մեծ մասը փոքրածավալ է) դժվարացնում է շինարարական արտադրության մասնագիտացումը, բանվորական ուժի հոսունության կրճատումը։ Այդ ամենը ծայրահեղ բացասաբար է անդրադառնում շինարարության տեխնիկական առաջընթացի վրա, հանգեցնում կապիտալ ներդրումների անարդյունավետ օգտագործմանը և իջեցնում աշխատանքների որակը։

Ընթացիկ տարում քաղաքի շինարարների առջև դրված են մեծ և պատասխանատու խնդիրներ։ Նրանք պետք է իրականացնեն արդյունաբերական, բնակարանային-քաղաքացիական և կոմունալ-շինարարության լայն ծրագիր՝ ավելի քան 300 միլիոն ռուբլու աշխատանքների ընդհանուր ծավալով։ Շինարարներն ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ, որոնք վերջերս քննվեցին և ընդունվեցին քաղաքի կուսակցական ակտիվի ժողովում։

Կառույցների մի շարք առաջավոր կոլեկտիվներ նոր տարվա առաջին իսկ օրերից ներգրավվեցին պլանները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ և իրենց հարվածային աշխատանքով, կոնկրետ գործերով ձգտում են կատարել հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները։

Սակայն, անցյալ տարվա նման, ընդհանուր առմամբ, քաղաքի բոլոր շինմոնտաժային կազմակերպությունները տարին սկսեցին անհաջող։ Դրանցից շատերը, այդ թվում № 1, «Երքիմշին» № 14 տրեստները և Երևանի տնաշինական կոմբինատը չկատարեցին հունվար, փետրվար ամիսների պլանները։ Քաղաքում շինմոնտաժային աշխատանքների երկու ամսվա պլանը, ամբողջությամբ վերցրած, կատարված է 97 տոկոսով։ Իրենց պլանային առաջադրանքները չկատարեցին քաղաքի 30 շինվարչություններ։

Անցյալ տարվա շենքերի հանձնման պլանից 1973 թվականի պլան փոխանցված ավելի քան 100 հազար քառակուսի մետր օգտակար տարածությամբ տներն ունեին այնքան բարձր տեխնիկական պատրաստություն, որը ոչ մի կասկած չէր հարուցում, թե այս տարվա առաջին 2—3 ամիսների ընթացքում



դրանք շահագործման կհանձնվեն։ Ելնելով դրանից, արդշինմինիստրությունը հաստատեց առաջին եռամսյակի բնակելի շենքերի և այլ օբյեկտների շահագործման հանձնելու ամսական գրաֆիկ, ըստ որի միայն № № 1, 2, 3, «Բարձրաբերձշին» տրեստները և Երևանի տնաշինական կոմբինատը հունվար—փետրվար ամիսներին պետք է ապահովեին 50 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ 17 բնակելի շենքերի հանձնումը։ Նույն ժամանակաշրջանում 23 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր պետք է շահագործման հանձնեին ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրության և ««Հայէներգոշին» տրեստները, մսեղենի-կաթնեղենի մինիստրության մեքենայացված շարժական շարասյունը, Արփա—Սևան շինվարչությունը և այլ կազմակերպություններ։ Սակայն նշված տրեստների և վարչությունների ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները վճռական միջոցներ չձեռնարկեցին նոր տարվա առաջին իսկ օրերից բնակելի շենքերի, դպրոցական և նախադպրոցական հիմնարկների ռիթմիկ շահագործման հանձնելն ապահովելու համար։ Տարվա սկզբից, ամբողջությամբ վերցրած 2 ամսում քաղաքում շահագործման են հանձնվել միայն 2 շենք, 5 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ, գրաֆիկով նշված 65 հազար քմ-ի դիմաց։

Մինչև օրս էլ վերջ չի տրված այն արատավոր պրակտիկային, երբ խախտելով պետական կարգապահությունը, անհարկի փոփոխություններ են մտցվում կառուցվող օբյեկտները շահագործման հանձնելու՝ նախօրոք հաստատված պլանի մեջ։ Պլանը եռամսյակից եռամսյակ և մեծ մասամբ տարվա վերջը փոխադրելը ոչ միայն հանգեցնում է գրոհայնության, ազդում շինարարության որակի վրա, այլև անպատասխանատվություն է առաջացնում կառույցների ղեկավարների և բոլոր նրանց մոտ, ովքեր պարտավոր են, որպես օրենք, պլանը ժամանակին կատարել։ Սա հավասարապես վերաբերում է նաև պատվիրատուներին և շինարարության պլանները կազմողներին։

Այս մասին մեկ անգամ չէ, որ ասվել է, թերությունները քննադատվել, բայց, դժբախտաբար, շինարարական պատվիրատու որոշ մինիստրություններ, գերատեսչություններ և պլանավորող օրգաններ դրանցից դեռևս համապատասխան եզրակացություններ չեն հանել։ Այլ կերպ ինչո՞վ բացատրել, որ քաղաքի շինարարական կազմակերպությունների ընթացիկ տարվա պլանները կազմելիս, նորից թույլ տրվեցին սխալներ ու շեղումներ։ Ներելի չէ, որ մինչև մարտի մեկը քաղաքային տրեստներն ու վարչությունները չունեին գործարկվող օբյեկտների, արտադրական կարողությունների հանձնման եռամսյակային, վերջնականապես ճշգրտված պլաններ։

Շինարարության կառուցային տիտղոսացուցակները պատվիրատուների մեծ մասի կողմից չեն համաձայնեցված և չեն ներկայացված բանկ։ Միայն նախագծային-տեխնիկական փաստաթղթերի և շինարարության համար չյուրացված տեղամասերի բացակայության պատճառով ՀՍՍՀ արդշինմինիստրության քաղաքային տրեստները չեն ապահովվել, ամբողջությամբ վերցրած, 13 միլիոն ռուբլու աշխատանքային պլանով։ Մի շարք տրեստների պլանների մեջ են մտցվել օբյեկտներ՝ առանց շինարարության տևողության նորմաների հաշվառման, նախագծերի, սարքավորումների և օբյեկտների գործարկումն ապահովող այլ անհրաժեշտ պարագաների առկայության։ Որոշ տրեստներ պլանավորել են բնակելի այնպիսի շենքերի (ինժեներ Բադալյանի նախագծած և ԻԻՍ—04 սերիայի) կառուցում, որոնց կոնստրուկցիաները դեռևս չեն

իրացվել, իսկ դրանց մատակարարումը հաճախ վիժեցվում է արդշինմինիստրության և նրա արդյունաբերական շինանյութերի վարչության կողմից։

Առաջվա պես սխալ է պլանավորվում բնակելի շենքերի նախապատրաստական (զադել) աշխատանքը։ Քաղաքի բնակարանային շինարարության հիմնական պատվիրատուի՝ Երքաղսովետի կապիտալ շինարարության վարչության գծով 1974 թվական փոխանցված (նախապատրաստական) շենքերի ընդհանուր տարածությունը կազմում է 280 հազար քառակուսի մետր, որի 45 տոկոսը (123 հազար քառակուսի մետր) իրականացվում է «Բարձրաբերձշին» տրեստի, իսկ 15 տոկոսը (41 հազար քառակուսի մետր) «Երևանշին» գլխավոր վարչությունը։ Միևնույն ժամանակ մինիստրության մյուս 6 քաղաքային տրեստների համար պլանավորված է կապիտալ շինարարության վարչության նախապատրաստական աշխատանքների մնացած 40 տոկոսը (112 հազար քառակուսի մետր), ընդ որում, նշված թվից միայն 11 շենքն է քարե, այսինքն, յուրաքանչյուր տրեստի միջին հաշվով ընկնում է 2-ից պակաս շենք։ Հարց է առաջանում, ո՞ւմ մեղքով է ստեղծվել այդպիսի անհավասարաչափ պլանավորումը՝ առանց առկա բազայի, կադրերի և տրեստների պրոֆիլի հաշվառման։ Եվ, վերջապես, ինչո՞ւ 2—3 տարի առաջ սկսված մեծ քանակությամբ բարձրահարկ պատրաստի կմախքներով շենքերը չեն մտցվել 1973 թվականի հանձնման պլանի մեջ, երբ ավելի քան 3,5 հազար ընտանիքներ 2—3 տարի է, ինչ ծանր պայմաններում սպասում են բնակարաններ ստանալ այդ շենքերում և, մասնավորապես, այն շենքերում, որոնք կառուցվում են հանրապետական մարզադաշտի թաղամասում։

Հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների, կառույցների ղեկավարների և պատվիրատուների ներկայիս կարևոր խնդիրն է՝ անհապաղ վերացնել թույլ տրված սխալներն ու թերությունները և կտրուկ միջոցներ ձեռնարկել հնգամյակի վճռական տարվա պլանների կատարումը (բոլոր բնակելի տների, դպրոցական շենքերի, մանկապարտեզների, մյուս գործարկվող օբյեկտների և կարողությունների շահագործման հանձնումը) ժողովրդատնտեսական պլանով հաստատված ժամկետում ապահովելու համար։

Այն բանից, թե ինչպես պետք է արագորեն վերացվեն շինարարական արտադրության կազմակերպման և կառավարման մեջ տեղ գտած թերությունները, թե ինչպիսի բարձր պատասխանատվությամբ պետք է աշխատեն գլխավոր կապալային, ենթակապալային կազմակերպությունները, նախագծողները և պատվիրատուները, մեծապես կախված կլինի հնգամյակի վճռական տարվա կապիտալ շինարարության պլանների կատարման ճակատագիրը։ Կուսակցության շրջկոմների, կառույցների կուսկազմակերպությունների խնդիրն է՝ ուժեղացնել կազմակերպական և մասսայական-քաղաքական աշխատանքը, ամենուրեք արմատավորել առաջավոր կոլեկտիվների փորձը, ավելի լայնորեն տարածել սոցիալիստական մրցությունը՝ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

# ՊԵՏՊԼԱՆԻ ՄԻՋԱՄՏՈՒԹՅՈՒՆՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ Է

Կ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Երքաղսովետի գործկոմի տեղական
արդյունաբերության վարչության պետ

Ժողովրդի հարաճուն **պահանջմունքների բավարարման գործում** զգալի դեր է խաղում տեղական արդյունաբերությունը։ Այն կոչված է հիմնականում տեղական հումքի, ինչպես նաև խոշոր արդյունաբերության թափոնների օգտագործման բազայի վրա, թողարկելու արտադրանքի այնպիսի տեսակներ, որոնց պահանջը մեծ է։ Տեղական արդյունաբերության ձեռնարկությունների պատվերները հիմնականում կատարվում են տնտեսական պայմանագրով, ելնելով այս կամ այն արտադրատեսակի նկատմամբ ընթացիկ պահանջարկից։ Ձեռնարկությունների փոքր չափերը, հիմնական արտադրական սարքավորումների և բանվորական կադրերի համեմատաբար ոչ նեղ մասնագիտացումը հնարավորություն են ընձեռում արտադրությունը կարճ ժամանակամիջոցում և փոքր կապիտալ ներդրումներով հարմարեցնելու ժողովրդական տնտեսության և բնակչության ընթացիկ պահանջմունքներին։

Հաշվի առնելով պահանջարկը, տեղական արդյունաբերության ձեռնարկությունները նույնատեսակ արտադրանքը թողարկում են փոքր խմբերով։ Այդ պատճառով, խոշոր արդյունաբերության համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունն այստեղ համեմատաբար ցածր է, իսկ արտադրանքի ինքնարժեքը՝ բարձր։ Ահա թե ինչու տեղական արդյունաբերության համակենտրոնացման և մասնագիտացման առավել նպատակահարմար ուղին միավորումների և կոմբինատների ստեղծումն է, որը կազմավորված և տեղաբաշխված մանր ձեռնարկություններին հնարավորություն կընձեռի ընդհուպ մոտենալու ժամանակակից խոշոր մեքենայական արտադրության պահանջների իրագործմանը։

Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության ձեռնարկությունների տերիտորիալ արտադրական միավորում ստեղծելու նախաձեռնությունը պատկանում է Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործադիր կոմիտեին, որն իրեն ենթակա ձեռնարկությունների զգալի մասը 1971 թ. մարտից միավորեց վարչության կազմում։

Առաջին փուլում միավորվեցին տասը ձեռնարկություններ, որոնց զգալի մասն անցյալում կրկնօրինակում էր հանրապետության խոշոր արդյունաբերության արտադրանքի անվանացանկը։ Այսպես, երկաթբետոնե անճնշում խողովակների և «Լույս» գործարաններում թողարկվող 103 արտադրատեսակներից 64-ը նույնն էին (ըստ կիրառման նպատակի, կոնստրուկցիայի և մակնիշի), ինչ շինանյութերի արդյունաբերության ենթակայության երկաթբետոնե

կոնստրուկցիաների գործարաններին և «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման մասնաճյուղերին։ Բացի այդ, վերոհիշյալ արտադրատեսակների ճնշող մասը պատրաստվում էր ֆոնդավորվող հումքից և նյութերից։ Ստացվում էր այնպես, որ մանր, ձեռքի աշխատանքի վրա հիմնված, հաճախ տնայնագործական միջոցներով աշխատող տեղական արդյունաբերության, ինչպես և մասնագիտացված խոշոր ձեռնարկությունները նույն հումքից թողարկում են համանման արտադրանք։ Դա տնտեսապես արդյունավետ չէր, քանի որ տեղական արդյունաբերության ձեռնարկություններում նույնատիպ արտադրանքի աշխատատարությունը 3—4, իսկ ինքնարժեքը՝ 1,5 անգամ ավելի բարձր էր, քան Երևանի № 3 երկաթբետոնե կոնստրուկցիաների և լուսատեխնիկական գործարաններում։

Արտադրական միավորում կազմակերպելուց հետո հարց հարուցվեց հնարավորության սահմաններում ազատվելու կենտրոնացված ֆոնդավորվող հումքատեսակներից և օգտագործելու տեղական հումքն ու խոշոր արդյունաբերության թափոնները։ Ուսումնասիրելով հանրապետության արդյունաբերության համապատասխան ճյուղերի արտադրական ծրագրի անվանացանկը և բնակչության պահանջարկը, սկզբունքորեն խնդիր դրվեց հնարավորին չափ խուսափել խոշոր արդյունաբերության արտադրանքները կրկնօրինակելուց։

Ներկայումս Երևանի երկաթբետոնե անճնշում խողովակների գործարանի արտադրանքը թողարկվում է տեղական հումքից, վերացվել են նյութատեխնիկական մատակարարման և կոոպերացման արտաշրջանային կապերը։ Յուրացվում է Երևանի ծխախոտի ֆաբրիկայի ացետիլենային մնացքի թափոններից տեխնիկական անգործվածք կտորեղենի պատրաստման տեխնոլոգիան։ Դա հնարավորություն կընձեռի, մեր հաշվարկներով, տարեկան տնտեսելու մոտ 200 հազար ռուբլի, ընդ որում, կապիտալ ներդրումների ետգնման ժամկետը կազմում է ընդամենը 10 ամիս։ Այլ կերպ՝ բացարձակ արդյունավետության գործակիցը ճյուղի համար սահմանված նորմատիվը գերազանցում է 1,8 անգամ։

Արդեն յուրացվել է Կիրովի անվան գործարանի արտադրական թափոններից և, հիմնականում, շլամ-պաստայից պատի բլոկների, միջնորմային սալիկների և այլ շինանյութերի արտադրությունը, որն ընդունվել է շինարարական կազմակերպությունների և բնակչության կողմից։

Վարչության ձեռնարկություններում վերամշակվում են հանրապետության և Միության մի շարք կաշու-մորթու, գալանտերեայի ֆաբրիկաների թափոնները՝ գլխարկների, օձիքների և հագուստեղենի հարդարման զանազան դետալների պատրաստման համար։ Աշխատանքներ են տարվում Երևանի պոլիվինիլացետատե գործարանի պոլիվինիլբուտիրալի և այլ թափոնների բազայի վրա կազմակերպել կենցաղային մի շարք իրերի արտադրությունը։

Մեր կարծիքով, միայն տեղական հումքատեսակների և թափոնների օգտագործմամբ տեղական արդյունաբերության զարգացման խնդիրները չեն կարող լուծվել։ Երևանի տեղական արդյունաբերության վարչության ձեռնարկություններից շատերը կոչված են թողարկելու ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող արտադրատեսակներ, որոնք օգտագործվում են ինչպես քաղաքի ունիկալ շենքերը հարդարելու (ալյումինից շրջանակներ և պատշգամբների կոմպլեկտավորող ցանցեր, ձևավոր ձուլվածքներ և այլն), այնպես և հանրապետությունից դուրս գտնվող շինարարական օբյեկտներն առաքելու համար (ջեռուցիչներ և այլն)։ Չնայած անընդհատ ավելանում է այդ



արտադրատեսակների արտադրության ծավալը, սակայն դրանց նկատմամբ պահանջարկը մեծ է և լրիվ չի բավարարվում։ Ուստի, նպատակահարմար է մոտ ապագայում վարչության կազմում ստեղծել մասսայական արտադրանք թողարկող կոնվեկտորների մասնագիտացված գործարան՝ հագեցված ժամանակակից բարձր արտադրողական մեքենաներով և սարքավորումներով։ Մասնագիտացման պրոֆիլը հնարավորություն կընձեռի նույն գործարանում կազմակերպելու նաև սանտեխնիկական մի շարք իրերի արտադրությունը։ Երևանի հատուկ մետաղյա կոնստրուկցիաների գործարանի արտադրանքը, հատկապես ալյումինի փեղկերը, լայն սպառում են գտել։ Բավական է նշել, որ ճարտարապետների կարծիքով, դրանք անփոխարինելի հարդարանք են բարձրահարկ շենքերի (օրինակ, Երևանի Անի հյուրանոցի) համար։ Մետաղյա փեղկերի արտադրության շահութաբերությունը խիստ բարձր է (ինքնարժեքի նկատմամբ՝ 25—30 տոկոս), իսկ պահանջարկը պրակտիկորեն՝ անսահմանափակ։ Նույնը կարելի է ասել նաև փականների և բռնակների մասին։ Սակայն հանրապետության պետպլանը մինչև հիմա չի լուծել հումքի կենտրոնացված ֆոնդավորումը և ձեռնարկությունն ստիպված է աշխատել պատվիրատուների նյութերով։ Նյութատեխնիկական մատակարարման հաճախակի ընդհատումները և խախտումները հնարավորություն չեն տալիս ռիթմիկ կազմակերպելու արտադրապրոցեսը, առաջանում են սարքավորումների և բանվորական ուժի մեծ պարապուրդներ, որի հետևանքով իջնում է աշխատանքի արտադրողականությունը, բարձրանում արտադրանքի ինքնարժեքը։

Հումքի և կիսաֆաբրիկատների կենտրոնացված ֆոնդավորումն ու կանոնավոր մատակարարումը հնարավորություն կընձեռեն առկա արտադրական կարողություններով մետաղյա փեղկերի արտադրությունն ավելացնելու 2,2 անգամ, իսկ աշխատանքի արտադրողականությունը (հիմնականում պարապուրդների կրճատման հաշվին) կաճի մոտ 60 տոկոսով։ Մոտավոր հաշվարկներով միավոր արտադրանքի ինքնարժեքը կիջնի 25—30 տոկոսով։ Պետք է նկատի ունենալ, որ պատվիրատուի կողմից առաքվող ալյումինը հաճախ ձևավորված է լինում այլ նպատակներով և դրանց տիպաչափերը չեն համապատասխանում թողարկվող արտադրանքին։ Այդ պատճառով ձեռնարկությունը լրացուցիչ զգալի ծախսեր է կատարում ձուլման և սառը մշակման օպերացիաներում, որը նշանակալիորեն բարձրացնում է արտադրանքի ինքնարժեքը։

Մասսայական արտադրության անցնելը հնարավորություն կընձեռի մի կողմից մեքենայացնելու հիմնական արտադրապրոցեսները, ներդնելու հոսքային գծեր, մյուս կողմից՝ նյութատեխնիկական մատակարարման հաճախ պատահական բնույթ կրող կապերը փոխարինելու Երևանի ալյումինի գործարանի հետ կոոպերացման կայուն կապերով։

Վերոհիշյալ սկզբունքով մետաղյա կոնստրուկցիաների արտադրության կազմակերպման արմատական վերակառուցումը տնտեսապես հիմնավորված է։ Այսպես, ալյումինի փեղկերը, փայտյա շրջանակների համեմատությամբ, ավելի դիմացկուն են (10—12 անգամ), երկարակյաց, ընթացիկ խնամքի (մաքրում, ներկում) անհամեմատ քիչ ծախսեր են պահանջում և գեղեցիկ են։ Ընդ որում, մասսայական արտադրության դեպքում ալյումինի փեղկերի ինքնարժեքը, համապատասխանաբար նաև մեծածախ գինը հնարավոր է իջեցնել 2—2,5 անգամ։

Երևանի տեղական արդյունաբերության ձեռնարկությունների մեծ մասը 2—3 տարվա պատմություն ունի։ Չնայած դրան, արդեն զգալի աշխատանքներ

են կատարվել արտադրության տեխնիկական բազան համալրելու և դրա հիման վրա ձեռնարկությունների արտադրատնտեսական գործունեության ցուցանիշները բարելավելու համար։ Անցած երկու տարվա ընթացքում աշխատանքի արտադրողականությունը տեղական արդյունաբերության ձեռնարկություններում աճել է 27 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը (մեկ ռուբլի ապրանքային արտադրանքին ընկնող ծախսերը) իջել է 6,1 կոպեկով։ Այնուամենայնիվ, բոլոր ձեռնարկություններում առկա են խոշոր ներարտադրական ռեզերվներ, որոնց բացահայտումը և լրիվ օգտագործումը կնպաստի արտադրության արդյունավետության հետագա բարձրացմանը։

Առավել աշխատատար և ծանր պրոցեսների մեքենայացումը համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հնարավորություն է տվել էապես բարելավելու աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի հարաբերակցությունը։ Եթե նախկինում տեխնիկապես չհիմնավորված նորմաների պատճառով, որպես կանոն, միջին աշխատավարձն ավելի արագ էր աճում, քան աշխատանքի արտադրողականությունը, ապա վարչության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ 1971 թ. ապահովվել է վերջինիս առաջանցիկ աճը, որը երևում է աղյուսակում բերված տվյալներից։

Աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի փոխհարաբերությունը Երքաղսովետի տեղական արդյունաբերության վարչության ձեռնարկություններում 1970—1971 թթ.

| Ձեռնարկությունների անվանումը | 1971 թ. 1970 թ. նկատմամբ | |
|---|---|---|
| | Աշխատանքի արտադրողականությունը | միջին աշխատավարձը |
| Հատուկ մետաղյա կոնստրուկցիաների գործարան | 127 | 118 |
| Մեխանիկական | 156 | 103 |
| «Լույս» | 123 | 106 |
| Տնային իրերի արտադրության | 120 | 103 |
| էլեկտրա-կենցաղային իրերի արտադրության | 115 | 107 |
| Երկաթբետոնե անճնշում խողովակների | 92 | 105 |

Այնպիսի աշխատատար պրոցեսների մեքենայացումը, ինչպիսիք են՝ դռների, լուսամուտների և կահույքի փականների ու բռնակների մեխանիկական մշակումը, կոշկեղենի և տնտեսական ցանցերի, ոչ ստանդարտ սարքավորումների արտադրությունը, հնարավորություն կընձեռեն մի շարք ձեռնարկություններում ապահովելու աշխատանքի արտադրողականության առավել աճը։

Արտադրության մեքենայացման և մասնագիտացման մակարդակը որոշ ձեռնարկություններում այնքան ցածր է, որ արտադրանքի հիմնական տեսակների մի մասի արտադրությունը դառնում է վնասաբեր։ Այսպես, 1971 թ. տնային իրերի արտադրության գործարանում սրճաղացների ինքնարժեքը կազմել է 2 ռ. 64 կոպեկ, իսկ էլեկտրա-կենցաղային իրերի գործարանում՝ 3 ռ. 64 կոպեկ։ Գների կոմիտեն մեծածախ գները սահմանել է, բնականաբար, հիմք ընդունելով ինքնարժեքի միջին մակարդակը երկու գործարաններում։ Այս պայմաններում էլեկտրա-կենցաղային իրերի գործարանում սրճաղացների ինքնարժեքն ավելի բարձր է, քան մեծածախ գինը, և ձեռնարկության արտադրական ծրագրի համար ոչ ցանկալի։ Նշված արտադրանքի նկատմամբ բնակչության պահանջարկը բավական մեծ է և ներկա վիճակով արտադրանքն անվանացանկից հանել չի կարելի։ Հետևաբար ելքն այն է, որ արտադրության ծավալն ընդլայնվի նաև էլեկտրակենցաղային իրերի գործարանում, բայց ոչ թե բանվորների թվի ավելացման, այլ մեքենայացման և արտադրության ու աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների ներդրման միջոցով, որը կնպաստի ինքնարժեքի իջեցմանը։



Դռների և լուսամուտների փականների ու բռնակների արտադրությունը, որը 1971 թ. կազմակերպվել է հատուկ մետաղյա կոնստրուկցիաների գործարանում, լայն պահանջարկ ունի ինչպես քաղաքի բնակչության շրջանում, այնպես էլ շինարարական կազմակերպություններում։ Սակայն արտադրությունը հիմնականում կատարվում է ձեռքով, որը բարձրացնում է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։ Այստեղ արտադրանքի ինքնարժեքը 2 անգամ բարձր է մեծածախ գնից, այսինքն՝ վնասաբեր է և գործարանին չի խրախուսում տվյալ արտադրատեսակի արտադրության համար։ Նկատի ունենալով այդ արտադրատեսակի մեծ պահանջարկը և արտադրության ընդլայնման հեռանկարը, խիստ անհրաժեշտ է կարճ ժամանակամիջոցում բարձրացնել ձեռնարկության տեխնիկական զինվածության մակարդակը, նոր մեքենաների ու սարքավորումների գործադրմամբ կրճատել ձեռքի աշխատանքը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Միայն այս ճանապարհով է հնարավոր ընդլայնել արտադրությունը և ապահովել եղած պահանջարկը։

1972 թ. «Լույս» գործարանում յուրացվել է «Ակորդ» տիպի ջեռուցիչների և խոհանոցային երկտեղանոց լվացարանների արտադրությունը։ «Ակորդ» տիպի ջեռուցիչներն արդեն մեծ համբավ ունեն ինչպես մեր, այնպես էլ եղբայրական հանրապետությունների շինարարական կազմակերպությունների շրջանում։ Խոհանոցային երկտեղանոց լվացարանների արտադրությունը Հայաստանում նորույթ է և մեծ պահանջարկ կա, բայց այստեղ էլ դժվար է լուծվում հումքի և նյութերի հարցը։

Վերջերս մեխանիկական գործարանի կոլեկտիվը ձեռնամուխ է եղել ջրատաքացուցիչների արտադրության յուրացմանը, որը հնարավորություն կընձեռի յուրաքանչյուր բնակարանում, էլեկտրաէներգիայի միջոցով, ունենալու ցանկացած տաքության ջուր։ Պետք է նշել, որ նոր ջրատաքացուցիչը մեծ մասամբ փոխարինում է բնական գազին։

Ընթացիկ տարում աշխատանքներ է տարվում պոլիվինիլուրիտանից կոշկեղենի ներբանների, ինչպես նաև լայն սպառման այլ առարկաների արտադրության յուրացման նպատակով։

Արտադրության մասնագիտացման բնագավառում տեղական արդյունաբերության առանձնահատկությունն այն է, որ այստեղ պատվերները հիմնականում ձևավորվում են կոնկրետ, երբեմն սահմանափակ և փոփոխվող պահանջարկի հիման վրա։ Բնակչության պահանջմունքները բավարարելու համար արտադրանքի անվանացանկը յուրաքանչյուր ձեռնարկությունում պետք է շատ լայն լինի, որովհետև դա խոչընդոտում է առարկայական և դետալային մասնագիտացման խորացմանը։ Հետևապես ձեռնարկությունները պետք է մասնագիտացվեն լայն, բայց տեխնոլոգիապես համասեռ արտադրանքի թողարկման մեջ։ Հենց այս նշանաբանով էլ նորաստեղծ վարչությունն իրականացրել է ասորտիմենտի վերաբաշխումը ձեռնարկությունների անվանացանկի միջև այն հաշվով, որ հնարավորին չափ դրանց արտադրանքը տեխնոլոգիապես համասեռ լինի։

Սակայն արտադրանքի նոր տեսակների յուրացման պրոցեսում երբեմն առաջանում են դժվարություններ: Բանն այն է, որ առանձին ձեռնարկություններ տեխնիկական համապատասխան բազա և շրջանառու միջոցներ չունենալով, անհրաժեշտ շահույթ չեն ապահովում և շահագրգռված չեն յուրացնելու ու թողարկելու առաջին անհրաժեշտության մեծ պահանջարկ ունեցող արտադրանքի տեսակները: Մեզ թվում է, որ հանրապետության պետպլանը և համապատասխան գերատեսչությունները պետք է հետաքրքրվեն նման ձեռնարկությունների վիճակով և օգնեն դրանց՝ արտադրությունը շահութաբեր դարձնելու: Բացի այդ, եթե նոր արտադրանքն անվանացանկում բավականաչափ մեծ տեսակարար կշիռ ունի, ապա վարչությանը պետք է իրավունք վերապահվի ձեռնարկությանը ժամանակավորապես ֆինանսավորելու իր ռեզերվներից: Այդպիսի ռեզերվներ ստեղծվում են արտադրական միավորումներում և մինիստրություններում, մինչդեռ որքան էլ տարօրինակ թվա, Երևանի քաղսովետի տեղական արդյունաբերության վարչությունն առայժմ իրավասու չէ ունենալու նման ռեզերվներ:

Հասունացել է նաև վարչությունում շրջանառու միջոցների և աշխատավարձի ֆոնդի ռեզերվի ստեղծման հարցը, այն հաշվով, որ տարվա ընթացքում հնարավոր լինի մանևրելու և այս կամ այն ձեռնարկությունում արագ կազմակերպելու մեծ պահանջարկ վայելող նոր արտադրատեսակների թողարկումը:

Վարչության ձեռնարկություններում շահույթի և շահութաբերության պլանները սիստեմատիկաբար կատարվում և գերակատարվում են: Օրինակ, 1971 թ. ապրանքային արտադրանքի մեկ ռուբլուն ընկնող ծախսերը 89,18 կոպեկից իջել է 80,64-ի, այսինքն՝ յուրաքանչյուր ռուբլու արտադրանքի մեջ շահույթի բաժինն աճել է 8,54 կոպեկով: Դրա շնորհիվ ձեռնարկությունները 410 հազար ռուբլու լրացուցիչ շահույթ են ստացել: Հասկանալի է, այդ բարձր ցուցանիշն ամբողջապես ձեռնարկությունների լավ աշխատանքի արդյունք չէ, քանի որ լրացուցիչ շահույթների զգալի մասը ստացվել է բարձր շահութաբերություն ունեցող արտադրանքի արտապլանային թողարկումից: Այնուամենայնիվ, հիմնական գործոններն այստեղ աշխատանքի արտադրողականության աճն է, ինչպես նաև հումքի, նյութերի, էներգիայի և վարչակառավարչական ծախսերի տնտեսումը: Մոտավոր հաշվարկներով, վարչության ձեռնարկություններում տարեկան պայմանական տնտեսումը կազմել է մոտ 300 հազար ռուբլի: Դա, իր հերթին, նյութական խթանման գոյացման և ավելացման գործոնն է: Այսպես, 1971 թ. վարչության ձեռնարկություններում նյութական խրախուսման ֆոնդերը կազմել են 104,5 հազար ռուբլի, սոցիալ-կուլտուրական միջոցառումներինը և բնակարանային շինարարությանը՝ 48,7, արտադրության ընդլայնմանը՝ 16,2 հազար ռուբլի:

Քանի որ վարչությանը հանձնարարված է ըստ ձեռնարկությունների բաշխել արտադրանքի անվանացանկը, ապա, մեր կարծիքով, նրա իրավասության տակ պետք է դրվի նաև ֆոնդերի կենտրոնացված բաշխումը: Դա հնարավորություն կընձեռի առավել նպատակասլաց տնօրինելու և օգտագործելու գոյացող նյութական խթանման ֆոնդերը, հասնելու առավել արդյունավետության ո՛չ միայն ըստ առանձին ձեռնարկությունների, այլև ամբողջ համակարգի մասշտաբով:

# ՊԱՀԱՆՋԱՐԿԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆԸ

ՇՈՒՇԻԿ ԴԱՆԻԵԼՅԱՆ

ՍՄԿԿ XXIV համագումարը մեկ անգամ ևս նշեց, որ հանրային արտադրության գերագույն նպատակը ժողովրդի նյութական և կուլտուրական աճող պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է՝ հասարակական արտադրության անընդհատ զարգացման ու կատարելագործման միջոցով:

Պահանջմունքներն սպառման կարիքներն են այնպիսի նյութական ու հոգևոր բարիքների ամբողջության, որոնք անհրաժեշտ են մարդկային հասարակության զարգացման տվյալ աստիճանում կյանքի կանոնավոր վերարտադրության համար: Դրանք սպառման բանական, օբյեկտիվ անհրաժեշտությունն են, տնտեսական հատուկ կատեգորիա, որոնք պայմանավորված են ո՛չ թե մարդկանց ցանկություններով, այլ արտադրության զարգացման մակարդակով ու պատմական էտապի կոնկրետ առանձնահատկություններով:

Պահանջմունքներն ունեն պատմական բնույթ: Հասարակության զարգացման հետ միասին փոխվում է այն: Սակայն գոյություն ունի ընդհանուր օրինաչափություն. դա այն է, որ հասարակական արտադրության աճին, արտադրաուժերի զարգացմանը զուգընթաց աճում են պահանջմունքները, որոնք օբյեկտիվ պատմական պրոցես են: Վ. Ի. Լենինն այն անվանել է «պահանջմունքների աճի օրենք», որը հատկապես բնորոշ է սոցիալիստական հասարակարգին, որտեղ ժողովրդական սպառման արագ աճի պայմաններում հասարակության պահանջմունքները մեծանում են ավելի արագ: Սակայն անհրաժեշտ է նշել, որ այստեղ նույնպես քանակական համընկնում տեղի չի ունենում, այլ միայն կրճատվում է պահանջմունքների ու կրճատման միջև եղած ճեղքվածքը: Դա բացատրվում է ոչ թե տնտեսության հետամնացությամբ, այլ արտացոլում է պահանջմունքների առաջանցումն արտադրության զարգացումից: Սոցիալիզմը ո՛չ միայն նախադրյալներ է ստեղծում պահանջմունքների արագ աճի, այլև դրանց է՛լ ավելի լրիվ բավարարման համար: Այն բաց է անում մարդկային պահանջմունքների զարգացման նոր դարաշրջան, որտեղ դրանք ո՛չ միայն արագ աճում, այլև որակապես կատարելագործվում են: Զարգացած սոցիալիստական հասարակարգն իր առջև խնդիր է դրել՝ հասնել արտադրության զարգացման այնպիսի մակարդակի, որը թույլ կտա հասարակության բոլոր անդամների պահանջմունքներն առավել լրիվ բավարարել, որը և նախադրյալ կստեղծի անցնելու նյութական բարիքների ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական ձևին:

Դրանում կարելի է համոզվել ՍՍՀՄ և ԱՄՆ բնակչության մեկ շնչին ընկնող մանրածախ ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալի ինդեքսի տվյալները համեմատելով.

Համադրելի գներով (տոկոսներով 1950 թ. նկատմամբ[1]

| | 1950 թ. | 1960 թ. | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. | 1969 թ. | 1970 թ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ՍՍՀՄ | 100 | 248 | 308 | 331 | 358 | 385 | 408 | 435 |
| ԱՄՆ | 100 | 108 | 124 | 127 | 128 | 132 | 130 | 127 |

Ինչպես երևում է աղյուսակից, 20 տարվա ընթացքում մեկ շնչին ընկնող մանրածախ ապրանքաշրջանառությունը մեզ մոտ աճել է 335, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 27 տոկոսով:

Պահանջմունքներն ունեն ո՛չ միայն պատմական, այլև դասակարգային բնույթ: Դրանց բնույթը, անհրաժեշտության աստիճանը պայ-

1 Народное хозяйство СССР в 1970 г., Статистический ежегодник, М., 1971, стр. 118.

գրաված դիրքով, ինչպես նաև ծախսած աշխատանքի քանակով ու որակով։ Սա հանգեցնում է սոցիալիստական հասարակարգում սոցիալ-տնտեսական առանձին խմբերի պահանջարկի կառուցվածքի տարբերության։ Սակայն փոխվում է նաև բնակչության սոցիալական կազմը։ Բավական է ասել, որ բանվոր-ծառայողները, օրինակ, Հայկական ՍՍՀ-ում ամբողջ բնակչության մեջ 1939 թ. կազմել են 32,2, իսկ 1970 թ.՝ 82,3 տոկոս, կոլտնտեսային գյուղացիները և կոոպերացված արհեստավորները, համապատասխանաբար՝ 64,1 և 17,1 տոկոս։

Բնակչության սոցիալական կազմի փոփոխության ներգործությունը պահանջարկի կառուցվածքի վրա կարելի է տեսնել բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների ծախսերի օրինակից[1]։

Միաժամանակ պետք է նկատի ունենալ, որ պահանջարկի կառուցվածքի վրա զգալի ներգործում է եկամուտների ապրանքավճարման ստիճանը։ Կոլտնտեսություններում նշանակալիորեն ավելանում է աշխատանքի վարձատրման դրամական ձևը։

Առանձին խմբերի՝ բանվոր-ծառայողների ու կոլտնտեսականների, սպառման մակարդակն ու կառուցվածքը կարելի է որոշել ընտանիքների բյուջետային հետազոտության տվյալների հիման վրա, որոնք ունեն եկամուտների տարբեր մակարդակ։

Բյուջետային հետազոտության նյութերը ցույց են տալիս, որ եկամուտների աճի հետ մեկտեղ էապես փոխվում են բնակչության պահանջարկի ծավալն ու կառուցվածքը, ընդ որում, դրանք կրում են օրինաչափ բնույթ։ Թե ինչպես է բնակչության դրամական եկամուտների բարձրացումը անդրադառնում պահանջարկի կառուցվածքի վրա, կարելի է տեսնել հետևյալ աղյուսակում։

Ամբողջ ապրանքային ծախսերի նկատմամբ (տոկոսներով)

| | Բանվոր-ծառայողների ընտանիք | կոլտնտեսականների ընտանիք |
|---|---|---|
| Պարենային ապրանքներ | 58 | 40 |
| Արդյունաբերական ապրանքներ | 42 | 60 |

Բանվոր-ծառայողների սպառման առարկաների փոխի կառուցվածքը պայմանավորված նրանց եկամուտների չափով (ամբողջ սպառման առարկաների նկատմամբ, տոկոսներով)[2]

| Բանվոր-ծառայողների ընտանիքների խմբավորումը ամսվա ընթացքում ըստ ընտանիքի մեկ անդամի ընկնող եկամտի (ռուբլիներով) | Արդյունաբերական ապրանքներ | Պարենային ապրանքներ |
|---|---|---|
| մինչև 25 | 14,4 | 85,6 |
| 25— 50 | 19,5 | 80,5 |
| 50— 75 | 21,0 | 79,0 |
| 75—100 | 21,9 | 78,1 |
| 100 և բարձր | 33,5 | 66,5 |

Աղյուսակից երևում է, որ եկամուտների աճի հետ կրճատվում է պարենային ապրանքների ծախսերի բաժինը և այն համապատասխանաբար մեծանում է արդյունաբերական, հատկապես կուլտ-կենցաղային և տևական գործածման ապրանքների համար։ Սակայն ամենևին չի նշանակում , որ բացարձակ կրճատվում է սննդի ծախսերի բաժինը։ Այս պակասեցումը հարաբերական է։ Եկամուտների ընդհանուր աճի հետ մեկտեղ զգալի չափով մեծանում է նաև սննդի ծախսերի բաժինը։

Հարկ է նշել, որ եկամուտների աճի հետ մեծանում է ավելի բարձրարժեք ու սննդարար պարենային ապրանքների, ինչպես նաև բարձրորակ արդյունաբերական, մասնավորապես տևական օգտագործման ապրանքների ծախսերի բաժինը։ Միաժամանակ պարենային ապրանքների կազմում իջնում է այնպիսի սննդամթերքների պահանջարկը, ինչպիսիք են՝ հացը, կարտոֆիլը, ճարպը և այլն, ընդհակառակը, նկատվում է առավել արժեքավոր սննդամթերքների՝ կաթնամթերքի, բանջարեղենի, մրգի, ձվի, շաքարի, ձկնեղենի պահանջարկի մեծացում։ Այդ են ցույց տալիս փաստերը։ Միայն անցած հնգամյակում՝ 1965—1970 թթ. ՀՍՍՀ-ում, մեկ մարդու հաշվով, մսի սպառումը ավելացել է 17 տոկոսով, կաթինը և կաթնամթերքինը՝ 22, ձվինը՝ 23, ձկանը և ձկնամթերքինը՝ 33, շաքարինը՝ 14 տոկոսով։

Խնդիր է դրված այս հնգամյակում բարձրացնել արժեքավոր սննդամթերքների և ժամանակակից պահանջներին համապատասխանող բարձրորակ ոչ պարենային ապրանքների տեսակարար կշիռը, որը 1970 թ. 46,2 տոկոսից 1975 թ. կհասնի 49,5 տոկոսի։

Այսպիսով, արտադրության զարգացման և բնակչության նյութական բարեկեցության բարձրացման հետ միասին պահանջարկի կառուցվածքում տեղի է ունենում օրինաչափ փոփոխություն, որը արդի պայմաններում բնորոշվում է՝

— ավելի բարձր տեմպերով է աճում արդյունաբերական ապրանքների նկատմամբ պահանջարկը՝ պարենային ապրանքների համեմատությամբ.

— արդյունաբերական ապրանքների խմբում ավելի արագ է մեծանում բարձրորակ և տևական գործածման, կուլտ-կենցաղային նշանակության ապրանքների պահանջարկը.

— ավելի արագ է աճում առավել արժեքավոր և բարձրորակ սննդամթերքների նկատմամբ պահանջարկը, որը և մոտեցնում է սպառման ռացիոնալ նորմաներին.

— բնակչության տարբեր խմբերի միջև տեղի է ունենում պահանջարկի մակարդակի ու կառուցվածքի անշեղ մոտեցում։

Սպառողների պահանջարկն այս կամ այն ապրանքների նկատմամբ ունի որոշակի հարաբերական սահման, որոնց իմացությունը մեծ նշանակություն ունի պահանջարկի ուսումնասիրման ու շուկայի տարողության որոշման ժամանակ։

ՍՄԿԿ XXIV համագումարում Ա. Ն. Կոսիգինը նշեց, որ հասարակական պահանջմունքների և գնորդական պահանջարկի համակողմանի ուսումնասիրությունը պլանավորման գիտական մակարդակի հետագա բարձրացման գլխավոր ուղղություններից մեկն է (տես ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 220—221)։

Այսպիսով, արդի ժամանակաշրջանում կարևոր նշանակություն են ստանում ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ պահանջմունքների բացահայտման հարցերը, պահանջարկի զարգացման օրինաչափությունների ու տենդենցի, դրա ծավալի ու ասորտիմենտային կառուցվածքի որոշումը։

[1] И. И. Корженевский, Основные закономерности развитии спроса в СССР, Экономика, 1971 г., стр. 44.

[2] Տվյալները բերված են ՀՍՄՀ պետպլանի հաշվողական կենտրոնի կողմից 1968—1969 թթ. կատարված հետազոտության նյութերից։

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

## ՀԱՆՃԱՐԵՂ ԳԻՏՆԱԿԱՆԸ

*Ն. ԿՈՊԵՌՆԻԿՈՍԻ ԾՆՆԴՅԱՆ 500-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ*

*Ս. Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ*

«Նա կանգնեցրեց Արեգակը և տեղից շարժեց Երկիրը»: Այս խոսքերը գրված են այն արձանի պատվանդանին, որ կանգնեցրել է լեհ ժողովուրդը ի պատիվ իր հանճարեղ զավակի՝ Նիկոլայ Կոպեռնիկոսի:

Ժամանակակից գիտության շենքը բազմաթիվ հանճարների մտքի և ստեղծագործության արգասիք է: Սակայն դրանց մեջ կան անուններ, որոնք նախապես բարձր են դասվում մնացած բոլորից: Դրանք սոսկ գիտնականներ չեն, որոնք իրենց մանր ու խոշոր հայտնագործություններով նպաստել են գիտության շենքի վեր խոյացմանը: Դրանք ժամանակակից գիտության սկզբներն են և ոչ թե այն շարունակողները, գիտության շենքի հիմնադիրներն են և ոչ թե դրա կառուցողները: Այդ անունների շարքում իր արժանի տեղն ունի խոշորագույն աստղագետ, Վերածննդի դարաշրջանի ականավոր գործիչ, աշխարհի արեգակնակենտրոն համակարգի հիմնադիր Նիկոլայ Կոպեռնիկոսը:



Կոպեռնիկոսի գործունեությունը համընկավ պատմական մի այնպիսի ժամանակաշրջանի հետ, երբ ժամանակի առաջադիմական բուրժուական հարաբերությունները հարուցել էին գրականության, արվեստի ու գիտության բուռն կարգացում, երբ միջնադարյան քնից սթափված մարդկությունը աշխարհի մասին քարացած կրոնական ուսմունքներից իր հայացքը դարձնում էր դեպի բնությունը, նրա փաստական ուսումնասիրությունը: Բուրժուազիայի մտքի սթափությունը և ապատախուհությունը կյանքի և ոչ մի բնագավառում հանդես չէին գալիս այնպիսի որոշակիությամբ ու հետևողականությամբ, ինչպես փորձնական գիտության կարգացման բնագավառում: Նոր դասակարգին կենսականորեն անհրաժեշտ էին բնության օրենքների իմացությունը և փորձնական գիտության կարգացումը, որպեսզի դրանք հնարավոր լիներ ներդնել նոր արդյունաբերության ոլորտում:

Սակայն նոր բնագիտության կարգացման ուղին լի էր դժվարություններով: Անհրաժեշտ էր հաղթահարել հակագիտական ավանդույթներն ու նախապաշարումները, գիտականորեն սիստեմավորել և ընդհանրացնել այն վիթխարի փաստական տվյալները, որ կուտակվել էր մարդկային գիտակցության մեջ: Իսկ այս բոլորի համար անհրաժեշտ են, առաջին հերթին, նոր գիտական աշխարհըմբռնում, աշխարհի վերաբերյալ գիտական մատերիալիստական մտածելակերպ: Թեև 14-րդ դարում արդեն ձևավորվել էր ճշմարտության երկակիության մասին ուսմունքը, որը փորձում էր համատեղել բանականության ճշմարտությունը հավատի ճշմարտության հետ, աշխարհի իմացության տրամաբանությունը՝ աստծո իմացության խորհըրդավորության հետ, այդուհանդերձ, կրոնը իշխող էր մնում աշխարհայացքի բնագավառում: Դա մի ժամանակաշըրջան էր, որը, Ֆ. Էնգելսի արտահայտությամբ, իսկական տիտանների կարիք էր զգում և ծնեց այդպիսի տիտաններ, որոնք փայլում էին մտքի ուժով, կրքոտությամբ, բազմակողմանիությամբ ու գիտական խորությամբ:

Այդպիսի տիտաններից էր Կոպեռնիկոսը, գիտության այդ մեծ վերափոխիչը, տիեզերքի առաջին գիտական պատկերի ստեղծողը, որը գիտությունը ձերբազատեց կրոնական դոգմաների ու առօրյա սահմանափակ ըմբռնումների շըրջանակներից և դուրս բերեց ինքնուրույն կարգացման ուղի:

Կոպեռնիկոսը ծնվել է 1473 թվականի փետրվարի 19-ին, Լեհաստանի Թորուն քաղաքում, վաճառականի ընտանիքում: Սովորել է նախ իր ժամանակին մեծ համարում ունեցող Կրակովի համալսարանում, իսկ այնուհետև ունկնդիրն է եղել Իտալիայի մի շարք համալսարանների: Բազում տարիներ վարել է նահանգի վարչական ու ֆինանսական գործերը, ակտիվ մասնակցություն ունեցել իր հայրենիքը օտար նվաճողների, հատկապես Տևտոնյան օրդենի հարձակումներից պաշտպանելու գործում: Իտալիայում Կոպեռնիկոսն ուսանել է աստղագիտություն և բժշկություն, խորապես ուսումնասիրել հատկապես տիեզերքի կառուցվածքի պրոբլեմը, հենվելով հին աշխարհի խոշորագույն մտածողների, մասնավորապես պյութագորյանների և Արիստարքոս Սամոսացու աշխատությունների վրա: Հենց այդ ժամանակ էլ սկիզբ է առնում Կոպեռնիկոսի քննադատական վերաբերմունքը ընդհանուր ճանաչում գտած աշխարհի երկրակենտրոն համակարգի նկատմամբ և սաղմնավորվում են արեգակնակենտրոն համակարգի առաջին տարրերը, որոնք հետագայում ընդհանրացվեցին ու մաթեմատիկորեն հիմնավորվեցին նրա «Երկնային ոլորտների պտույտի մասին» դարագլուխ կազմող աշխատության մեջ:

Երկրակենտրոն համակարգը ձևավորվել է հին աշխարհի խոշորագույն մտածող Արիստոտելի ուսմունքում: Նրա հիմքում ընկած է այն պատկերացումը, որ անանցանելի անդունդ գոյություն ունի երկրային և երկնային նյութի միջև: Կոպիտ, անկատար երկրային նյութին հակադրվում է կատարյալ ու իդեալական երկնայինը, որը ենթարկվում է նույնքան իդեալական համարվող շարժման՝ շրջանագծով հավասարաչափ ընթացող պտույտի: Այստեղ տիեզերքը համարվում է սահմանափակ, նրա կենտրոնում գտնվում է անշարժ Երկիրը, որի շուրջը համակենտրոն շրջանագծերով պտտվում են բոլոր երկնային մարմինները: Աշխարհի այս պատկերը տիեզերքը բնութագրում էր միայն որակական տեսակետից: Նրանում բացակայում էր քանակական նկարագրությունը, որը հնարավորություն կընձեռեր ցանկացած պահին որոշելու մոլորակների դիրքը երկնքում, մի հանգամանք, որը չափազանց կարևոր էր այդ համակարգի պրակտիկ կիրառման համար:

Այս թերությունը հաղթահարեց Պտղոմեոսը: Ընկալելով Արիստոտելի ուսմունքի երկրակենտրոն սկզբունքը, նա, միաժամանակ, հրաժարվեց այն պատկերացումից, թե մոլորակները պտտվում են համակենտրոն շրջանագծերով, քանի որ այդ ձևով անհնար էր բացատրել մոլորակների չափազանց բարդ տեսանելի շարժումը: Նրա «Ալմագեստ» աշխատությունում տրված է աշխարհի երկրակենտրոն համակարգն իր կատարյալ ու ավարտուն տեսքով: Բոլոր մոլորակները հավասարաչափ կերպով շարժվում են շրջանային ուղեծիրով՝ *էպիցիկլով:* Էպիցիկլերի կենտրոններն իրենց հերթին հավասարաչափ կերպով շարժվում են մեծ շրջանագծով՝ *դիֆերենտով,* որի կենտրոնում գտնվում է անշարժ

Երկիրը: Այսպիսի բարդ համակարգը հնարավորություն էր ընձեռում հավասարաչափ պտտական շարժման միջոցով ներկայացնելու մոլորակների չափազանց բարդ տեսանելի շարժումը երկնակամարի վրա: Այս համակարգը գիտության մեջ իշխեց ավելի քան 1500 տարի և տեսական բազա ծառայեց աստղագիտական դիտումների ու չափումների համար: Ընդ որում, պարզվում էր, որ չափումների արդյունքները մեկնաբանելու համար մեկ էպիցիկլը բավական չէ: Եվ չափումների ճշգրտմանը զուգընթաց, ավելի ու ավելի էին աճում էպիցիկլերի թիվը, որոշ մոլորակների համար հասնելով մի քանի տասնյակի, որի հետևանքով այդ համակարգը գնալով ավելի ու ավելի էր ծանրաբեռնվում, բարդանում, դառնում անբնական, ուստի և կասկածելի էր թվում նույնիսկ նրա ամենամոլի համախոհների աչքում: Իսկ մի՞թե տիեզերքը այդքան բարդ է: Ո՛չ, պատասխանեց Կոպեռնիկոսը:

Նա պարզապես մերժեց այդ համակարգը, որպես իրականությանը չհամապատասխանող և առաջ քաշեց տիեզերքի միանգամայն նոր պատկեր՝ արեգակակենտրոն համակարգը, դրանով նոր էջ բացելով աստղագիտության մեջ: Ըստ Կոպեռնիկոսի, երկնային մարմինների դիտվող շարժումների մեծ մասը թվացող են, պայմանավորված նրանով, որ Երկիրը պտտվում է իր առանցքի շուրջը և Արեգակի շուրջը: Ընդունելով, որ բոլոր մոլորակները, այդ թվում և Երկիրը, պտտվում են Արեգակի շուրջը, Կոպեռնիկոսը կարողացավ չափազանց պարզ ու բնական ձևով բացատրել երկնակամարի վրա մոլորակների բավականին բարդ շարժումները, ինչպես նաև երկնային ոլորտի օրական պտույտը: Դրանով իսկ խորտակվեց Երկրի անշարժության և նրա բացառիկ դիրքի մասին եղած դոգման: Այն դիտվեց որպես մի սովորական տիեզերական մարմին:

Աստղագիտության հետագա զարգացումը հնարավորություն տվեց բացահայտելու և հաղթահարելու Կոպեռնիկոսի ուսմունքի մի շարք թերություններ: Եվ դա հասկանալի է, որովհետև աշխարհի այդ միանգամայն նոր պատկերը չէր կարող բացարձակապես կատարյալ լինել իր բոլոր մասերում: Նախ, փոխելով տիեզերքում Արեգակի և Երկրի տեղերը, Կոպեռնիկոսը Արեգակը դիտեց որպես վերջավոր տիեզերքի բացարձակ անշարժ կենտրոն, որի շուրջը պտտվում են բոլոր տիեզերական մարմինները: Այնուհետև, Կոպեռնիկոսը չկարողացավ ազատագրվել դեռևս Արիստոտելից եկող այն պատրանքից, թե միակ կատարյալ շարժումը հավասարաչափ շրջանային շարժումն է: Ուստի, ընդունելով, որ մոլորակները Արեգակի շուրջը պտտվում են շրջանագծով, Կոպեռնիկոսը որոշ մոլորակների տեսանելի շարժումները բացատրելու համար ստիպված էր ընդունել մի քանի էպիցիկլերի գոյությունը: Այս բոլորի հետ մեկտեղ, Կոպեռնիկոսը չուներ Երկրի շարժման ոչ մի ուղղակի ապացույց և երկար ժամանակ անբացատրելի էր մնում այն փաստը, թե Երկրի շարժման հետևանքով ինչո՞ւ նրա վրայի առարկաները չեն պոկվում և հեռանում նրանից: Եվ այդ էր պատճառը, որ այս ուսմունքն սկզբում հավանություն չգտավ նույնիսկ մի շարք առաջադեմ մտածողների կողմից:

Սակայն այս թերություններն ամենևին էլ չեն նսեմացնում Կոպեռնիկոսի ուսմունքի արժանիքը: Այն բացեց աշխարհի ավելի վիթխարի պատկեր, քան Պտղոմեոսի համակարգը, արմատապես փոխեց մարդու վերաբերմունքը տիեզերքի նկատմամբ, ստիպեց մարդուն ավելի «համեստ լինել» իր հավակնություններում և աշխարհին նայել ոչ թե «իր տան լուսամուտից»՝ Երկրից, այլ գոնե Արեգակից: Կոպեռնիկոսը նոր ուղի հարթեց դեպի գիտական աստղագիտությունը: Նրա շնորհիվ Ջորդանո Բրունոն առաջ քաշեց ուսմունք տիեզերքի անվերջության, այլ մոլորակային համակարգերի և նրանց վրա բանական արարածների գոյության հնարավորության մասին: Նա ցույց տվեց, որ տիեզերքը անվերջ է և չունի ոչ մի կենտրոն, իսկ մեր Արեգակը մի շարքային աստղ է, նման այն անվերջ թվով աստղերին, որոնք լցնում են տիեզերքը: Հետագայում Կեպլերը, ընդհանրացնելով Տիխո Բրագեի ուսումնասիրությունները, բացահայտեց մոլորակների շարժման օրենքները: Պարզվեց, որ մոլորակները պտտվում են էլիպտական ուղեծիրներով և հերքվեց Արիստոտելի ուսմունքը շրջանագծային շարժման կատարյալության մասին: Գալիլեյի աշխատությունները խարխլեցին Պտղոմեոսի համակարգի հիմքերը և, վերջապես, մեծ Նյուտոնը ամփոփեց այդ բոլոր նվաճումները մեկ ընդհանուր համակարգի մեջ, որով և Կոպեռնիկոսի ուսմունքը հանձարեղ կըռահումից վերածվեց գիտական ճշմարտության:



Կոպեռնիկոսի ուսմունքը հիմք հանդիսացավ նոր, գիտական աստղագիտության զարգացման համար և խթանեց ֆիզիկայի ու մեխանիկայի առաջընթացին, սակայն ավելի արմատական էր այդ ուսմունքի նշանակությունը գիտական աշխարհայացքի ձևավորման, կրոնի դեմ մղվող պայքարի և աստղագիտության մեջ մատերիալիստական փիլիսոփայության հաստատման գործում: Կրոնական աշխարհայացքի տեսակետից, մարդը աստվածային արարչագործության պսակն է, ողջ տիեզերքի վերջնական նպատակը: Եվ, քանի որ մարդն ստեղծվել է Երկրի վրա, ապա, բնականաբար, Երկիրն էլ պետք է որ բացառիկ դիրք ունենա տիեզերքում, պետք է լինի տիեզերքի բնական կենտրոնը և բոլոր տիեզերական մարմինները պետք է հարմարեցված լինեն Երկրին, պետք է ծառայեն նրան լուսավորելու, տաքացնելու և նրա վրա կյանքի պայմաններ ստեղծելու համար: Այս տեսակետից, դժվար է պատկերացնել տիեզերքի մեկ այլ համակարգ, որն ավելի լավ համապատասխաներ կրոնին, քան Պտղոմեոսի համակարգը: Երկրակենտրոն ուսմունքը դարեր ի վեր ծառայել է կրոնին որպես նրա, այսպես ասած, «գիտական» հիմնավորում և հովանավորվել է նրա կողմից: Այս պատճառով էլ Կոպեռնիկոսի ուսմունքը գիտության առաջին լուրջ մարտահրավերն էր կրոնին և, հատկապես, աշխարհի արարչագործական տեսակետին: Եթե մեր Երկիրը ինչ-որ բացառիկ երևույթ չէ տիեզերքում, ապա բացառիկ երևույթ չպետք է լինի նաև մարդը: Այն ոչ թե աստվածային արարչագործության հետևանք է, այլ բնության զարգացման օրինաչափ արդյունք, թեև մատերիայի զարգացման բարձրագույն ձևը, բայց ոչ բացառիկ և ոչ էլ միակը ողջ տիեզերքում: Ահա մատերիալիստական այն հետևությունները, որոնք կարող էին արվել և որոնք հետագայում իսկապես արվեցին Կոպեռնիկոսի ուսմունքից:

Սակայն երկրակենտրոն ուսմունքն ուներ մեկ այլ ծայրաթև ևս: Ինչպես նըկատեցինք, աշխարհի արիստոտելյան պատկերացման մեջ խիստ հակադրություն էր դրվում երկրային և երկնային նյութի միջև: Անկատար և կոպիտ երկրայինին հակադրվում էր կատարյալ ու իդեալական երկնայինը և դրանով իսկ բացառվում էր երկրային էակի կողմից երկնքի ճանաչման հնարավորությունը: Սա այլ բան չէր, քան մարդու, նրա էության ու խնդիրների մասին քրիստոնեական ուսմունքի «գիտական» հիմնավորում: Կոպեռնիկոսը բնագիտությունն ազատագրելով աստվածաբանական մըտածելակերպից, դրանով իսկ հռչակեց մարդկային բանականության ամենակարողությունը, նրան մատչելի դարձնելով ինչպես Երկիրը, այնպես էլ երկինքը: Դրանով դրվեց աշխարհի մատերիական միասնության և նրա զարգացման ընդհանուր օրինաչափությունների ուսմունքի հիմքը: Չկա երկրային և երկնային աշխարհ: Աշխարհը միասնական է: Մեր երկիրը այլ բան չէ, քան սովորական մի տիեզերական մարմին և ողջ տիեզերքի հետ մեկտեղ ենթակա է միասնական օրինաչափություններին: Ուստի, ճանաչելով Երկիրը, երկրային նյութըն ու նրա հատկությունները, մարդը դրանով իսկ ճանաչում է նաև ողջ տիեզերքը, նրա զարգացման օրենքները:

Հետաքրքրական է նկատել, որ կրոնին հասցված այս ծանր հարվածը առաջինն զգաց ոչ այնքան կաթոլիկ եկեղեցին, որքան բողոքականությունը և Կոպեռնիկոսի դեմ առաջինը ոտքի ելավ ոչ թե Հռոմի Պապը, այլ Մարտին Լյութերը: Դա, անշուշտ, ունի իր բացատրությունը: Բանն այն է, որ կաթոլիկության հիմքում դեռ միջնադարից ծնունդ էր առել, այսպես կոչված, ճշմարտության երկակիության մասին ուսմունքը, ըստ որի, ինչ-որ չափով հնարավոր էր համարվում կրոնի և գիտության համատեղում, իհարկե, գիտությունը դիտելով որպես կրոնի ծառա: Այնինչ բողոքականությունը ավելի ամուր կառչած մնալով Ավետարանի տառին, անթույլատրելի էր համարում նրանից կատարվող ամեն մի շեղում: Եվ հենց այդ պատճառով էլ Կոպեռնիկոսի «Երկնային ոլորտների պըտույտի մասին» աշխատությունը հրատարակելիս նրան կցվեց լյութերական օսիանդրի գրած մի անստորագիր առաջաբան, որտեղ նա պնդում էր, որ Կոպեռնիկոսի ողջ համակարգը ամենևին էլ հավակնություն չունի իրական աշխարհի պատկեր լինելու, որն, ըստ էության, անճանաչելի է: Կոպեռնիկոսի գըրքում բերված Երկրի շարժումը ներկայացվում էր սոսկ մի հիպոթեզ, որը մա-

թեմատիկական հաշվումները հեշտացնելու մի հարմար միջոց է միայն: Գուցե վերը նշված հանգամանքի հետ մեկտեղ այս առաջաբանը ևս նպաստեց այն բանին, որ կաթոլիկական շրջաններում այդ գիրքն սկզբում ո՛չ միայն ընդունվեց առանց թշնամանքի, այլև հետաքրքրության առարկա դարձավ: Այս հարցում անշուշտ, կարևոր դեր է խաղացել նաև գրքի շարադրման խիստ մաթեմատիկական ոճը: Սակայն այս պատրանքը երկար չտևեց: Բրունոյի և Գալիլեյի ուսումնասիրություններն ու նրանց պրոպագանդիստական գործունեությունը իսկույն բացահայտեցին Կոպեռնիկոսի աշխատության հեղափոխական ոգին ու նրա հակակրոնական բնույթը: Պարզ դարձավ, որ Կոպեռնիկոսի ուսմունքը ամենևին էլ հավակնություն չունի ամրապնդելու ճշմարտության երկակիության մասին ուսմունքը և համատեղելու գիտությունն ու կրոնը: Այդ ուսմունքը, որ որոշ չափով միջնադարում նպաստել էր գիտության առաջընթացին, աշխարհի ընդհանուր կրոնական պատկերի մեջ գիտությանը հատկացնելով այնուամենայնիվ որոշ ինքնուրույն բնագավառ, այժմ կանգնած էր խորտակման եզրին: Արեգակակենտրոն համակարգը հռչակում էր գիտության գերիշխանությունը, աշխարհի գիտական պատկերը համարելով միակ օբյեկտիվը: Այդ պատճառով էլ Կոպեռնիկոսի ուսմունքը կաթոլիկ եկեղեցու կողմից դատապարտվեց և նրա աշխատության վրա արգելք դրվեց, որը մնաց մոտ 200 տարի՝ մինչև 1822 թվականը:

Չափազանց մեծ է Կոպեռնիկոսի կողմից կատարված հեղաշրջման նշանակությունը նաև նոր ժամանակաշրջանի գիտության իմացաբանական սկզբունքների և նրա մեթոդաբանական հիմքերի մշակման գործում: Պտղոմեոսի համակարգի առանձնահատուկ գծերից մեկը նրա ակնհայտ բնույթն էր, առօրյա անմիջական դիտումներին ու պատկերացումներին նրա համապատասխանությունը: Իրոք, անմիջական դիտումները մեզ բերում են այն համոզման, որ Երկիրը անշարժ է և գտնվում է Տիեզերքի կենտրոնում, մի բան, որը Պտղոմեոսի ուսմունքին տալիս էր հանրանշանակ բնույթ, այն մատչելի էր դարձնում մարդկությանը: Այլ կերպ ասած, Պտղոմեոսի ուսմունքում թվացողը նույնացվում էր իրականի հետ, զգայական փորձից ստացված տվյալներն ուղղակիորեն, անքննադատ կերպով մտցվում էին գիտական տեսության մեջ: Այս պատճառով էլ աշխարհի այս երկու համակարգերի միջև մղվող պայքարը արտահայտում է նաև գիտական ճշմարտության օբյեկտիվ բնույթի և նրա իրականության ակնհայտ պատկերացման միջև եղած հակասությունը: Այստեղ գիտական միտքը բախվում էր աշխարհի մասին եղած, թող թույլ տրվի ասել, ամբոխամիտ, նայիվ, մակերեսային պատկերացումների հետ: Եվ այս հակասությունն էլ խաբկանք էր ստեղծում Պտղոմեոսի ուսմունքի ճշմարտացիության մասին:

Արեգակակենտրոն համակարգի ստեղծումով նոր ժամանակի գիտության հիմքում դրվեց այն սկզբունքը, որ զգայական տեսակետից ակնհայտը և գիտական ճշմարտությունը ո՛չ միայն չեն համընկնում, այլ կարող են միմյանց ճիշտ հակառակը լինել: Գիտական ուսումնասիրությունը ոչ թե պետք է սահմանափակվի զգայական փաստերով, այլ քննադատաբար յուրացնելով դրանք, պետք է ձգտի բանականության ուժով հասու լինելու զգայական աշխարհի բազմազանության հետևում թաքնված համընդհանուր և անհրաժեշտ օրինաչափություններին:

Նկատենք, որ արիստոտելյան ֆիզիկան հենվում էր այն հայեցողական տեսակետի վրա, որ շարժման պատճառը ուժն է, որ շարժումը կանգ է առնում, երբ դադարում է նրա վրա ուժի ազդեցությունը: Այստեղից էլ այն նայիվ պատկերացումը, թե շարժման արագությունը ուղիղ համեմատական է նրա վրա ազդող ուժին, թե, օրինակ, երկու ձի լծված կառքը երկու անգամ մեծ արագությամբ պետք է շարժվի, քան մեկ ձի լծվածը: Կոպեռնիկոսի ուսմունքի հիման վրա Գալիլեյը մշակեց նոր ֆիզիկայի հիմնարար օրենքները, մասնավորապես իներցիայի օրենքը և դրանով հերքեց արիստոտելյան այս թեև ակընհայտ թվացող, բայց իրականում կեղծ դրույթը: Պարզվեց, որ ուժը ոչ թե շարժման արագության, այլ նրա արագացման պատճառն է: Մարմնի վրա ոչ մի ուժ կարող է չազդել, բայց և այնպես այդ մարմնին կարելի է վերագրել ուղղագիծ-հավասարաչափ շարժում ցանկացած արագությամբ: Այս իսկ տեսակետից ուղղագիծ-հավասարաչափ շարժվող բոլոր համակարգերը միմյանց համարժեք են և ֆիզիկական ոչ մի փորձ չի կարող հնարավորություն ընձեռել բացահայտելու այդ շարժման գոյության փաստը: Եվ հենց իներցիայի օրենքը հնարավորություն տվեց պատասխանելու այն հարցին, թե ինչու մենք չենք նկատում Երկրի շարժումը, ինչու նրա վրա գտնվող առարկաները շարժման հետևանքով չեն պոկվում նրանից: Այսպիսով, զգայականորեն ակնհայտի և գիտական ճշմարտության միջև եղած հակասությունը լուծվեց հօգուտ գիտական ճշմարտության և հնարավորություն ընտեղծվեց գիտականորեն բացատրելու և իմաստավորելու նաև զգայական տեսակետից ակնհայտը, հաղթահարելու զգայական պատրանքը:

Հետաքրքրական է նկատել, որ ինքը՝ Պտղոմեոսը, իր համակարգը դիտել է ոչ թե որպես աշխարհի ռեալ ֆիզիկական պատկերը, այլ որպես միջոց՝ աստղագիտական դիտումներից ստացված տըվյալները բացատրելու համար: Նրա կարծիքով, անհնար է տալ իրական աշխարհի օբյեկտիվ պատկերը և չպետք է պարմանալ երկրակենտրոն համակարգում օգտագործվող այդքան շատ շրջանների վրա, որովհետև միայն դըրանց միջոցով է, որ կարելի է ներկայացնել մոլորակների տեսանելի շարժումները երկնակամարում, միայն այդպես կարելի է *փրկել տեսանելին:*

Փրկել տեսանելին... շատ դիպուկ է ասված: Սա նշանակում է, որ խոսքը ոչ թե այն մասին է, թե ինչպիսին է աշխարհը, այլ թե ինչպես բացատրել բնության երևույթները: Ուրեմն, գիտական տեսության խնդիրը պետք է լինի միայն բացատրել դիտումներից ստացած փաստերը, իսկ աշխարհի բուն էությունը բացահայտելը նրա խնդիրներից վեր է: Տեսանելին փրկելու այս չափանիշը անցնում է ողջ միջնադարով և հասնում է մինչ նոր ժամանակաշրջանի փիլիսոփայական դպրոցները, որտեղ և դառնում է որոշակի աշխարհայացքային կոնցեպցիա՝ ագնոստիցիզմ, ըստ որի, մարդկային իմացությունը տարածվում է միայն երևույթների աշխարհի վրա, էության աշխարհը մնում է մարդուն սկզբունքորեն անմատչելի, մնում է որպես «ինքնին իր»: Սակայն Կոպեռնիկոսը, հակադրվելով Պտղոմեոսի ուսմունքին, տվեց ոչ թե տեսանելի երևույթները բացատրելու մի նոր միջոց, միայն, այլ ռեալ ֆիզիկական աշխարհի պատկերը. իրականում, անկախ մարդուց, նրա գոյությունից, Երկիրը պտըտվում է Արեգակի շուրջը: Սրանով իսկ, այն մտայնությունը, որ գիտությունը պետք է բացահայտի աշխարհի բուն էությունը, դառնում է նոր ժամանակաշըրջանի բնագիտության հիմնական մեթոդաբանական առանցքը:

Կոպեռնիկոսի պարզ ու բանական ուսմունքը իր հիմնական գծերով համապատասխանում է աշխարհի բուն էությանը և այսօր դարձել է տիեզերքի մասին մեր ունեցած պատկերացման անբաժան մասը: Այդ ուսմունքի շուրջ գիտության և կրոնի միջև մղվող պայքարը և նրա ակնհայտ պատկերացման հետ կապված դժվարություններն այսօր արդեն անցած էտապ են: Ժամանակակից աստղագիտությանը այսօր հայտնի են Երկրի շարժման այնպիսի ապացույցներ, ինչպիսիք են Ֆուկոյի ճոճանակը, լույսի աբեռացիան, աստղերի պարալակտիկ տեղաշարժը և այլն: Տիեզերական արդի թռիչքների շնորհիվ արեգակակենտրոն համակարգը դարձել է նույնքան ակնհայտ ու հեշտ պատկերացնելի, որքան մեզ անմիջականորեն շրջապատող առարկաների շարժումը:

Սակայն, որքան էլ որ տարօրինակ թվա, գիտական որոշ շրջաններում այսօր կրկին քննարկման է դրվում արեգակակենտրոն համակարգի ճշտության հարցը, բնականաբար, նոր գիտական հիմքերի վրա և նոր տեսանկյունից: Դա պայմանավորված է հարաբերականության տեսության որոշ դրույթների ոչ ճիշտ մեկնաբանումով, որին, ցավոք, անմաս չի մնացել նաև այդ տեսության հեղինակը՝ Ա. Էյնշտեյնը: Ինչպես հայտնի է, ուղղագիծ-հավասարաչափ շարժվող բոլոր համակարգերը միմյանց համարժեք են, ուստի, այդ շարժումը զուտ հարաբերական է: Այսինքն, եթե մի մարմինը մյուսի նկատմամբ տեղափոխվում է ուղղագիծ-հավասարաչափ կերպով, ապա չի կարելի պնդել, թե հենց այդ մարմինն է շարժվում, այլ ոչ մյուս մարմինը, որի նկատմամբ այն դիտվում է, քանի որ այդ երկու համակարգերում էլ ֆիզիկական բոլոր պրոցեսներն ընթանում են միատեսակ և բնության օրենքներն արտահայտվում են միևնույն տեսքով: Այս փաստն ընկած է հարաբերականության հատուկ տեսության հիմքում: Հետագայում հա-

րաբերականության ընդհանուր տեսությունը հնարավորություն տվեց համարժեքություն ստեղծել ձգողականության և արագացման դաշտերի միջև և ֆիզիկայի օրենքներն արտահայտել այնպիսի տեսքով, որ նրանք պահպանեն իրենց ուժը ամեն տեսակի համակարգերում: Այս փաստը որոշ մտածողների մոտ ըստեղծում է այն պատրանքը, որ հարաբերականության տեսությունը հարաբերական է դարձնում ամեն մի շարժում, այդ թվում և Երկրի շարժումը Արեգակի շուրջը: Ուրեմն, Երկրի և Արեգակի փոխադարձ շարժումը զուտ հարաբերական է: Կարելի է պնդել, որ Երկիրն է պտտվում Արեգակի շուրջը, բայց նույն հաջողությամբ էլ կարելի է պնդել հակառակը: Թե՛ մեկ և թե՛ մյուս պնդումը սոսկ պայմանական է, կախված նրանից, թե որտեղ ենք վերցնում մեր հաշվարկման համակարգը՝ Երկրի, թե՞ Արեգակի վրա: Եթե այդ այդպես է, ապա ստացվում է, որ Կոպեռնիկոսի և Պտղոմեոսի համակարգերի միջև մղվող դարավոր վեճը կորցնում է իր իմաստը և ներկայանում է որպես թյուրիմացության արդյունք: Այդ համակարգերից ոչ մեկը մյուսի նկատմամբ առավելություն չունի և նրանցից ամեն մեկը իրավացի է յուրովի:

Սակայն սովետական գիտնականներ Վ. Ֆոկի, Մ. Չիրոկովի և այլոց ուսումնասիրությունները հնարավորություն տվեցին բացահայտելու հարաբերականության տեսության իսկական բովանդակությունը և այն սահմանազատելու նրա բազմապիսի իդեալիստական մեկնաբանություններից: Պարզվեց, որ համարժեքության սկզբունքը և, հետևաբար, Երկիր-Արեգակ համակարգի շարժման հարաբերականությունն ունի միայն տեղական բնույթ, այն ճշմարիտ է միայն ժամանակի առանձին մոմենտներում: Իսկ վերջավոր ժամանակահատվածներում, իր ընդհանրության մեջ, Երկրի շարժումը Արեգակի շուրջն ունի բացարձակ բնույթ, ուստի և Կոպեռնիկոսի համակարգը մնում է որպես աշխարհի ռեալ ֆիզիկական պատկերի նըկարագրություն:

Այսպիսով, աշխարհի արեգակակենտրոն համակարգի ստեղծումը գիտության պատմության մեջ մնում է որպես իսկական հեղափոխական ակտ, որը գիտական միտքն ազատագրեց դարավոր կապանքներից և դուրս բերեց զարգացման ինքնուրույն ուղի, սկիզբ դրեց աշխարհին իր իսկ օրինաչափություններով բացատրելու գործին:

Իսկ այդ համակարգի ստեղծող անմահ Կոպեռնիկոսի կյանքն ու գործունեությունը մնում է որպես մի փայլուն օրինակ այն բանի, թե մտքի անկախությունը, խիզախությունն ու համարձակությունը, հեղինակություններով ու սովորություններով ամրապնդված տեսակետներից հրաժարվելու կարողությունը որքան անհրաժեշտ են ճշմարտությանը հասնելու համար:

# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ*

Ե. ՖԻԼԻՊՈՎ

*ՍՄԿԿ XXIV համագումարի նախատեսած կոմունիստական շինարարության ստրատեգիական խնդրի՝ արտադրության բարձր արդյունավետության ապահովման, կենսագործումը շատ բանով է կապված գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական և հեռանկարային ուղղությունների ճիշտ ընտրության հետ: Արտադրության կատարելագործումը առաջին հերթին, հնարավորություն է ընձեռում արագացնելու տնտեսական զարգացումը և առավել շահավետության հասնելու սոցիալիստական հասարակությունում: Գիտության ու տեխնիկայի արդյունավետության բարձրացումը միաժամանակ նկատի ունի իրականացնելու սոցիալիզմի բոլոր առավելությունները՝ հանուն գիտատեխնիկական հեղափոխության կենսագործման:*

*Ներկա կոնսուլտացիայում մենք կանդրադառնանք երկու հարցի.*

*1. Ո՞րն է գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետության էությունը:*

*2. Գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական արդյունավետության չափանիշներն ու ցուցանիշները:*

●

*Սոցիալիզմի առավելությունների հետ գիտատեխնիկական նվաճումների օրգանական միացումը նպաստում է որոշակի սոցիալ-տնտեսական նպատակների կենսագործմանը: Գլխավոր նպատակը հասարակության բոլոր անդամների նյութական և կուլտուրական պահանջմունքների անընդհատ աճող բավարարումն ու նրանց ընդունակությունների բազմակողմանի զարգացումն է: Գիտատեխնիկական հեղափոխությունը հասարակական արտադրության նպատակների իրականացման ընդհանուր մեխանիզմի կարևորագույն տարրն է: Դրանով էլ որոշվում է գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետության բարձրացման նշանակությունը սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման գործում:*

*Ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, իններորդ հնգամյակի գլխավոր խնդրի կատարումը պահանջում է բարձր տեմպեր նվաճել մեր էկո-*

* Տպագրվում է որոշ հապավումներով:— ԽՄԲ.:

նոմիկայի զարգացման ասպարեզում։ Հասարակական վերարտադրությունն ինտենսիվացնելու պայմաններում այդպիսի տեմպեր հնարավոր են աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու և նյութական ծախսերը տնտեսելու միջոցով։ Իր հերթին, արտադրանքի մեկ միավորի հաշվով կենդանի և առարկայացած աշխատանքի խնայողության վճռական միջոց է գիտատեխնիկական առաջընթացը։ Այսպես, ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերում արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հաշվին՝ նյութական ծախսերի զգալի խնայողության հետ մեկտեղ, ընթացիկ հնգամյակում կստացվի աշխատանքի արտադրողականության նախատեսվող աճի կեսից ավելին։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններից մեկը ամբողջ երկրի մասշտաբով գիտական հետազոտությունների պլանաչափ կազմակերպումն է։ Սոցիալիստական պետության ձեռքին կենտրոնացվում են գիտության զարգացման համար նախատեսված նյութական ու ֆինանսական բոլոր միջոցները։ Լայն մասշտաբներով, նպատակասլաց կենսագործվում է որակյալ բանվորական կադրերի, գիտական և ինժեներա-տեխնիկական աշխատողների պատրաստումը։ Այդ ամենը նպաստում է գիտատեխնիկական հեղափոխության արագ զարգացմանն ու դրա նվաճումների ավելի լիակատար օգտագործմանը, գիտատեխնիկական պոտենցիալի (գիտության ու տեխնիկայի կուտակված նվաճումների) աճին, որից շատ բանով կախված է հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացը։

Ներկայումս մեր երկրում գիտական հետազոտությունների և տեխնոլոգիական մշակումների վրա կատարվող ծախսերը կազմում են ազգային եկամտի մինչև 4 տոկոսը և արտադրական կուտակման ամբողջ գումարի 10—12 տոկոսը։ 1940 թ. այդ ծախսերը հավասար էին 0,3 մլրդ ռուբլու, 1950 թ.՝ 1 մլրդ և 1970 թ. 11,7 մլրդ ռուբլու։ Իններորդ հնգամյակում գիտական հետազոտությունների համար նախատեսված ծախսերը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, կաճեն 60 տոկոսով։ Բնականաբար, մեր հասարակությունը շահագրգռված է այն բանում, որ այդ ծախսերի հատուցումն զգալիորեն բարձրացվի։

Եթե նկատի ունենանք աչքի ընկնող գիտական նվաճումների սոցիալ-տնտեսական ազդեցությունները, ապա, ձեռքբերված արդյունքի համեմատությամբ, ծախսերը, որպես կանոն, աննշան են։ «...գիտության հենց միայն այդպիսի մի արդյունքը,— գրել է Ֆ. Էնգելսը,— ինչպիսին Ջեմս Ուատի շոգեմեքենան է, իր գոյության առաջին հիսուն տարում աշխարհին ավելի շատ բան տվեց, քան աշխարհը ի սկզբանե ծախսել է գիտության զարգացման վրա» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 555)։ Մեր երկրում գիտության զարգացման վրա ներդրված 1 ռուբլին, մի շարք գիտնականների հաշվարկումներով, ազգային եկամտում ապահովում է 1 ռուբլի 45 կոպեկի աճ։ Դա մոտավորապես 4 անգամ գերազանցում է ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումներից ստացվող արդյունքը, որը ութերորդ հնգամյակում՝ 1 ռուբլի ծախսի դիմաց կազմել է 35 կոպեկ։

Գիտության տնտեսական արդյունավետությունը լիաչափ որոշվել կարող է միայն արտադրապրոցեսում՝ հաշվի առնելով նրա նվաճումների արմատավորման արդյունքը։ Այսպես, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ արտադրության կազմակերպումը և նոր տեխնիկայի ներդրումը, ավելի կատարելագործված տեխնոլոգիայի օգտագործումը, տարբեր տվյալների համաձայն, պահանջում են 3—6 անգամ ավելի ծախսեր, քան գիտական հետազոտությունների վրա անմիջականորեն կատարվող ծախսերը։ Արդի պայմաններում կարևոր նշանակություն է ձեռք բերում XX հարյուրամյակի երկրորդ կեսում լիովին կազմակերպված «գիտություն—տեխնիկա—արտադրություն» համակարգի ընդհանուր արդյունավետության վերլուծությունը։



Սոցիալիստական հասարակությունում բոլոր անհրաժեշտ պայմաններն
ստեղծված են ինչպես գիտական հետազոտությունների, այնպես էլ ամբողջ
հասարակական արտադրության պլանաչափ կազմակերպման համար։ Սակայն
գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում պահանջվում է
գիտության ու տեխնիկայի առաջընթացի անխզելի միացում արտադրության
բազմակողմանի կատարելագործման հետ։ Ինչպես ցույց է տալիս պրակտի-
կան, գիտատեխնիկական առաջընթացից առավելագույն արդյունք ստանալու
համար անհրաժեշտ է, որ դրա պլանավորումը լինի անընդհատ և կոմպլեքսա-
յին։ Հետևաբար անհրաժեշտ է մեկ ամբողջության մեջ շաղկապել թե՛ հետա-
զոտությունների անցկացումը, թե՛ փորձանմուշների մշակումը, թե՛ նոր տեխ-
նիկայի արմատավորումը արտադրության բնագավառում, կապիտալ ներ-
դրումներ նախատեսել ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական
առաջընթացի կոմպլեքսային ծրագրի արմատավորման համար։
Օգտագործելով ժողովրդական տնտեսության կենտրոնացած պլանային
կառավարման առավելությունները, սովետական պետությունն ապահովում է
հաստատուն և կիրառական գիտական հետազոտությունների լայն զարգացու-
մը։ Դա բացառիկ կարևոր նշանակություն ունի տեխնիկական առաջընթացի
համար։ Գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում հետագա հա-
ջողությունները պայմանավորված են, առաջին հերթին, արդի բնագիտության
առաջատար ուղղությունների նվաճումներով։ Մաթեմատիկայի, ֆիզիկայի,
քիմիայի, կենսաբանության զարգացման բարձր մակարդակը անհրաժեշտ
պայման է տեխնիկական, բժշկագիտական, գյուղատնտեսական և այլ գիտու-
թյունների արդյունավետությունը բարձրացնելու համար։
Ինչպես նշվել է ՍՄԿԿ XXIV համագումարում, գիտությունն արտադրու-
թյան հետ միացնող բարդ շղթայում առավել թույլն այն օղակներն են, որոնք
կապված են գիտության նվաճումների գործնական իրացման, մասսայական
արտադրության մեջ դրանց արմատավորման հետ։ Այդ տեսակետից դեռևս
բավարար չեն օգտագործվում սոցիալիզմի այնպիսի առավելությունները, ինչ-
պիսին ժողովրդական տնտեսության պլանաչափ կազմակերպումն է, դրա
կենտրոնացած կառավարումը, արտադրության նորարարների, ռացիոնալիզա-
տորների, գյուտարարների մասսայական շարժումը և այլն։
Ընթացիկ հնգամյակում նախատեսված է զարգացած սոցիալիստական
հասարակության առավելություններն ավելի լրիվ օգտագործել նոր հայտ-
նագործությունների ու գյուտերի ժողովրդատնտեսական արդյունավետության
անշեղ աճի համար։ Այդ խնդիրը լուծվում է նախ սոցիալիզմին հատուկ ար-
տադրության հետ գիտության կապի և միասնական տեխնիկական հետևողա-
կան քաղաքականության կենսագործմամբ։ Դրա համար բնորոշ է դառնում
առաջիկա տասնամյակների նկատմամբ գիտության ու տեխնիկայի զարգացում
կանխատեսող տվյալների ավելի լայն օգտագործումը. ծանրության կենտրոնի
տեղափոխումը սկզբունքորեն նոր, գիտատեխնիկական հեղափոխության ա-
ռաջացրած բարձրարտադրողական արտադրության միջոցներ մշակելու և
գործնականորեն արմատավորելու վրա. կոմպլեքսային մոտեցումը տեխնիկա-
կան որոշումներ ընդունելուն և այլն։ Ժողովրդական տնտեսության զարգաց-
ման իններորդ հնգամյա պլանում ավելի լրիվ է հաշվի առնվում արդի գիտա-
տեխնիկական կարողությունը, նոր տեխնիկայի արմատավորումը առավել
մեծ չափով է շաղկապվում կապիտալ ներդրումների համապատասխան պլան-
ների հետ։

Գիտությունն անմիջական արտադրաուժի վերածելու պրոցեսի խորացումը համառորեն թելադրում է գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունն ըստ նրա վերջնական արդյունքները որոշելու անհրաժեշտություն։ Այդ արդյունքներն ունեն երկակի բնույթ, որոնք արտահայտում են գիտության ու տեխնիկայի արտադրական և սոցիալ-տնտեսական ֆունկցիաների էական տարբերությունները։

Գիտատեխնիկական առաջընթացի արտադրական (կամ տեխնոլոգիական) ֆունկցիան արտադրության մեջ անմիջական աշխատանքին հաղորդում է այնպիսի գործունեության բնույթ, որը հիմնված է բնության ուժերը կառավարելու վերաբերյալ տվյալների վրա, նպատակ ունենալով բավարարելու հասարակության պահանջմունքները (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. II, стр. 110, 208)։ Գիտության հարաճուն հզորությունը և գիտատեխնիկական հեղափոխության ընթացքում արտադրության ցիենտիֆիկացումը (ուսուցանելը) այն բանի ցուցանիշն են, որ այժմ անընդհատ բնության առավել հզոր ուժեր են ի սպաս դրվում մարդուն։ Այդ հիման վրա արտադրանքի քանակն ավելանում է, իսկ որակը բարելավվում։

Սակայն գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունը չի կարող հանգեցվել բնության նկատմամբ մարդու վերաբերմունքը բնորոշելուն։ Արտադրության հասարակական բնույթն ընդգրկում է նաև մարդկանց միջև գոյություն ունեցող տնտեսական հարաբերությունները։ Այդ բանի շնորհիվ անհրաժեշտ է տեխնիկական առաջընթացի արդյունքների կոմպլեքսային բնութագիր, որը նկատի ունի այդ առաջընթացի սոցիալ-տնտեսական հետևանքները։ Գիտության ու տեխնիկայի հասարակական-տնտեսական ֆունկցիան ուղղակի և միջնորդավորող ներգործությունն է արտադրաուժերի սոցիալական տարրի՝ բուն աշխատողների, տեխնոլոգիական պրոցեսում նրանց դրության, աշխատուժի բնույթի ու մեծության, ինչպես նաև աշխատանքի ու արտադրության կազմակերպման վրա։ Այդ կապակցությամբ գիտատեխնիկական առաջընթացի սոցիալ-տնտեսական արդյունավետությունը սոցիալիզմի ժամանակ արտահայտվում է աշխատուժի բազմակողմանի զարգացման, աշխատանքի պայմանների բարելավման, հասարակական հարաբերությունների և հասարակության սոցիալական կառուցվածքի կատարելագործման, աշխատավորների բարեկեցության վերելքի, մարդկանց ֆիզիկական և բարոյական կատարելագործման մեջ։

Դրա հետ մեկտեղ, գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունը որոշելու համար բավական չէ գիտենալ միայն նրա արտադրական և սոցիալ-տնտեսական արդյունքները։ Որոշակի տեխնիկական միջոցների օգտագործման նպատակահարմարությունն ու շահավետությունը պարզ են դառնում միայն այն դեպքում, երբ նրանց արտադրության ու իրացման վրա կատարվող ծախսերը հաշվի են առնվում միաժամանակ։ Այդ պատճառով ամբողջ հասարակության մասշտաբով գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական արդյունավետությունը բնութագրվում է ազգային եկամտի հարաբերությամբ այն բոլոր ծախսերի հանդեպ, որ պահանջվում են գիտության և տեխնիկայի զարգացման ու արտադրության մեջ դրանց նվաճումների արմատավորման համար։ Գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական արդյունավետության բարձրացումն ուղղակի համամասնական է ազգային եկամտի աճի բացարձակ մեծությանը և հակադարձ համամասնական օգտակար արգասիք ստանալու



համար պահանջվող կենդանի աշխատանքի, արտադրամիջոցների և ժամանակի ծախսերին։

Հայտնի է, որ արտադրածախսերը և արդյունքները միշտ հանդես են գալիս որոշակի սոցիալ-տնտեսական ձևով։ Այսպես, սոցիալիզմի ժամանակ գիտության զարգացման նյութական պայմանները, տեխնիկական միջոցներն ու արտադրանքները, որոնք ստեղծված են պետական ձեռնարկություններում, համաժողովրդական սեփականության օբյեկտներ են։ Հասարակության գիտատեխնիկական հզորության ավելացումը և դրա արդյունավետության բարձրացումը բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, գիտատեխնիկական մտավորականության հասարակական մասշտաբով պլանաչափորեն կազմակերպված և կոոպերացված աշխատանքի արգասիքն է։ Բնական է, որ այդ համատեղ աշխատանքի հանրագումարային արտահայտությունը՝ ազգային եկամտի աճը, հասարակական ունեցվածք է, որ ծախսվում է հասարակության բոլոր անդամների ընթացիկ և հեռանկարային պահանջմունքների բավարարման համար։

Ի տարբերություն դրա, բուրժուական երկրներում մեքենաների, սարքավորման, նյութերի ձեռքբերման համար միջոցները հանդես են գալիս որպես մասնավոր սեփականատիրական կապիտալ։ Կապիտալիստներին են պատկանում նաև վարձու աշխատողների աշխատանքով ստեղծված արդյունքները։ Նոր տեխնիկայի արդյունավետությունն այստեղ բնորոշվում է նրա ձեռքբերման համար կապիտալ ծախսերի նկատմամբ շահույթների աճի համադրմամբ, այսինքն՝ արտահայտում է վարձու աշխատանքի շահագործման հաշվին բուրժուազիայի հարստացման աստիճանը։

Գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունը տնտեսական կատեգորիա է։ Այն ցույց է տալիս արտադրության այս կամ այն հասարակական եղանակի սոցիալ-տնտեսական արդյունավետությունը, արտադրաուժերի նկատմամբ արտադրահարաբերությունների ներգործության բնույթը, հնարավորություն է ընձեռում բացահայտելու կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի առավելությունները գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ավելի լրիվ օգտագործման հիման վրա հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում։ Այդ առավելությունները նախ արտահայտվում են այն բանում, որ գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետության բարձրացումը ծառայում է հասարակության անդամների շահերին։ Սոցիալիզմի ժամանակ այդպիսի առաջընթացով հատուցված արտադրաուժերի արագացված աճը օրգանապես զուգակցվում է աշխատունակ բնակչության լիակատար զբաղվածության և ռացիոնալ օգտագործման հետ։ Սոցիալիստական հասարակությունում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները աշխատավորների սեփականությունն են և գործադրվում են կոմունիստական շինարարության սոցիալ-տնտեսական խոշոր պրոբլեմների լուծման համար։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման համեմատ աճում է գիտության ու տեխնիկայի արդյունավետության նշանակությունը տնտեսական աճի բոլոր գործոնների մեջ։ Ի հաշիվ դրա 50—60-ական թվականներին մեր երկրում ապահովվեց ազգային եկամտի մինչև 40 տոկոս ընդհանուր աճ։ Այժմ գիտատեխնիկական հեղափոխությունը մեծ հնարավորություն է բացահայտում արտադրության նոր միջոցների արդյունավետության բարձրացման համար։ Դա սոցիալիստական հասարակությանը հնարավորություն է ընձեռում հաջողությամբ լուծելու սոցիալական խնդիրները։ Այսպես, որքան ավելի նշանակալի է գիտատեխնիկական նվաճումների արմատավորումից ստացվող օգուտը, հասարակությունն այնքան ավելի շատ միջոցներ կարող է առանձնացնել ծանր և չմեքենա-

յացված աշխատանքը վերացնելու, աշխատանքի ընդհանուր պայմանները բարելավելու համար։ Աշխատանքի պայմանների բարելավման նպատակով միջոցների իրականացումն իր հերթին կարևոր տնտեսական նշանակություն ունի. ավելի բարենպաստ նախադրյալներ են ստեղծվում աշխատանքի արդյունավետության վերելքի, աշխատողների աշխատունակությունը բարձրացնելու, իսկ հետևապես նաև նոր արտադրամիջոցների տնտեսական փոխհատուցումն ավելացնելու համար։

Սոցիալիզմի առավելություններից մեկն էլ այն է, որ այստեղ գիտատեխնիկական պրոցեսը լուծում է երկմիասնական խնդիրը՝ աշխատանքի խնայողությունը և նրա թեթևացումը։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսվում է արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հիման վրա հետևողականորեն կրճատել ձեռքի և ծանր, ինչպես նաև չորակավորված աշխատանքը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Նախատեսվում է էլ ավելի բարելավել աշխատանքի պայմանները, ձեռնարկությունները հագեցնել անվտանգության տեխնիկայի և աշխատանքի պաշտպանության արդիական միջոցներով։ Առաջարկվում է, որ նախագծվող ու կառուցվող ձեռնարկությունները օրինակելի լինեն աշխատանքի անվտանգության ու հիգիենայի տեսակետից և գերազանցեն հայրենական և արտասահմանյան գործող ձեռնարկությունները։ Հենց միայն 1971 թ. աշխատանքի պայմանների բարելավման վրա այնքան գումար է ծախսված, որքան չորրորդ և հինգերորդ հնգամյակները միասին վերցրած։ Այդ բանի շնորհիվ ընթացիկ տարում 1968 թ. համեմատությամբ արտադրական վնասվածության մակարդակը 35 տոկոսով ցածր էր։ Մեր երկիրն աշխարհի այն երկրների թվին է պատկանում, որտեղ արտադրական վնասվածության մակարդակն առավել ցածր է։

Իններորդ հնգամյակում գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական արդյունավետությունը նախ դրսևորվում է սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական կենսամակարդակի զգալի վերելքում։ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած սոցիալական միջոցառումների լայն ծրագիրը նախատեսում է, մասնավորապես, բարձրացնել բնակչության կուլտուր-տնտեսական մակարդակը, ավարտել ընդհանուր միջնակարգ կրթության անցնելը, ավելացնել աճող սերնդի դաստիարակության առանձնացվող միջոցները։ Գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների տիրապետող, բազմակողմանի զարգացած մարդու դաստիարակումը մեր հասարակության գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առաջընթացի կարևոր պայմաններից մեկն է։

●

Գիտության ու տեխնիկայի նվաճումներն արդյունավետ օգտագործելու պարտադիր պայմանը արտադրության մեջ արմատավորվող նոր տեխնիկայի խստապահանջ տնտեսական գնահատումն է։ Դրա համար գործադրվում են գիտատեխնիկական նվաճումների շահավետության աստիճանը բնորոշող մի շարք չափանիշներ։ Դրանք կոնկրետացվում են համապատասխան ցուցանիշներում, որոնց օգնությամբ հաշվի է առնվում արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների արմատավորումից ստացված արդյունքը։

Գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետության չափանիշներն արտահայտում են դրա բազայի վրա կատարվող հասարակական աշխատանքի խնայողության տարբեր տեսակներն ու կողմերը։ Այդ չափանիշներից կարևորագույնը բնորոշում է կենդանի աշխատանքի խնայողությամբ ստացվող օգուտի աստիճանը, օգուտ, որը գոյանում է արտադրության մեջ սարքավորման պրոգրեսիվ նմուշներ, բարելավված տեխնոլոգիա արմատավորելու շնորհիվ։ Կ. Մարքսը գտնում էր, որ «մեքենայի արտադրողականությունը չափվում է այն աստիճանով, որով նա փոխարինում է մարդկային աշխատուժը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 402)։ Այդ կապակցությամբ կարևոր է զանազանել մեքենայի արտադրողականությունը տեխնոլոգիական և Կ. Մարքսի մատնանշած տեխնիկական իմաստով։ Դրանցից առաջինի աճն արտահայտվում է ստացված արտադրանքի քանակի ավելացմամբ։ Այդ իրական օգուտ է բերում ոչ միշտ, այլ միայն այն ժամանակ, երբ խնայողության հետ միասին աշխատուժի ծախսը գերազանցում է այն ծախսերը, որոնք անհրաժեշտ են մեքենաների արտադրական ֆունկցիաների կատարելագործման համար։

Նոր տեխնիկայի արտադրողականությունը՝ դրա տնտեսական հասկացությամբ, արտահայտվում է մի շարք բնեղեն և արժեքային ցուցանիշներում։ Դրա մասին առավել ստույգ պատկերացում է տալիս մեքենայի լրիվ աշխատատարության ցուցանիշի (դրա ստեղծման համար կատարված աշխատաժամանակի բոլոր ծախսերի) համադրությունը դրա գործադրման ամբողջ ժամանակի ընթացքում աշխատողների՝ փոխարինված կենդանի ուժի, թվի հետ։ Ավելի կատարյալ մեքենաների գործադրումից արժեքային ձևով ստացված արդյունքն արտահայտվում է կենդանի ուժի տնտեսման հաշվին արտադրանքի էժանացման մեջ։

Տեխնիկայի օգտագործման նոր հասարակական եղանակը կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի արմատական առավելությունների ծնունդն է։ Սոցիալիզմի օրոք մեքենաների գործադրումը շահավետ է, եթե դրանց ստեղծման ու յուրացման վրա կատարված ծախքերը ավելի պակաս են այն ամբողջ (անհրաժեշտ և հավելյալ) աշխատանքի քանակից, որը փոխարինվում է դրանց արմատավորման շնորհիվ։ Կապիտալիստական հասարակությունում մեքենան գործադրվում է միայն այն ժամանակ, երբ այն բանվորին ստիպում է իր աշխատաժամանակի ավելի զգալի մասը բանել կապիտալիստի համար։ Դրա հետևանքով նվազագույնի է հանգեցվում որոշակի առարկայի արտադրության համար անհրաժեշտ աշխատանքի քանակը, բայց միայն նրա համար, որպեսզի նման առարկաների առավելագույնի մեջ իրացնի հավելյալ աշխատանքի առավելագույնը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. II, стр. 209)։

Աշխատանքի արտադրողականության ցուցանիշը առանձին կարևոր նշանակություն է ձեռք բերում գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, հեղափոխություն, որը, կոմպլեքսային մեքենայացման և հատկապես արտադրության ավտոմատացման շնորհիվ, նախ բնորոշվում է կենդանի աշխատանքի հսկայական խնայողությամբ։ Մեծ օգուտներ են տալիս, օրինակ, նորագույն ավտոմատիկ գործիքները, որոնք աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում են 3—4 և ավելի անգամ։

Կենդանի աշխատանքի տնտեսման հետ մեկտեղ արդի գիտատեխնիկական առաջընթացը ոչ պակաս չափով ապահովում է հասարակական աշխատանքի խնայողությունը։ Ինչպես հայտնի է, ներկայումս նյութական ծախսերը կազմում են հասարակական արտադրանքի ինքնարժեքի 50 տոկոսից, իսկ արդյունաբերական արտադրանքի մեջ՝ 75 տոկոսից ավելին։ Արտադրանքի նյութատարողության միայն 1 տոկոսով իջեցումը հնարավորություն է ընձեռում ազգային եկամուտն ավելացնելու 3—4 մլրդ ռուբլով։ Ուստի, ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունը գնահատելիս բավական չէ սահմանափակվել կենդանի աշխատանքի տնտեսման չափանիշով։ Հարկավոր է կիրառել առարկայացած աշխատանքի տնտեսման աստիճանը բնորոշող այլ չափանիշ ևս։ Այն արտահայտվում է նյութատարողության (արտադրանքի մեկ միավորի հաշվով հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի

ծախսերի մեծության), ֆոնդատարողության (արտադրանքի միավորի հաշվով հիմնական արտադրաֆոնդերի ծախսերի մեծության), ինչպես նաև մեքենաների հարաբերական էժանացման (արտադրանքի միավորի հաշվով ամորտիզացիոն պահումների մեծությունը պակասեցնելու) ցուցանիշներում։

Գիտատեխնիկական առաջընթացի ներգործությամբ տեղի է ունենում մեքենաների արժեքի մեծության բացարձակ նվազում, որ տարածվում է պատրաստի արտադրանքի մեկ միավորի վրա (ամորտիզացիոն պահումներ)։ Կ. Մարքսը մեքենաների արտադրողականության մասին՝ վերջինի տնտեսական իմաստով, գրել է. «Որքան ավելի պակաս արժեք են հաղորդում դրանք արտադրանքին, այնքան ավելի արտադրողական են և այնքան ավելի են իրենց ծառայությամբ մոտենում բնության ուժերին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 401)։ Այդպիսի արդյունքն ինչպես մեքենաների էժանացման, այնպես էլ դրանց տեխնոլոգիական արտադրողական աճի արդյունք է։

Տեխնիկական պրոգրեսի ընթացքում, որպես կանոն, բարդանում է մեքենաների կառուցվածքը և դրա հետևանքով դրանք թանկանում են։ Իսկ նոր տեխնիկայի արդյունավետությունն արտահայտվում է դրա հարաբերական էժանացման՝ արժեքի նվազման մեջ, ինչպես արտադրանքի ֆիզիկական միավորի (մեկ հաստոցի, ավտոմեքենայի, մեկ տոննա ձյութի և այլն) հաշվով, այնպես էլ առանձնապես սովորական սպառման պայմաններում արտադրանքի սպառողական արդյունքն արտացոլող օգտակարության միավորի (կարողության միավորի, մեքենայի արագության և այլն) նկատմամբ։ Տեխնիկայի արժեքի հարաբերական նվազման մասին Կ. Մարքսը գրել է. «Մեքենաների հարաբերական էժանություն ասելով ես հասկանում եմ իրերի այնպիսի մի դրություն, երբ գործադրվող մեքենաների զանգվածի բացարձակ արժեքը մեծանում է, բայց ոչ այն չափով, որքանով մեծանում են այդ մեքենաների զանգվածը և դրանց արդյունավետությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 26, ч. III, стр. 228)։

Գիտատեխնիկական հեղափոխությունը կյանքի է կոչում աշխատանքի այնպիսի գործիքներ, որոնք վերջինների աճող արժեքի համեմատությամբ ապահովում են տեխնոլոգիական արտադրողականության գերազանցող աճ։ Օրինակ, բազմահաստոցներով նավի թիավարող պտուտակի պատրաստման համար պահանջվում է 200—300, իսկ թվածրագրային կառավարում ունեցող հաստոցների օգտագործման դեպքում՝ 30—40 հաստոց-ժամ։ Եվ, թեպետ ծրագրային կառավարում ունեցող (ծրագրումը հաշվի առնելով) հաստոցի աշխատանքի մեկ ժամի արժեքը 2,5—3 անգամ բարձր է սովորական հաստոցի աշխատանքի արժեքից, ավելի ձեռնտու է թիավարող պտուտակ պատրաստել առավել արտադրողական ժամանակակից սարքավորմամբ։

Այսպիսով, նոր արտադրամիջոցների արդյունավետությունը որոշելիս անհրաժեշտ է կիրառել այնպիսի չափանիշների ու ցուցանիշների սիստեմ, որոնք բնորոշում են կենդանի և առարկայացած աշխատանքի տնտեսումը։ Այդ նպատակին է հիմնականում համապատասխանում կապիտալ ներդրումների արդյունավետության տիպային մեթոդիկան (1970 թ. լույս տեսավ երկրորդ, նրա վերամշակված հրատարակությունը)։ Այն նախատեսում է նոր տեխնիկայի վրա կատարված միաժամանակյա ծախսերի (կապիտալ ներդրումների) համեմատելիությունը դրա գործադրման ոլորտում կատարված ընթացիկ ծախսերի հետ։ Այդպիսի համեմատության համար կիրառվում են արդյունավետության լայնորեն տարածված ցուցանիշները՝ փոխհատուցելիության ժամկետը, արդյունավետության գործակիցը, գործադրման հետ կապված ծախսերը։



Փոխհատուցելիության ժամկետն այն ժամանակն է, որի ընթացքում նոր տեխնիկայում կատարված լրացուցիչ կապիտալ ներդրումները հատուցում են դրա օգնությամբ ստացված լրացուցիչ շահույթները։ Արդյունավետության գործակցի փոխհատուցելիության ժամկետի հակադարձ մեծությունը ցույց է տալիս, թե որքան շուտ է հատուցվում ազգային եկամտի այն մասը, որը ծախսված է արտադրության լրացուցիչ միջոցների վրա։ Գործադրված ծախսերն ստացվում են արտադրանքի ինքնարժեքը կապիտալ ներդրումների այն մեծությանը գումարելու հետևանքով, որն ընկնում է տվյալ ժամանակաշրջանին՝ նրանց հատուցելիության ժամկետի հաշվառումով։

Նոր արտադրամիջոցների արդյունավետությունը որոշելու գործում էական դեր է խաղում այն չափանիշը, որը բնորոշում է հասարակական մասշտաբով աշխատանքի տնտեսումը ինչպես այդ միջոցներն սպառողի, այնպես էլ դրանք արտադրողների կողմից։ Կ. Մարքսն ընդգծում էր նոր տեխնիկայի օգտակարությանը կոմպլեքսային մոտեցում ունենալու անհրաժեշտությունը։ Նա Կապիտալում գրել է, որ խոշոր արդյունաբերությունը, արտադրապրոցեսի համար տիրանալով բնության վիթխարի ուժերին և բնագիտությանը, պետք է չափազանց բարձրացներ աշխատանքի արտադրողականությունը, բայց ամենևին էլ պարզ չէ, թե արտադրաուժերի այդ բարձրացումը մի ուրիշ տեղ գընվո՞ւմ է արդյոք աշխատավարձի բարձրացումով (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 398)։

Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հիման վրա սոցիալիզմի ժամանակ ստեղծվում են արտադրության այնպիսի առարկայական պայմաններ, որոնք տնտեսական օգուտներ են տալիս թե՛ արտադրողներին, թե՛ սպառողներին։ Օրինակ, 1 մլն խմ փայտատաշեղյա սալիկների արտադրության համար պահանջվում են 7,5 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, իսկ համարժեքային քանակի սղոցանյութերի արտադրության համար՝ 12,5 մլն ռուբլի, 1 խմ փայտատաշեղյա սալիկը կազմում է 70, իսկ դրանց փոխարինող 2,5 խմ սղոցանյութերը՝ 87 ռուբլի։ Մեծ օգուտ են ստանում նաև փայտատաշեղյա սալիկներ սպառողները։ Դրանց օգտագործումը, օրինակ, հատակը սալարկելիս, հնարավորություն է ընձեռում խիստ կրճատելու ձեռքի աշխատանքի ծախսումները։

Գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետության այդ մասնավոր ցուցանիշները չեն կարող կիրառվել ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով այդպիսի արդյունավետություն որոշելիս։ Դրա համար հարկավոր է ամփոփիչ ցուցանիշ։ Որպես այդպիսին, մեր կարծիքով, կարող է հանդիսանալ ազգային եկամտի աճի ցուցանիշը այն միջոցների աճի 1 ռուբլու նկատմամբ, որոնք հատկացվում են գիտության, տեխնիկայի զարգացմանը և արտադրության բնագավառում դրանց նվաճումների արմատավորմանը։ Նպատակահարմար է այդ ցուցանիշը համադրել արտադրության արդյունավետության՝ նրան նման ցուցանիշների այն միջոցների աճի 1 ռուբլուն ընկնող ազգային եկամտի աճի հետ, որոնք հատկացվում են ընդլայնած վերարտադրությանը (արտադրաֆոնդերին և աշխատավարձի ֆոնդին)։ Այդպիսի համադրությունը հնարավորություն է ընձեռում գիտության ու տեխնիկայի վրա կատարված ծախսերի մեծացումից ստացվող արդյունքը տեսնել անմիջականորեն արտադրության ոլորտում։

Սոցիալիզմի կարևոր առանձնահատկությունն ու առավելությունն այն է, որ այստեղ հնարավոր է ժողովրդատնտեսական մոտեցումը գիտատեխնիկա-

կան առաջընթացի տնտեսական արդյունավետությունը որոշելու հարցում: Ժողովրդատնտեսական արդյունքի հաշվարկը կազմում է ձեռնարկությունների կողմից ստացվող տնտհաշվարկային արդյունքը (նոր տեխնիկայի վրա կատարված ծախսերի աճի նկատմամբ շահույթների աճի համադրությունը) որոշելու հիմքը: Սոցիալիզմի պայմաններում նոր տեխնիկա ընտրվում է ելնելով ժողովրդատնտեսական այնպիսի արդյունքից, որը աշխատանքի և նյութական միջոցների տնտեսում է նախատեսում գիտատեխնիկական առաջընթացի հանրագումարում: Այդ տնտեսումը պետք է ստանան ինչպես արտադրող-ձեռնարկությունները, այնպես էլ նոր տեխնիկան որպես լրացուցիչ շահույթ ստացող սպառող-ձեռնարկությունները:

Տնտեսական ռեֆորմի ընթացքում ստեղծվող սոցիալիստական տնտեսավարման նոր մեխանիզմը կոչված է նպաստելու այն բանին, որ արտադրության առաջավոր միջոցները արտադրող-ձեռնարկություններին և սպառող-ձեռնարկություններին զգալիորեն ավելի մեծ օգուտ բերեն արտադրության փոխարինվող միջոցների համեմատությամբ: Դրանով հենց զուգակցվում են հասարակության և տնտհաշվարկային ձեռնարկությունների շահերը, ուժեղանում է նրանց շահագրգռվածությունը գիտատեխնիկական առաջընթացի զարգացման գործում:

Գիտության ու տեխնիկայի արդյունավետության բարձրացումը, վերջին հաշվով պայմանավորված է ժողովրդական տնտեսության բոլոր աշխատողների ստեղծագործական, անձնվեր աշխատանքով: Այդ բանում կարևոր դեր է խաղում սոցիալիստական մրցության ծավալումը՝ գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու և հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար:

Հետաքրքրական է, օրինակ, Դոնեցկի մարզի առաջավոր ածխահանքերի, ածխի մեքենաշինական գործարանների, գիտահետազոտական և նախագծակոնստրուկտորական ինստիտուտների կոլեկտիվների նախաձեռնությունը: Նրանք իրենց ջանքերը միավորել են ածխարդյունաբերությունն արագությամբ վերազինելու և այդ հիման վրա ածխահանքերի աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշներն զգալիորեն բարելավելու համար: 1971 թ. կենսագործվեց 300-ից ավելի համատեղ կոմպլեքսային պլաններ՝ 17 մլն ռուբլի նախատեսող աշխատանքների ծավալով և մոտ 100 մլն ռուբլու տնտեսական արդյունքի սպառումով: Այժմ այդ աշխատանքներն էլ ավելի մեծ թափով են տարվում:

Վերջին ժամանակներս ՍՄԿԿ Կենտկոմն ընդունել է մի շարք որոշումներ, որոնցում բարձր գնահատական է տրվում ղեկավարման նոր, առաջավոր մեթոդներին, առաջավոր նախաձեռնություններին, որոնք ուղղված են գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը և դրա արդյունավետության բարձրացմանը: Այդ որոշումները նպաստում են սովետական մարդկանց մոբիլիզացմանը գիտության, տեխնիկայի նվաճումներն ու առաջավոր փորձը արտադրության մեջ արմատավորելու համար մղվող պայքարում:

«Политическое самообразование», 1972, № 11.

---

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

## ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

ՌԿԿ Կենտկոմի անունից կոնֆերանսին ուղղված ողջույնով հանդես եկավ Անդրեևը: «Վերջին ժամանակներս,— ասում էր նա իր ելույթում,— հաճախ խոսքեր, չափազանց տարածված խոսքեր են լսվում մեր կուսակցության խոր ճգնաժամի մասին: Մեզ թվում է, որ մեր կուսակցությունը այդպիսի խոր ճգնաժամ չի ապրում: Իհարկե, մեր թշնամիները ձգտում են չափազանցնել մեր կուսակցության հիվանդության առանձին կողմերը, փորձում են աղճատել դրանք...»[1]:

Տարօրինակ էին հնչում Կենտկոմի ներկայացուցչի այդ «հանգստացուցիչ» խոսքերը: «Բանվորական օպոզիցիան», տրոցկիստները, «դեցիստները» քայքայիչ ֆրակցիոն աշխատանք էին կատարում կուսակցության ներսում: Լենինը հարկադրված էր թե՛ բանավոր, թե՛ մամուլում հաճախ հանդես գալ այն «պլատֆորմների» քննադատությամբ, որ այն ժամանակ Տրոցկին, Բուխարինը, Շլյապնիկովը և մյուսները փաթաթում էին կուսակցության վզին: «Պրավդա»-ում տպագրված իր հոդվածներից մեկը Լենինն ուղղակի հենց այդպես էլ անվանեց՝ «Կուսակցության ճգնաժամը»: Լենինի կողմից հարցի այդպիսի սուր դրումը տագնապ էր առաջացնում և համապատասխանորեն մոբիլիզացնում էր կուսակցության անդամներին՝ պաշտպանելու լենինյան գիծը օպոզիցիայի դեմ մղվող պայքարում:

Իսկ այստեղ հանկարծ մի այդպիսի անհասկանալի «հանգստացում»... Երբ առաջարկություն եղավ մեր կոնֆերանսի անունից ողջույն ուղարկել Կենտրոնական կոմիտեին, ես առաջարկեցի այդ ողջույնի մեջ «անցկացնել այն միտքը, թե կուսակցության Կենտկոմի ապրած ճգնաժամը կվերացվի X համագումարում»[2]: Առաջարկությունն ընդունվեց:

Կոնֆերանսում լսվեցին կուսակցության նահանգային կոմիտեի, նահանգային վերստուգիչ և վերահսկիչ հանձնաժողովների հաշվետվությունները, ինչպես նաև զեկուցում կոմերիտմիության նահանգկոմի աշխատանքի մասին:

Սկսվեց մտքերի փոխանակություն: Առաջինն ամբիոն բարձրացավ նահանգկոմի անդամ Սավելևան: «Ընկեր Պոպովը,— հայտարարեց նա,— չլուսաբանեց, որ նահանգկոմում գոյություն ունեն խմբավորումներ, որոնք հիվանդագին կերպով են անդրադառնում աշխատանքի վրա... Մեզ մոտ չկա ընկերական մթնոլորտ, ընկերական վստահություն... Այս բոլոր աննորմալությունները վերացնելու համար պետք է վերընտրել նահանգկոմը...»[3]:

Ելույթ ունեցողների մեծ մասը քննադատում էր նահանգկոմի ղեկավարությանը անգործության, խմբավորումների համար:

Նահանգկոմի պրակտիկ գործունեության նկատմամբ իր վերաբերմունքը բոլորից ավելի սուր կերպով բնորոշեց 1907 թվականից կուսակցության անդամ, սորմովցի Սերգեյ Կորշունովը, որը երկար ժամանակ բացակայել էր Սորմովոյից, իսկ հիմա վերադարձել էր և այնտեղ ղեկավարության մեջ գտել «բանվորական օպոզիցիայի» որջը: «Երբ ես Սորմովո եկա, ասաց նա, ապա համոզվեցի, որ կազմակերպությունը շատ խիստ է փոխել իր դեմքը՝ նա նման չէ կոմունիստական կազմակերպության»[4]:

Այո, իրոք Սորմովոյի վերնախավը վճռականորեն հանդես էր գալիս կուսակցության լենինյան գծի դեմ, բայց բանվոր-կոմունիստների մասսաները ճզմեցին օպոզիցիային:

---

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» № 11, 1972 թ.:

1 ПАГО, ф. 1, оп. 1, д. 1181, л. 4.

2 Նույն տեղը, բ. 15:

3 Նույն տեղը, բ. 39:

4 Նույն տեղը, ֆ. 1, ց. 1, գ. 1181, բ. 53:

«Տասի պլատֆորմը» պաշտպանող Ժեխանովի զեկուցումից հետո հանդես եկավ Անդրեևը: Նա ագիտացիա էր մղում Տրոցկու թեզիսների օգտին, քննադատության ենթարկելով լենինյան «տասի պլատֆորմը»: Անդրադառնալով «տասի» հայացքներին, նա ասում էր, որ «տասի» պլատֆորմը ոչ մի խնդիր չի դնում արհեստակցական միությունների առջև, այդ պլատֆորմը կլինի այն ծակծկված տոպրակը, որից X համագումարից հետո նորից դուրս կընկնի արհեստակցական միությունների խնդիրների վերաբերյալ հարցը: Իսկ մենք մատնանշում ենք արհմիությունների կոնկրետ խնդիրները: Երբ «տասի» պլատֆորմը մոտենում է խնդրի լուծմանը, նա ասում է, որ սկզբունքորեն պետք է արտահայտվել աշխատուժի հաշվառումը, բաշխումը արհմիությունների ձեռքը հանձնելու օգտին: Սկզբունքորեն մենք վաղուց գիտեինք, թե ինչ պետք է անել, բայց ամբողջ հարցն այն է, որ պետք է անել իրականում...

Այստեղ խոսում են այն մասին, թե արհմիությունը կոմունիզմի դպրոց է բանվորական մասսաների համար, բայց դա բավական չէ: Այստեղ պետք է լինեն կոնկրետ կարգադրություններ, հարկավոր է կոմունիստների դպրոցին որոշակի խնդիրներ տալ...»[1]:

Հետո սկսեցին հանդես գալ «բանվորական օպոզիցիայի» ներկայացուցիչները: Որպես նրանցից առավել գրագետն ու փորձվածը, զեկուցեց Ձեռնովը. երկար ճառով հանդես եկավ Չելիշևը (նրանք երկուսով էլ ստորագրել էին Շլյապնիկովի պլատֆորմը): Մի քիչ խառնաշփոթ ելույթ ունեցավ Իշչենկոն. նա կարծես թե հարում էր «տասի պլատֆորմին», բայց առաջարկում էր նրա մեջ մի քանի ուղղումներ մտցնել Շլյապնիկովի դիրքավորման ոգով: Սակայն, որպես հռետոր, Իշչենկոն զարմանալի ընդունակություն ուներ ունկնդիրներին գրավելու իր կողմը:

Ճառեր արտասանվեցին նաև ի պաշտպանություն «տասի պլատֆորմի». հանդես էին գալիս գլխավորապես բանվորներից ելած շարքային կոմունիստները...

Ես ինքս չէի շտապում հանդես գալ, վճռելով սպասել և լսել, թե ինչի մասին պիտի խոսեն մյուս պլատֆորմների ներկայացուցիչները: Պետք է ասել, որ այդ ժամանակ ես արդեն հիմնավորապես ծանոթացել էի Լենինի «Դարձյալ արհմիությունների, ընթացիկ մոմենտի և Տրոցկու ու Բուխարինի սխալների մասին» բրոշյուրին, ուստի և, հանդես գալով դիսկուսիայում, բավականին վստահ էի զգում ինձ:

Սկսեցի այն բանից, որ արհմիությունների հարցը այս դիսկուսիայում, այս պայքարում գլխավորը չէ:

Հիմնականը դասակարգերի միջև ճիշտ հարաբերությունների հաստատումն է, պրոլետարիատի դիկտատուրայի և մեր կուսակցության դերի ամրապնդումը:

Ցրակցիոներները, ասում էի ես, ձգտում են իշխանության, կուսակցությունը հրելով դեպի պառակտում: Ուստի, իմ ելույթում ավելի մեծ տեղ գրավեց Շլյապնիկովի ու Տրոցկու պլատֆորմների քննադատությունը: Ես վիճարկում էի մյուս ուղղությունների զեկուցողների փաստարկները, ապացուցելով դրանց սնանկությունը: Շոշափեցի նաև մեր կոնֆերանսում արտասանած մի քանի ճառեր, մասնավորապես Իշչենկոյի ելույթը, որը փորձում էր, թեև շատ անհետևողական կերպով, բայց այնուամենայնիվ մի տեսակ մոտ լինել «տասի պլատֆորմին»...[2]:

Բավականին վառ ելույթ ունեցավ հին կոմունիստ Զալկինդը, ջախջախելով արհմիությունների վերաբերյալ Տրոցկու հայացքները:

«Արհմիությունների վերաբերյալ վեճը,— ասաց նա,— ոչ այլ ինչ է, քան դիմակավորում, որը պետք է բացահայտել: Լենինը ճիշտ է նշել, որ մենք ճգնաժամ ենք ապրում և այն էլ ճգնաժամ կուսակցության դրության մեջ... Եթե Տրոցկին ձայների փոքրամասնություն է ստանում, ապա դա հասկանալի է. մեր կուսակցական մասսաները հասկանում են բանի էությունը, և Անդրեևը որքան էլ լավ խոսքեր ասի Տրոցկու պլատֆորմի առթիվ, նա, այնուամենայնիվ, փոքրամասնություն կստանա, իսկ ահա այն, ինչ Լենինն է ասում, բոլորի համար էլ ընդունելի է...

Ինձ թվում է, որ... արհմիությունները նման են հոգնած ճամփորդի: Ի՞նչ է հարկավոր անել այդ ճամփորդին օգնելու համար: Տրոցկին նրան առաջարկում է մի բաժակ թունդ կվաս... Շլյապնիկովն առաջարկում է մի բաժակ ոգելից խմիչք, և, եթե նա խմի, ապա առաջին պահ կգնա զըվարթությամբ արագությամբ: Իսկ Լենինն առաջարկում է մի բաժակ ամենամաքուր ջուր: Այնպես որ, Անդրեև, թեև դուք քացախով լի բաժակի մեջ շատ շաքար եք գցել, բայց հոգնած ճամփորդին այն ընդունել չի կարելի: Դա չի բուժի

---

[1] Նահանգային XI կոնֆերանսի սղագրական հաշվետվության մեջ Անդրեևի այդ ելույթը չի պահպանվել, ուստի այն մեջ եմ բերում ըստ «Նիժեգորոդսկայա կոմունա» թերթի 1921 թվականի փետրվարի 24-ի, № 42-ի:

[2] Իմ ելույթի տեքստը, դժբախտաբար, չի պահպանվել նահանգային XI կուսկոնֆերանսի սղագրական հաշվետվության մեջ (ինչպես և Անդրեևի ելույթի տեքստը):



նրա հիվանդությունը»[1],— դահլիճի ծիծաղի տակ հայտարարեց Զալկինդը:

Անդրեևը չդիմացավ և նորից հանդես եկավ: «Այստեղ խոսում են թափահարման մասին[2]: Տրոցկու պլատֆորմում ոչ մի թափահարում էլ չկա,— հայտարարեց Անդրեևը:— Տրոցկին ոչ մի նոր օպոզիցիա չի առաջարկում: Այստեղ մատնանշում էին, որ մենք ունենք առանձին կտորտանքներից կազմված օպոզիցիա: Դա նույնպես ճիշտ չէ»:

Ինչ-որ պատճառով Անդրեևը գլխավոր հարվածն ուղղեց Իշչենկոյի դեմ, որը, ինչպես ես արդեն ասացի, փորձում էր հարել լենինյան գծին: «...Ընդհանրապես Իշչենկոյի մասին կարելի է ասել,— նշեց Անդրեևը,— որ նա հետևողական չէր. սկսել է անբարեհաջող նավարկությամբ, որտեղ նա կարող է հեշտությամբ խորտակվել: Նա պաշտպանում է «տասի պլատֆորմը» և միևնույն ժամանակ խոսում է մի ինչ-որ նոր բանի մասին. այժմ նա լողում է դեպի «տասի պլատֆորմը», բայց Միկոյանն ասում է, որ դուք, Իշչենկո, չեք հարել այդ պլատֆորմին՝ որպես ձեր ափի: Իշչենկոյի ճակատագիրն անհուսալի է»[3]:

Մոտեցավ քվեարկության ժամանակը: Պետք էր պարզել, թե ո՞ր պլատֆորմի օգտին է արտահայտվելու Նիժնի Նովգորոդի նահանգային կազմակերպությունը: Այդ պահը հուզիչ էր: Դահլիճում կար վճռական ձայն ունեցող 140 պատգամավոր: Քանի՞ ձայն կստանա պլատֆորմներից յուրաքանչյուրը:

Լենինի պլատֆորմի օգտին ձեռք բարձրացրին 72 պատգամավոր՝ կեսից քիչ ավելի: «Բանվորական օպոզիցիայի» օգտին տրվեց 22 ձայն: Տրոցկու դիրքի օգտին՝ ընդամենը 7-ը: Իսկ ի՞նչ դիրք բռնեցին մնացած 39 հոգին, այսինքն՝ բոլոր պատգամավորների քառորդ մասը: Նրանք ձեռնպահ մնացին իրենց դիրքը որոշելուց: Ինչ-որ չափով դա նույնիսկ ուրախացնում էր մեզ. չէ՞ որ ձեռնպահ մնացածների մեծ մասը գավառային կոնֆերանսներում պաշտպանում էին «բանվորական օպոզիցիային»: Ուրեմն, մեզ հաջողվել է նրանց պոկել շլյապնիկովականներից, բայց նրանք դեռևս չկարողացան հստակորեն որոշել իրենց դիրքը:

Իսկ մեր գլխավոր հաղթանակը լենինյան գծի 72 կողմնակիցներն էին: Դա երկուս և կես անգամ ավելի էր, քան կարողացան հավաքել թե՛ տրոցկիստների, թե՛ շլյապնիկովականների մյուս երկու պլատֆորմները: Քվեարկության այսպիսի արդյունքները կոտրեցին Շլյապնիկովի դիրքավորման ջատագովների անբարտավանությունը. նրանք քայլում էին ինչպես քոթակվածներ:

Կոնֆերանսը գործարար մթնոլորտում քննարկեց նաև մյուս հարցերը՝ «Տնտեսական շինարարության խնդիրների մասին» (Վորոբյովի զեկուցումը, «Ցանքի կամպանիայի մասին» (Տերի զեկուցումը), «Կուսակցական շինարարություն» (Ժեխանովի զեկուցումը), «Կուսակցության և քաղլուսի ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը» (Միկոյանի զեկուցումը):

Այնուհետև պետք է տեղի ունենային նահանգկոմի և համառուսաստանյան X կուսհամագումարի պատգամավորների ընտրությունները:

Ինչպես սովորաբար, կոնֆերանսում կատարվելիք ընտրություններին նախորդեց՝ այսպես կոչված՝ «սինիորեն կոնվենտի»[4] նիստը, որի մեջ մեզ մոտ այն ժամանակ մտնում էին յուրաքանչյուր շրջանի և գավառի պատգամավորությունից երկուական ներկայացուցիչ (անկախ միավորվող կոմունիստների թվից):

Ինչպես և միշտ, «սինիորեն կոնվենտի» նիստում տեղի էր ունենում նահանգկոմի նոր կազմում առաջադրվածների, ինչպես նաև համառուսաստանյան կուսակցական համագումարի պատգամավորների թեկնածությունների նախնական քննարկում, որից հետո նահանգկոմի կազմի թեկնածուների և համագումարի պատգամավորների ցուցակը «սինիորեն կոնվենտի» անունից հանձնվում էր կոնֆերանսի վերջնական քննարկմանն ու լուծմանը:

Եվ այստեղ մենք Իկոննիկովի հետ լուրջ տակտիկական սխալ թույլ տվեցինք (հասկանալով դա միայն հաջորդ օրը):

Բավարարված լինելով այն բանով, որ կոնֆերանսը սուր պայքարից հետո տպավորիչ մեծամասնությամբ պաշտպանեց լենինյան պլատֆորմը և հավանություն չտվեց նահանգկոմի հին կազմի աշխատանքին, ես որոշեցի չմասնակցել «սինիորեն կոնվենտի» աշխատանքին, թեպետև դրա համար իրավունք ունեի որպես կոնֆերանսի նախագահության անդամ: Ինձ անհարմար էր թվում նահանգկոմի ապագա կազմը որոշելիս մասնակցել իմ թեկնածության քննարկմանը: Այդպես վարվեց նաև Իկոննիկովը, որի մասին ես, ճիշտն ասած, այն ժամանակ չգիտեի:

Դա սխալ էր: Դեր խաղաց, ըստ երևույթին, մեր անփորձությունն այդ կարգի գործերում:

---

[1] ПАГО, ф. 1, оп. 1, д. 1181, лл. 119—120.

[2] Խոսելով արհմիությունների ճգնաժամի մասին, Տրոցկին առաջարկում էր «թափահարել» դրանց, նրանց ղեկավարության գլուխ կանգնեցնել այնպիսի մարդկանց, որոնք ունակ լինեն «ձգելու պնդօղակները», ուղղակի վարչարարության մեթոդներ մտցնել մասսաների հետ կատարվող աշխատանքում:

[3] ПАГО, ф. 1, оп. 1, д. 1181, л. 129.

[4] Այժմ դա կոչվում է «ավագների խորհուրդ»:

...Մինչդեռ այդ ժամանակ նահանգկոմի հին կազմի ղեկավարները բոլոր թույլատրելի և անթույլատրելի միջոցներով սողոսկել էին «սինիորեն կոնվենտի» նիստը և, անձամբ լավ ճանաչելով այդ նիստի մասնակից բոլոր պատգամավորներին, ինչպես և օգտվելով մեր բացակայությունից, կարողացել էին անցկացնել նահանգկոմի նոր կազմի «իրենց» թեկնածուների ցանկալի ցուցակը՝ առանց որևէ չափով հաշվի առնելու անցած դիսկուսիայում նրանց գրաված քաղաքական դիրքը:

Այս բոլորի մասին ես իմացա Անդրեևից միայն հաջորդ օրը վաղ առավոտյան: Նա եկավ իմ բնակարանը, բարևեց, նստեց և անսպասելիորեն ասաց.

— Դե՛, քո երգը երգված է: Նիժնիում դու այլևս անելիք չունես: Երեկ երեկոյան սինիորեն կոնվենտում ձայների մեծամասնությամբ քեզ և Իկոննիկովին տապալեցին նահանգկոմի կազմում առաջադրելիս: Հավաքի՛ր փասա-փուսադ և գնա:

Դա խիստ զայրացրեց ինձ.

— Ո՛չ մի տեղ էլ ես չեմ գնա: Ինձ այստեղ է ուղարկել կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ես այստե՛ղ էլ աշխատելու եմ: Ես ինչո՞ւ պետք է հեռանամ:

Հենց որ Անդրեևը դուրս եկավ, ես զանգահարեցի Իկոննիկովին, Բուսարևին ու Կոմիսարովին և խնդրեցի շտապ անցնել ինձ մոտ:

Երբ նրանք եկան, Բուսարևը, որը եղել էր «սինիորեն կոնվենտի» նիստում, մանրամասնորեն պատմեց այն իրադրության մասին, որի մեջ տեղի էին ունեցել նահանգկոմի նոր կազմի թեկնածուների առաջադրումն ու քննարկումը: Հիշում եմ, որ նա առանձնապես զայրացած էր, քանի որ Քաղաքային շրջանը (որը նա ներկայացնում էր «սինիորեն կոնվենտում»), որ միավորում էր նահանգի բոլոր կոմունիստների 40 տոկոսին, «կոնվենտում» ուներ երկու ձայն և այդքան ձայն էլ ունեին այն գավառները, որոնք միավորում էին նահանգային կազմակերպության ոչ ավելի քան երկուսից-երեք տոկոսին: Դա ստիպել էր նրան հայտարարել, որ Քաղաքային շրջանը կոնֆերանսում հանդես է գալու նահանգկոմի անդամության թեկնածուների իր ցուցակով՝ անկախ այն ցուցակից, որ առաջարկելու է «սինիորեն կոնվենտը»:

Քննարկելով մեր գործողությունների պլանը, մենք որոշեցինք շտապ կապվել կոնֆերանսի առավել ազդեցիկ պատգամավորների՝ լենինյան պլատֆորմի կողմնակիցների հետ և պարզաբանել նրանց, որ, նահանգկոմ ընտրելով «սինիորեն կոնվենտի» առաջարկած ցուցակով, նրանք դրանով իսկ կոնֆերանսի սկզբունքորեն ճիշտ որոշումների կատարումը կհանձնարարեն այնպիսի մարդկանց, որոնց քաղաքական դիրքերը դատապարտվել են այդ նույն կոնֆերանսի կողմից: Քանի որ այդպիսի դրության անհեթեթությունն ակներև էր, նրանք կոնֆերանսի պատգամավորների հետ անհատապես զրուցելիս այս բոլորը պետք է պարզաբանեն ինչպես Լենինի պլատֆորմի կողմնակիցներին, այնպես էլ հատկապես նրանց, ովքեր դեռևս երերուն դիրք էին գրավում:

Միաժամանակ, մենք աչքի անցկացրինք կուսակցության X համագումարի պատգամավորների և նահանգկոմի անդամության թեկնածուների ցուցակի այն նախագիծը, որ Բուսարևը սորմովցի և վիկսունցի պատգամավորների հետ միասին ներկայացրել էր «սինիորեն կոնվենտում», այդ ցուցակում ճնշող մեծամասնություն էին կազմում լենինյան պլատֆորմի կողմնակիցները: Այնտեղ կային նաև մյուս երկու պլատֆորմի կողմնակիցներ, մարդիկ, որոնք կապված իէն մասսաների հետ և որոշակի անձնական ազդեցություն էին վայելում տեղական կուսակցական կազմակերպություններում:

...Երեկոյան բացվեց կուսակցական կոնֆերանսի վերջին նիստը:

Սկզբում պատգամավորներին առաջարկվեց նահանգկոմի նոր կազմի թեկնածուների ցուցակը «սինիորեն կոնվենտի» անունից: Կարդացին նաև Քաղաքային, Սորմովոյի, Վիկսունսկի, Բորսկի շրջանների, Սեմյոնովսկի, Սերգաչի, Կնյագինինսկի գավառների պատգամավորությունների, ինչպես նաև Կանավինոյի ու Աոափինյա շրջանի և մի շարք գավառների պատգամավորությունների մի մասի անունից ներկայացված երկրորդ ցուցակը:

Քվեարկությունը ցույց տվեց, որ երկրորդ ցուցակն ստացել է ձայների մեծամասնություն:

Հետո լուծվեց կուսակցության X համագումարի պատգամավորների հարցը: Այդ ընտրություններն ստանում էին արդեն համակուսակցական նշանակություն: Ստեղծված պրակտիկայի համաձայն, պատգամավորների ընտրությունները տեղի էին ունենում ըստ պլատֆորմների:

Այստեղ ևս լենինյանները տպավորիչ հաղթանակ տարան: Լենինի պլատֆորմը պաշտպանող թեկնածուների օգտին քվեարկեցին արդեն 104 մարդ (երբ քվեարկվում էր բանաձևը դրանք 72 հոգի էին), «բանվորական օպոզիցիայի» օգտին՝ 23, Տրոցկու պլատֆորմի օգտին՝ 8 մարդ: Այժմ արդեն «չկողմնորոշվեցին» միայն հինգ հոգի, ձեռնպահ մնալով քվեարկությունից[1]: Իսկ արհմիությունների հարցի քվեարկության ժամանակ «լռության պահպանած» պատգամավորներից

[1] ПАГО, ф. 244, оп. 4, д. 5—19, л. 12.



32-ը կոնֆերանսի աշխատանքի վերջում հարեցին լենինյան պլատֆորմին:

Նիժնի Նովգորոդի կազմակերպությունը կուսակցության X համագումար ուղարկեց վճռական ձայն ունեցող իր ներկայացուցիչներին: Նրանցից վեցը կանգնած էին լենինյան պլատֆորմի վրա (Կորշունով, Միկոյան, Տագանով, Տիմոֆեև, Տեր և Շմոնին): Մեր առաջարկությամբ «բանվորական օպոզիցիայից» ընտրվեց Զելիչևը, իսկ տրոցկիստներից՝ Ցարկինը:

Ընտրություններից հետո արդեն կոնֆերանսի պատգամավորների առջև հանդես եկավ Նիժնի Նովգորոդի հեղափոխական շարժման աչքի ընկնող գործիչներից մեկը՝ Պողերնը, որը ժամանել էր Պետրոգրադից[1]: Նա հաղորդակից դարձրեց կոնֆերանսի աշխատանքից ստացած իր տպավորություններին և վստահություն հայտնեց, որ տարաձայնությունները կհաղթահարվեն, և մեր կազմակերպությունը կդառնա միասնական:

Փակելով XI կուսակցական կոնֆերանսը, ես նշեցի, որ մեզ հաջողվեց այդ կոնֆերանսում «լուծել մի շարք սկզբունքային հարցեր և ճիշտ ճանապարհ դուրս գալ...»:

Կոնֆերանսն իր կարծիքն արտահայտեց և տեղական կազմակերպություններին ցուցումներ տվեց թե՛ արհմիությունների հարցի, թե՛ կուսակցական շինարարության և թե՛ կուսակցական շարքերի հետագա ամրապնդման ուղիների վերաբերյալ: Կոնֆերանսում հաջողվեց հաղթահարել մեր մի շարք աշխատողների ամեն տեսակի անարխո-սինդիկալիստական «հնարաբանությունները»:

Կոնֆերանսի չափազանց կարևոր արդյունքն է հանդիսանում, հայտարարեցի ես, ներկուսակցական կյանքի հարցի առթիվ ընդունված որոշումը: Հարկավոր է, որպեսզի «ընկերները, որոնք այնտեղ և՛ թեր, և՛ դեմ են քվեարկել տարբեր հարցերի առթիվ, համախմբվեն կոնֆերանսի որոշումների շուրջը», իսկ նահանգկոմի ամրապնդված և առողջացրած նոր կազմը վստահորեն առաջնորդի նահանգի կազմակերպությանը «այս կոնֆերանսի որոշումները կենսագործելու» համար:

Եվ իրոք, քիչ առաջ անցնելով, պետք է ասեմ, որ հաջորդ, XII կուսակցական կոնֆերանսը, որը տեղի ունեցավ մոտ կես տարի հետո, անցավ Նիժնի Նովգորոդի նահանգային կուսակցական կազմակերպության միասնության ու համախմբման պայմաններում:

Իհարկե, այս բոլորը միանգամից ձեռք չբերվեց: Տեղական օպոզիցիոներներն ու խմբակայինները դեռ երկար ժամանակ շարունակում էին «գլուխ բարձրացնել»: Կուսակցական ու բանվորական ժողովներում, կուսակցական և անկուսակցական կոնֆերանսներում ու խորհրդակցություններում նրանց ցուցաբերած սանձարձակ վարքագիծը շարունակվեց ընդհուպ մինչև կուսակցության X համագումարը, որը վերջնական որոշում ընդունեց օպոզիցիայի հարցի առթիվ և վերջ դրեց մեր կուսակցության լենինյան գծի դեմ նրա բացահայտ ելույթներին:

Նահանգկոմի նոր կազմի առաջին իսկ նիստում, բնականաբար, ծառացավ բյուրո ընտրելու հարցը: Մենք վաղօրոք այդ հարցի առթիվ զրուցել էինք գավառների ներկայացուցիչների հետ, և արդյունքները երևացին. բյուրոյի չորս անդամներ (հինգից) ընտրվեցին լենինյան պլատֆորմի կողմնակիցների թվից (Իկոննիկով, Կորշունով, Միկոյան և Տեր), իսկ հինգերորդը՝ Զեմնուխովը, թեպետև մինչ այդ հարում էր «բանվորական օպոզիցիային», բայց այնտեղ ակտիվ դեր չէր խաղում: Ինձ ընտրեցին նահանգկոմի պատասխանատու քարտուղար: Միայն այժմ, տեղային խմբավորման, «բանվորական օպոզիցիայի» և տրոցկիստների դեմ մղված պայքարով հագեցած հինգ բուռն ամիսներից հետո, ես կարողացա ձեռնամուխ լինել այն աշխատանքին, որի համար կուսակցության Կենտկոմի կազմբյուրոյի որոշմամբ 1920 թվականի աշնանը ուղարկվել էի Նիժնի:

Ուրախալի էր, որ ամեն ինչ այդպես լավ վերջացավ: Բայց, ինչպես ցույց տվեցին հետագա իրադարձությունները, նահանգային կազմակերպության ներսում պայքարը խմբավորումների, օպոզիցիոներների դեմ դեռ չէր վերջացել: Այդ բանը մենք զգացինք արդեն հետևյալ օրը:

(Շարունակելի)

Թարգմ.՝ Վ. Գ. ԱՎԱԳՅԱՆԸ

[1] Հետագայում, երկու տարի անց, ես նորից հանդիպեցի և մտերմացա նրա հետ արդեն Ռոստովում, ուր նա եկել էր աշխատելու Կենտկոմի որոշմամբ, որպես կուսակցության Կենտկոմի Հարավ-արևելյան բյուրոյի անդամ:



ոչ-սոցիալիստական ինը երկրների, որոնցից երեքն են զարգացող (Պերուն, Հնդկաստանը և Տայլանդը)։ Բնակչության մեկ շնչին ընկնող որսի համեմատությունն առավել է ընդգծում զարգացած ու զարգացող երկրների հակադրությունը։ Այսպես, 1970 թ. բնակչության մեկ շնչին ընկնող ծովամթերքի արդյունահանումն Իսլանդիայում կազմեց 3,600 կգ, Նորվեգիայում՝ 765, Ճապոնիայում՝ գրեթե 90, Բրազիլիայում՝ 5,1 և Հնդկաստանում՝ միայն 3,1 կգ։ Ընդ որում, երկու խմբի պետությունների որսի անջրպետը ոչ թե մեծանալու, այլ փոքրանալու միտում ունի։

Կապիտալիստական ձկնորսության զարգացման կարևորագույն առանձնահատկություններն են՝ որսի զգալի ավելացումը, արդյունահանման տեղաբաշխման ու արմատական փոփոխությունները որսի կազմում, համակենտրոնացման ու մենաշնորհի պրոցեսի ընդլայնումը, զարգացման անհամաչափության հետագա խորացումը։ Ձկան և այլ ծովամթերքների որսը ոչ-սոցիալիստական երկրներում 1970 թ. ավելի քան 3 անգամ գերազանցել է 1948 թ. մակարդակը։

Աճի բարձր տեմպեր են նկատվել հատկապես 50-ական թվականների վերջում և 60-ական թվականների առաջին կեսում, երբ ձկնորսությունն արագ զարգացավ Խաղաղ օվկիանոսի հարավարևելյան մասում (Պերուի և Չիլիի ափերին), որը նախկինում, փաստորեն, արդյունահանման նշանակություն չուներ (1948 թ. համաշխարհային կապիտալիստական արդյունահանման 0,5 տոկոսից էլ պակաս էր, 1970 թ. արդեն՝ 25 տոկոս էր)։ Ծովային ձկնորսության կենտրոնը Ատլանտյան օվկիանոսից տեղափոխվեց Խաղաղ օվկիանոս, որի ձկան և այլ ծովամթերքների որսաբաժինն ավելացավ 57 տոկոսով՝ հետպատերազմյան առաջին տարիների 40—42 տոկոսի փոխարեն։ Ատլանտյան օվկիանոսի տեսակարար կշիռը 56-ից իջավ 38 տոկոսի, իսկ հյուսիսային կիսագնդի բաժինը՝ համաշխարհային որսի առումով, 80-ից 53 տոկոսի։

Էական փոփոխություններ են կատարվել առանձին երկրների համաշխարհային ձկնարդյունահանման մեջ։ Ճապոնիան, որի համար ծովային արդյունահանումը տնտեսության ավանդական ճյուղ էր, 1963 թ. ձկան որսի առաջնությունը զիջեց Պերուին, որը դեռևս 50-ական թվականներին, փաստորեն, զարգացած ձկնարդյունաբերություն չուներ։ Պերուում 1970 թ. որսը հասավ 12,6 մլն տոննայի կամ 11 անգամ գերազանցեց 1958 թ. մակարդակը և 125 անգամ՝ 1948 թվականինը։ Որսի ծավալով գրավելով առաջին տեղը համաշխարհային արդյունահանման ոլորտում, Պերուն վերջին տեղում է արտադրանքի միավորի արժեչափով, քանի որ դրա արդյունահանումը հիմնվում է անչոուսի-ամենաէժան ձկան որսի վրա։

Համաշխարհային ձկնորսության մարզում որսի արժեչափով (արդյունքի միավորով) առաջին տեղը գրավում է Ճապոնիան, քանի որ նա արդյունահանում է թանկարժեք ձկներ— թյունոսազգիներ, լոսոսազգիներ, ստավրիդա, սկումբրիա, ինչպես և զգալի քանակությամբ խեցգետնանմաններ և փափկամորթներ։ Ճապոնական ձկնորսական նավերն ունեն գործողության մեծ շառավիղ և որս են անում համաշխարհային օվկիանոսի՝ արդյունահանման գրեթե բոլոր շրջաններում։ 1970 թ. Ճապոնիան, որսաց 9,3 մլն տոննա ձուկ, որը մոտ 50 տոկոսով ավելի է 1960 թ. մակարդակից։

Զարգացման ծայրահեղ անհամաչափությունը, որ բնորոշ է արդյունաբերական կապիտալիստական երկրների ձկնորսությանը, արտահայտվում է այդ բնագավառի ակնհայտ լճացմամբ ԱՄՆ-ում և անկմամբ՝ Անգլիայում։ Ձկան որսն ԱՄՆ-ում 1970 թ. 5 տոկոսով ցածր էր, քան 50-ական թվականների կեսերին։ Անգլիան 1972 թ. գրեթե 10 տոկոսով պակաս է ձուկ որսացել քան 1948 թ.։ Ձկնորսության հետ կապված նրա դժվարությունները հետևանք են, ամենից առաջ, Անգլիայի հնացած նավատորմի, որն արգելակում է արդյունահանման շրջանների ընդարձակմանը։ Անգլիական նավերը արդյունահանման են մեկնում 10—15 օրով, այն դեպքում, երբ, օրինակ, ճապոնական նավերը ծով են դուրս գալիս 1,5—2 տարով, արդյունահանում, սառեցնում են ձուկը հենց նավերում և վաճառում այնտեղ, ուր այդ շահավետ է։ Ձկնորսության զարգացման դանդաղ տեմպերը, ինչպես և առանձին տարիների անբավարար որսը բնորոշ են նաև արդյունաբերական կապիտալիստական այլ երկրների— Ճապոնիային, Կանադային, Դանիային, Նորվեգիային, Իսպանիային, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությանը։

Ձկնորսությունը կապիտալիստական երկրներում, որ նախկինում ինչպես հարկն է հագեցված չէր տեխնիկայով, դարձել է տեխնիկապես զարգացած բնագավառ։ Ձկան պահանջարկի մեծացման և մերձափնյա ջրերի որսով այն բավարարելու անհնարինության բերումով, արդյունահանմամբ սկսեցին զբաղվել նաև համաշխարհային օվկիանոսի առանձին շրջաններում և մեծ խորություններում։ Հարկ եղավ արդյունահանման նավատորմը հագեցնել հզոր շարժիչներ ունեցող մեծ նավերով և նորագույն սարքերով։

Ձկնորսության տեխնիկական առաջընթացը հանդիսացավ նրա արտադրության ու կապիտալի համակենտրոնացման բարձր մակարդակ ունեցող բնագավառ դառնալու նախապայմանը։ Ճապոնիայում, օրինակ, ըստ ձկնորսության Սպիտակ գրքի տվյալների արդյունահանման



ողջ տարողության ավելի քան 50 տոկոսը կենտրոնացած է ձկնարդյունաբերական չորս ընկերությունների ձեռքում։ Արևմտյան Գերմանիայում 1970 թ. սկզբին խորջրյա ձկնորսային նավատորմի 90 տոկոսը պատկանում էր 7 ֆիրմաների։ Անգլիայի ձկնարդյունահանությանը վերահսկում են երեք մոնոպոլիաներ։

Այսպիսով, եթե 50-ական թվականների վերջերին ծովային արդյունահանումը ոչ մեծ ֆիրմաների և առանձին ձկնորսների գործունեության ոլորտն էր, ապա այսօր օվկիանոսը հրապուրել է խոշոր և խոշորագույն մոնոպոլիաներին, որոնք այն համարում են կապիտալի շահավետ գործադրման նոր բնագավառ։

## ՁԿՆԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՄԱԳՆԱՏՆԵՐԸ ԵՎ «ԵՐՐՈՐԴ ԱՇԽԱՐՀԸ»

Կապիտալիստական երկրները ձկնարդյունաբերությունը դարձրին տնտեսության խիստ համակենտրոնացված և մոնոպոլացված բնագավառ, որով նախապայմաններ ստեղծվեցին կապիտալի արտահանման և համաշխարհային օվկիանոսի արևադարձային ու հարավային լայնություններում արդյունահանման զարգացման համար։ Շահույթի հետագա բազմապատկումն ապահովելու նպատակով ձկնարդյունաբերական մագնատներն սկսեցին կապիտալը ներդնել զարգացող երկրների ծովային արդյունահանման ոլորտը։

Ձկնարդյունաբերության մեջ ստեղծվեց տարօրինակ վիճակ. զարգացող երկրները 60-ական թվականների սկզբին արդեն որսի ծավալով հասան և անցան արդյունաբերական կապիտալիստական պետություններին։ Բայց այդ ամենևին չբարելավեց զարգացող երկրների բնակչության սննդի վիճակը, քանի որ այդ բնագավառը զարգանում էր օտարերկրյա կապիտալի շահերին համապատասխան։

Պերուի և Չիլիի ձկնարդյունաբերության հիմքը դարձավ ձկան վերամշակումը ալյուրի, Մեքսիկայի և Կենտրոնական ու Հարավային Ամերիկայի շատ երկրներինը՝ խեցեմորթներն ու կակղամորթները, մի շարք զարգացող երկրների (օրինակ՝ Սենեգալի, Գանայի, Էկվադորի, Մալայզիայի) արդյունահանման մարզում ակնառու տեղ գրավեցին թյունոսի ընտանիքի ձկները։ Այդպիսի մասնագիտացումը որոշվում էր զարգացած կապիտալիստական պետությունների պահանջարկով։ Պերուի ձկնորսության արագ ընդլայնումը պայմանավորված էր զարգացած արդյունաբերական պետությունների թռչնաբուծության և խոզաբուծության ասպարեզում ձկնալյուրի պահանջարկի մեծացմամբ։ Հումքային հարուստ բազա և էժան բանվորական ուժ ունեցող Պերուն դարձավ «ձկնալյուրի բումի» կենտրոն։

Զարգացող երկրների արդյունահանման մեջ գերակշռող դերը գրավեց արևմտյան մոնոպոլիաների մի փոքր խումբ։ Այսպես, Պերուի ձկան որսի և վերամշակման 40 տոկոսը հիմնականում ամերիկյան ընկերությունների ուղղակի վերահսկողության տակ է։ Ձկնարդյունաբերական տեղական մագնատները սերտորեն կապված են ամերիկյան և արևմտագերմանական կապիտալի հետ։ Օտարերկրացիներին է պատկանում նաև Չիլիի, Մեքսիկայի, Ինդոնեզիայի, Մալայզիայի ձկնարդյունաբերության զգալի մասը։

Զարգացող երկրների ծովային ռեսուրսներն իրենց շահերին ծառայեցնելու արևմտյան մոնոպոլիաների ձգտումը որոշակի արտահայտվում է որսի օգտագործման փոփոխություններով. այն սկսեցին ավելի շատ օգտագործել կերային արտադրանքի վերամշակման, քան սննդի նպատակով։ Եթե 1948 թ. որսի գրեթե 90 տոկոսն անմիջականորեն գործածվում էր իբրև ուտելիք և միայն շնչին, մոտ 10 տոկոսն էր արդյունաբերական վերամշակման ենթարկվում, ապա 1970 թ. այդ ցուցանիշները կազմեցին համապատասխանաբար՝ 62 և 38 տոկոս, Պերուն, որի բնակչությունը լիարժեք սնվելու համար անհրաժեշտ սպիտակուց չի գործածում, որսի 98 տոկոսը վերածում է ձկնալյուրի և գրեթե ամբողջովին արտահանում զարգացած կապիտալիստական երկրները, որտեղ այն օգտագործում են անասնապահական կարիքների համար։

Զարգացող երկրների ձկնորսության ոլորտում առավել շատ կապիտալ է ներդնում ԱՄՆ-ը։ Այստեղ, ուր ապրում է երկրագնդի բնակչության 6 տոկոսը, օգտագործվում է համաշխարհային որսի ավելի քան 12 տոկոսը։ Երկրին ձկնամթերք են մատակարարում հիմնականում ամերիկյան ֆիրմաները, որոնք ուրիշի դրոշակի տակ արդյունահանմամբ են զբաղվում համաշխարհային օվկիանոսի տարբեր շրջաններում։

Պերուական «Պեսկա» հանդեսի տվյալներով, երկրի որսի ավելի քան $^{1}/_{3}$-ը ձկնալյուրի են վերածում Պերուում գործող ամերիկյան ընկերությունները։ ԱՄՆ ներմուծվող ձկնալյուրի ավելի քան 75 տոկոսն արտադրվում է Պերուում և Չիլիում, ընդ որում, դրա զգալի մասն ստացվում է ամերիկյան ձեռնարկություններից։

Ամերիկյան ձկնարդյունաբերական ընկերությունների բացարձակ ակտիվ գործունեության բնագավառն արտասահմանում խեցեմորթների և կակղամորթների արդյունահանումն է, որոնց պահանջարկը ԱՄՆ-ում անընդհատ մեծանում է։ 1948 թ. մանր ծովախեցգետինների արտահանումը նրանց ընդհանուր մատակարարումների

15 տոկոսից պակաս էր, իսկ 1968 թ.՝ արդեն 54 տոկոս էր։ Միացյալ Նահանգները մանր ծովախեցգետիններ են ներմուծում 40 երկրներից և գրեթե ամենուր ամերիկյան ֆիրմաները մասնակցում են դրանց որսին կամ վերամշակմանը։ Երբեմն նրանք տեղական արդյունահանման ընկերություններին են տրամադրում վարկեր կամ ցույց տալիս տեխնիկական օգնություն, բայց ավելի հաճախ ստեղծում են դուստր-ձեռնարկություններ կամ խառը ֆիրմաներ։

Ամերիկյան ձկնարդյունաբերական ընկերությունները, հատկապես Կալիֆոռնիայինը, թյունոսի արդյունահանմամբ ու վերամշակմամբ են զբաղվում Պերուում, Էկվադորում, Սիերա-Լեոնեում, Լիբերիայում, Փղոսկրյա Ափի Հանրապետությունում, Գանայում։ Միայն «Վեն Քեմպ սիֆուդ»-ի և «Ստարկիստ ֆուձ»-ի բաժինն աշխարհում որսվող թյունոսի գրեթե 20 տոկոսն է կազմում։ Ճապոնացիների հետ մեկտեղ, ամերիկացիները ֆինանսավորում են թյունոս արդյունահանող հատուկ նավերի շինարարությունը, որի շնորհիվ օգտվում են հայթայթվող ապրանքների գնման նախապատվության իրավունքից։ Վարկեր տրամադրելով Սենեգալին, Չիլին, Մալագաշյան Հանրապետությանը, Մալայզիայի արդյունահանման ձեռնարկություններին, ԱՄՆ-ն ապահովում է հումքի կանոնավոր մատակարարումը՝ իր պահածոների գործարանների համար։

Ամերիկյան շուկայում ծովախեցգետնի և թյունոսի նման մեծ պահանջարկ ունեցող հատակի ձկան կարիքը բավարարում են գլխավորապես կանադական, նորվեգական և իսլանդական ֆիրմաները։ Սակայն միանգամայն կարևոր է նաև ԱՄՆ-ի ընկերությունների դերը, որոնք հատակի ձկան որսի համար Գաբոնում, Վենեսուելայում, Սոմալիում, Բրազիլիայում և մի շարք այլ երկրներում ստեղծել են իրենց ֆիլիալները և խառը ձեռնարկությունները։

Ամերիկյան մոնոպոլիաների մրցակիցներն են Ճապոնիայի ձկնարդյունաբերողները, որոնք ակտիվ գործունեություն են ծավալել Հարավ-Արևելյան Ասիայի երկրներում, հատկապես Մալայզիայում, Ինդոնեզիայում և Տաիլանդում։ Ամեն տարի ճապոնական ընկերություններն ավելի ու ավելի են թափանցում Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրների ձկնորսության ոլորտը։ 1968 թ. վերջին ճապոնական ձկնարդյունաբերական ֆիրմաների և ասոցիացիաների օտարերկրյա ներդրումները գնահատվում էին 7,5 մլն դոլար. նրանք ամբողջովին կամ մասամբ տիրանում էին 38 երկրների արդյունահանող ու վերամշակող ձեռնարկություններին։

Ճապոնական մոնոպոլիաները զարգացող երկրներում իրենց դիրքերն ամրապնդելու համար գործադրում են այլևայլ մեթոդներ։ Բացի որսի ու ծովամթերքի վերամշակման համար ստեղծած խառը ընկերություններից, նրանք համաձայնագրեր են ստորագրում տեխնիկական օգնության, ծովային ռեսուրսների հետազոտման, այդ երկրների նավահանգիստներում որսի բեռնման վերաբերյալ։ Տաիլանդի հետ, օրինակ, համաձայնագիր է կնքվել այնտեղ ձկնորսների պատրաստման կենտրոն բանալու, Սինգապուրի հետ՝ ծովային ռեսուրսներն ուսումնասիրող գիտահետազոտական կենտրոն ստեղծելու մասին։

Զարգացող երկրների ձկնային հարստությունները գրավում են նաև կապիտալիստական այլ երկրների ուշադրությունը։ Եթե դեռևս մի քանի տարի առաջ համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների հանդեպ էքսպանսիոնիստական ձգտումներ էին հանդես բերում հիմնականում ամերիկյան և ճապոնական մոնոպոլիաները, ապա այսօր նրանք հարկադրված են մրցակցել ԳՖՀ, Իտալիայի, Իսպանիայի հետ, որոնք նույնպես ստեղծում են համատեղ արդյունահանման ձեռնարկություններ, ֆինանսավորում նավերի, ձկան նավահանգիստների, ձկնամշակման գործարանների շինարարությունը։

Փաստերը ցույց են տալիս, որ զարգացող երկրների կողմից օվկիանոսի ձկան պաշարների օգտագործմանը լուրջ խոչընդոտում են ձկնատնտեսության ոլորտում հաստատված կապիտալիստական մոնոպոլիաները։ Ձգտելով ազատվել օտարերկրյա կախումից, զարգացող երկրները ռեֆորմներ են անցկացնում, որոնց նպատակն է ուժեղացնել պետական վերահսկողությունը ձկնորսության վրա։

Պերուում, օրինակ, 1970 թ. ստեղծվեց ձկնորսության մինիստրություն, որը ղեկավարում է արդյունահանումը, ռեսուրսների պահպանման և ձկնապրանքների արտադրության վերահսկման գործը։ Միաժամանակ, կազմակերպվել է «Էմպրեսա պուբլիկա դե սերվիսոս պեսկերոս» պետական ընկերությունը, որի հիմնական խնդիրն է՝ ձկան սննդամթերքի արտադրության խթանումը։ 1971 թ. երկրում օրենք ընդունվեց ձկան արդյունաբերության վերաբերյալ։ Այն սահմանափակում է օտարերկրյա ընկերությունների գործունեության շրջանակը և, բացի այդ, հետապնդում այնպիսի կարևոր նպատակ, ինչպիսին ձկան սննդամթերքի արտադրության ընդլայնումն է՝ այդ բնագավառի ձեռնարկություններին վերապահելով լայն արտոնություններ։

«Երրորդ աշխարհի» ազգային ձկնարդյունաբերության ստեղծման կամ զարգացման նպատակով մշակվում են նախագծեր, որոնցով նախատեսվում է՝ արդյունահանման նավատորմը



հագեցնել ժամանակակից ծովային նավերով, ծավալել հատուկ նավահանգիստների, սառեցնող հզորությունների, ձկնամշակման գործարանների շինարարություն։ Այսպես, Հնդկաստանի տնտեսության զարգացման չորրորդ հնգամյա պլանով (1970—1974 թթ.) նախատեսվում է բազմապատկել ձկան և այլ ծովամթերքների որսը, գրեթե 2 մլն տոննայով, 1969 թ. 1,5 մլն տոննայի դիմաց։ Որոշված է զգալիորեն ընդլայնել մանր խեցգետինների, սարդինաների, թյունոսների որսը։ Քանի որ Հնդկաստանի համար խիստ կարևոր է ծովափերից հեռու գտնվող շրջաններին ձկնամթերք մատակարարելը, լուրջ ուշադրություն է նվիրվում ձկնամշակման ժամանակակից եղանակների ներդրմանը և սառնարանային սարքավորումներով հագեցած փոխադրամիջոցների ստեղծմանը։

Այդպիսի նախագծեր մշակվել և իրականացվում են Ինդոնեզիայում։ Մալայզիայում, Տաիլանդում, Շրի Լանկա Հանրապետությունում և զարգացող այլ երկրներում։ Սրանցից շատերն իրենց տրամադրության տակ ունեն ձկնարդյունաբերության ստեղծման համար հումքի հարուստ ռեսուրսներ, սակայն միջոցների սակավությունը, որակավորված կադրերի, հետազոտական աշխատանքների կատարմանն անհրաժեշտ գիտատեխնիկական բազայի բացակայությունն արգելակում են նրանց ձկնարդյունաբերության զարգացումը։ Ակնհայտ է, որ զարգացող երկրների ձկնարդյունաբերության ոլորտում կարելի է առաջընթացի հասնել նրանց ընդհանուր տնտեսական զարգացման բազայի վրա, ինչպես և սոցիալիստական պետությունների հետ նրանց փոխադարձ կապերի և համագործակցության ամրապնդմամբ։

Համաշխարհային օվկիանոսի սննդի ռեսուրսների յուրացումը զարգացող երկրների առջև ռեալ հնարավորություններ է բացում պարենային պրոբլեմի՝ որպես նրանց տնտեսության վերելքի պրոբլեմի մի մասի լուծման և բնակչության կենսամակարդակի բարձրացման համար։ Դրա լուծման կարևոր պայմանը տնտեսական անկախության հասնելն է։ Այդ իսկ պատճառով հանուն ծովային հարստությունները ազգային շահերին ծառայեցնելու մի շարք զարգացող երկրների մղած պայքարը դառնում է հակաիմպերիալիստական պայքարի հիմնական ուղղություններից մեկը։

«Мировая экономика и международные отношения», № 12, 1972.

9





# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՀՌԵՏՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԻ ԳԻՏԱԿԱՆ ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆԸ

Քաղաքակրթության զարգացման արդի ժամանակաշրջանում, երբ գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ բավական բազմազան են գաղափարական ներգործման միջոցները, առավել կարևոր է կենդանի խոսքի, հռետորական արվեստի դերը:

Գաղտնիքը՝ ոչ միայն կենդանի խոսքի անանցողիկ նշանակության մեջ է, այլև, որոշ իմաստով, իրականություն դարձած եղելության. ինֆորմացիայի աղբյուրներով հարուստ ժամանակակից մարդը հաճախ դժվարանում է սանձել տեղեկությունների հեղեղը և անհագուրդ պահանջ է զգում լսարանային պայմաններում ունկնդրել մասնագետի կենդանի խոսքը:

Զարգացած սոցիալիստական հասարակարգում, երբ լուծվում են նոր մարդու դաստիարակության հետ կապված վիթխարի խնդիրներ, քաղաքական-գաղափարական գործունեությամբ զբաղվող ընկերներին հույժ անհրաժեշտ է տիրապետել հռետորական արվեստի հնարներին:

Չնայած մեզանում այդ հարցերի շուրջ որոշ գրականություն ստեղծված է, սակայն հանգամանալից ուսումնասիրություն միայն վերջերս հրապարակ եկավ: Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր, գեղագիտական բազմաթիվ աշխատությունների հեղինակ Հրանտ Ապրեսյանը կարճ ժամանակաշրջանում, երկու հրատարակությամբ (երկրորդը ավելի ծավալուն ու վերամշակված), ընթերցողի սեղանին դրեց հռետորական արվեստը բազմակողմանի լուսաբանող ուշագրավ իր գիրքը*:




Հռետորական արվեստը մարդկության պատմության բոլոր ժամանակաշրջաններում էական դեր է խաղացել հասարակության կյանքում: Տակավին հին աշխարհում սոցիալ-քաղաքական բախումների, գաղափարական վիճաբանությունների ժամանակ ճարտասանությունը մարտնչող ուժերի հուսալի միջոցն է եղել՝ պաշտպանելու սեփական շահերը, բացասելու հակոտնյա կողմի տեսակետը, բացահայտելու ճշմարտությունը: Պատահական չէ, որ տասնյակ դարեր են անցել, սակայն անմոռաց են հին աշխարհի երևելի հռետորների անունները, որոնց փորձն ու ավանդույթները շատ առումով չեն կորցրել իրենց դերն ու նշանակությունը:

Հայտնի է, որ անտիկ աշխարհում մարդու իմաստության դրսևորման հիմնական ձևը համարվում էր վիճաբանության ժամանակ արտահայտված ինքնատիպ ու դիպուկ կենդանի խոսքը: Ճարտասանության պատվիրաններում ուշադրություն էր նվիրվում նաև բանավոր խոսքի բարոյական արժեքավորմանը, այն պետք է զերծ լինի դատարկաբանությունից, ունկնդիրների ականջը շլացնող ճոռոմ դարձվածքներից, աննպատակ արտահայտություններից:

Ճիշտ է նկատում հեղինակը, որ բուրժուական հարաբերությունների ծագման ու զարգացման շրջանում ճարտասանությունը, մասնավորապես քաղաքական հռետորական արվեստը, նոր հնչեղություն ստացավ: Ֆրանսիական բուրժուական հեղափոխության շրջանում հանդես եկան ականավոր քաղաքական գործիչներ-հռետորներ Մարատը, Ռոբեսպիերը և ուրիշներ, որոնք իրենց ելույթներում ջանում էին հանդես գալ ժողովրդի անունից: Սակայն աշխատավոր զանգվածները շատ շուտ հասկացան, որ սոսկ պատրանք են հռչակված ազատություն, հավասարություն, եղբայրություն գաղափարները: Երբ խամրեցին հեղափոխության դրոշները, բուրժուազիան երես թեքեց ժողովրդից, մոռացավ իր իսկ կողմից հռչակած լոզունգները:

Կապիտալիստական իրականության ընդերքում հասակ առնող բանվոր դասակարգը քաղաքական պայքարի թատերաբեմ բարձրացրեց իր գաղափարախոս-հռետորներին, որոնք պատռեցին բուրժուական կեղծ դեմոկրատիայի դիմակը և ի լուր աշխարհի ազդարարեցին նոր, կոմունիստական ապրելակերպի գիտական ծրագիրը: Մարքսի ու Էնգելսի գաղափարական ազդեցության ներքո ձևավորվեցին կոմունիստ հրապարակախոսներ, որոնց ազդեցիկ ու ճշմարիտ ձայնը լայն արձագանք գտավ աշխատավորության շրջանում:

Գիտական կոմունիզմի հիմնադիրների հռետորական արվեստը խորապես բնութագրել են նրանց զինակիցները: Մարքսը, լինելով գիտության պարզունակացման ամեն մի փորձի մոլեռանդ թշնամի, միաժամանակ ցուցաբերել է գիտական-փիլիսոփայական բարդ պրոբլեմները աշխատավորությանը պարզ ու մատչելի մատուցելու բացառիկ տաղանդ: Վ. Լիբկնեխտը նկատել է, որ բանվորական շարժման պարագլուխներից ու տեսաբաններից ոչ-ոք այդ աստիճան օժտված չի եղել իր միտքը պարզ արտահայտելու ունակությամբ, որքան Մարքսը: Պեդանտության հասնող բծախնդրություն է ցուցաբերել նա լեզվի անաղարտության պահպանման գործում, չի հանդուրժել գրական լեզվի և բարբառի խառնակումը:

Մարքսի բանավոր խոսքին մեծապես նպաստում էին նրա բազմակողմանի գիտելիքները, մտածողության դիալեկտիկական մեթոդի և հասարակական բարդ երևույթները վերլուծելու հիանալի հմտությունը, լեզվաբանական տաղանդը՝ մի շարք լեզուների իմացությունը:

Մարքս-հռետորը բանավեճի վարպետ էր, փայլուն ընդդիմախոս: Վեճի ժամանակ նրա առաջ քաշած դրույթները, փաստարկումները անառարկելի էին, հիմնավորված: Նրա խոր ու կայուն գիտելիքները, գեղագիտական բարձր կուլտուրան ունկնդիրների վրա անջնջելի տպավորություն էին թողնում: Մարքսին արժանի հռետոր էր նրա գաղափարական զինակիցն ու բարեկամը՝ Էնգելսը: Ազատ տիրապետելով յոթ լեզուների, Էնգելսը ելույթների ժամանակ հաշվի առնելով լսարանի ազգային կազմը, իր խոսքը շարունակում էր պահանջվող լեզվով: Նրա հռետորական ոճին նույնպես հատուկ էին մտքի պարզությունը, խոսքի արտահայտչականությունը:

Գիտական կոմունիզմի հիմնադիրների հռետորական ժառանգությունը հետագայում զարգացրին Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ի և մյուս եղբայրական կոմկուսների երևելի գործիչները: Հեղինակը Լենինի հռետորական արվեստին անդրադառնում է հիշյալ աշխատության այն բաժիններում, ուր արծարծվում են ճարտասանության սկզբունքները: Այստեղ պարզապես կարելի է ասել, որ ՍՄԿԿ-ն պայքարի ու գործունեության ընթացքում առաջ է քաշել լենինյան-հռետորների փայլուն համաստեղություն, որոնց վառ ու իմաստուն խոսքը ուսանելի է ժամանակակից սերունդների համար:

Աշխատության երկրորդ ու հաջորդ գլուխներում լուսաբանված են հռետորական արվեստի առանձնահատկությունները, ներկայացված են գաղափարական ներգործման այդ կարևոր միջոցի հնարները:

Հանգամանորեն բնութագրելով ճարտասանության դասակարգման յուրաքանչյուր սեռն ու տեսակը, հեղինակը, միաժամանակ, նկատում է, որ ժամանակակից հռետորական արվեստի տեսակային բազմազանությունն անհնար է ենթարկել սպառիչ բաժանման: Այստեղ ավելի շատ է ընթացիկը, հարաբերականը: Հաճախ առանձին տեսակի, ավելի ճիշտ ժանրի առկայությունը պայմանավորվում է հռետորի տաղանդով, վարպետությամբ:

Քննելով ագիտացիան ու պրոպագանդան՝ որպես հռետորական արվեստի ֆունկցիա, հեղի-

* Г. З. Апресян. Ораторское искусство. Изд. Московского университета 1972.

նակը հատկապես անդրադառնում է բոլշևիկյան ագիտացիայի ու պրոպագանդայի բնութագրման հարցերին: Լենինյան ըմբռնմամբ դրանք կոչված են մարդկանց նպատակամղելու որոշակի գործողության, ոգևորելու, մղելու նրանց մեծագործությունների, բաղձալի նպատակին հասնելու համար մղած պայքարում զինելու գիտելիքներով ու հաստատակամությամբ: Ամեն մի պրոպագանդիստի ու ագիտատորի արվեստը,— ասել է Լենինը,— տվյալ լսարանի վրա լավագույն ձևով ազդելն է, հայտնի ճշմարտությունը առավել ակնհայտ դարձնելը:

Որևէ հարցի շուրջ Լենինի ելույթը աչքի է ընկել նորությամբ, ծանոթ դրույթների յուրովի մեկնաբանմամբ: Հեղինակն իր առջև դրված խնդրի տեսանկյունից վերլուծել է հանրահայտ «Պետության մասին» Լենինյան դասախոսությունը: Այն բաղկացած է երեք մասից, ուր քննվող՝ հասարակական պրոգրեսի պատմականորեն հետևողական վերընթաց շարժումը ներկայացված է իբրև դիալեկտիկական տրամաբանություն, որպես երկարյա անհրաժեշտություն ու բնապատմական օրինաչափություն: Լուրջ թեմայի շուրջ խոսքի նման ձևի, ուրեմն և բովանդակության ընկալումը պարզեցվում է շարադրման ոճով, որի բնորոշ տարրերն են՝ հռետորի՝ ունկնդիրներին դիմելու եղանակը, դասախոսության մատչելի, գիտական բարդ դարձվածքներից, օտար բառերից զերծ լեզուն: Լենինը ջանում էր, որ ո՛չ միայն որևէ տեսական դրույթ, այլև առանձին բառ անհասկանալի չմնա ունկնդրին: Նա կրկնում էր որոշ բանավոր բնութագրումներն ու գնահատականները, սակայն այլ զուգակցություններում, օգտագործելով նոր հոմանիշներ: Այսպես՝ նա պետությունը անվանում է «կառավարման ապարատ», «հարկադրման ապարատ», «ֆիզիկական հարկադրման ապարատ» և, վերջապես, «բռնության ապարատ»: Բոլոր դեպքերում կրկնելով միայն «ապարատ» բառը, սակայն ամեն անգամ նոր խոսքի զուգորդությամբ: Այսպիսով, պետության էության բնորոշումը ո՛չ միայն նոր երանգ է առնում, այլև մատնանշվում են պետության բնորոշ գծերի տարբեր կողմերը՝ որպես պատմականորեն կազմավորված սոցիալական երևույթ: Լենինի դասախոսություններով և այլ օրինակներով հեղինակը ցույց է տալիս, որ հռետորական արվեստը խոսքի միջոցով իրականացվող կենդանի պրոցես է, ելույթ ունեցողի և ունկնդիրների միջև անմիջական, հրապարակային շփման եղանակ, ինտելեկտուալ ստեղծագործման որոշակի ձև:

Հրապարակային բանավոր ելույթն արտացոլում է իրականության որոշակի երևույթներ, բովանդակում որոշակի ինֆորմացիա, հաստատում կամ բացասում այս կամ այն թեզը, հետապնդում որոշակի նպատակ: Հռետորը, տիպականացնելով համանման փաստեր, դատողության, ապացուցման, մտահանգման, հաստատման շնորհիվ բանավոր խոսքը դառնում է առարկայական, ընկալելի, բովանդակալից:

Կենդանի խոսքը հռետորական արվեստի ամենաէական ձևն է, այն գործուն է, շարժուն, առավել դինամիկ: Ստեղծագործող միտքը և զգացմունքները այստեղ հանդես են գալիս միասնաբար: Հռետորական արվեստը հիմնվում է իմաստալից կենդանի խոսքի վրա: Ամփոփելով որոշակի ինֆորմացիա, խոսքը կոմունիկատիվ է, կապի, փոխըմբռնման միջոց: Այս առումով կարևոր է բանավոր խոսքի արտահայտման տոնը, առոգանությունը: Շատ կարևոր է հասկանալ ու զգալ խոսքի բազմիմաստությունը: Իմանալ, որ ամեն բանավոր արտահայտություն, հազվադեպ բացառությամբ, բովանդակում է ո՛չ միայն որոշակի ինֆորմացիա, այլև իմաստենային ֆունկցիա: Խոսքը միայն մեկ առարկա չի նշանակում, այլ տեսակների խումբ: Այն հասկացություն է, երևույթի արտացոլում: Ընդ որում խոսքի նշանակությունը հասարակական և գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ մեծանում է: Առհասարակ խոսքի ներգործման ոլորտի ծավալումը պայմանավորվում է հասարակական կուլտուրայի աճով, հոգևոր բազմապիսի արժեքների ստեղծմամբ:

Խոսքը հնչյունի միջոցով է սևեռում ու մարմնավորում միտքը, որը դինամիկ է, բազմերանգ: Բանավոր խոսքը հարուստ է գրավորից, քանի որ արտահայտում է ո՛չ միայն միտք, այլև վերջինից առկայծող զգացումներ ու տրամադրություններ: «Կենդանի խոսքը թանկ է մեռած տառից»,— ասում է ռուսական ժողովրդական առածը: Գորշ տպավորություն է թողնում գրավոր տեքստին գերի դասախոսը, որն անկարող է փոխադարձ կապ ստեղծել ունկնդիրների հետ:

Չորրորդ գլխում հեղինակը հանգամանալից լուսաբանում է հռետորական արվեստի զինանոցի միջոցները, օգտագործման եղանակները: Հարկ է նկատել, որ այս բաժնում լայն տեղ է հատկացված սովետական մտավորականության՝ հրապարակախոսի ճանաչում ունեցող ներկայացուցիչների հռետորական արվեստին: Այստեղ տեղին է ասված, որ իսկական հռետորական նյութը, ինչպիսի թեմայի էլ նվիրված լինի, պետք է բովանդակի գեղարվեստականության տարրեր, վեր հանի հրապարակային խոսքի գեղեցկությունը: Տաղանդավոր հռետորն իր ունկնդիրներին հաճախ զարմացնում ու ապշեցնում է բառի, հոմանիշի ընտրության հնարամտությամբ, մտքի վառ ու ինքնատիպ ձևակերպմամբ: Նման հռետորի նյութը անարգել է ծավալվում, դրսևորելով նորանոր գույներ ու ինտոնացիաներ, համակում է ունկնդիրներին, գամում նրանց ուշադրությունը: Արտահայտչականությունը առարկայի կամ երևույթի, հասկացության կամ պատկերացման բառային ստույգ նշանակումն է, որը հաճախ կերպարի որոշակիություն է ստանում:



Բանավոր խոսքի արտահայտչականությանը մեծապես նպաստում են ինտոնացիան, ձայնի ելևէջները, որոնք ուժեղացնում են խոսքի տրամաբանական շեշտը, հոգեբանական երանգը: Խոսել նույն տոնով ու տեմպով, նշանակում է լսարանից թաքցնել ո՛չ միայն հռետորական զգացումները, այլև որոշ մտքերի, նույնիսկ գաղափարների կարևորությունը: Փաստորեն ինտոնացիան ձևավորում է խոսքը, օգնում նրա կոմունիկատիվ ֆունկցիայի ակտիվացմանը: Այն, ինչ ձևով էլ հնչի, օժտված է հոգեբանական ուժով և հրապարակային խոսքի կարևոր միջոց է: Գրքում բացահայտված են Ա. Լունաչարսկու, Ա. Սուրկովի և ուրիշ հայտնի հրապարակախոսների բանավոր ելույթների առանձնահատկությունները:

Հռետորը պետք է օժտված լինի գեղագիտական զգացողությամբ ու ճաշակով: Ճարտասանությունը ենթադրում է գեղարվեստականության տարրերի առկայություն, ուր խստորեն պետք է պահպանվի չափի զգացումը: Հռետորը ասմունքող չէ, բայց պետք է խելացի օգտագործի գեղարվեստական խոսքի երանգները:

Հռետորական արվեստի բազմադարյան փորձն աներկբայորեն վկայում է, որ ճարտասանության մեջ հռետորի ձայնը, ձայնի հնչեղության երանգները, օրգանապես ձուլվում են բանավոր խոսքի իմաստային շաղախին, կազմելով ամբողջություն:

Ընթերցողին, անշուշտ կհետաքրքրի հռետորական աշխատանքի հոգեբանությանը նվիրված գլուխը: Այստեղ, մասնավորապես, քննված են հռետորական ստեղծագործման հոգեբանության ու հրապարակային խոսքի ընկալման առանձնահատկությունները: Ճարտասանության հիմնական խնդիրը ամենից առաջ ունկնդիրների մեջ կենդանի խոսքի հանդեպ հետաքրքրություն հարուցելն է: Գրականության մեջ գոյություն ունի կարծիք, որ ունկնդրի ուշադրության դաստիարակման գործում պետք է հաշվի առնել, այսպես կոչված, ուշադրության ճգնաժամերը, որոնք հանդես են գալիս որոշակի ժամանակամիջոցում: Երբ դրան էլ գումարենք ժամանակակից լսարանի բարձր մակարդակը, ապա պարզ է, թե այժմ որքա՜ն է դժվարացել ունկնդիրների ուշադրություն նվաճելը:

Լսարանը, նրա կազմը հռետորի, դասախոսի համար անդեմ մասսա չեն, այլ հարակից ստեղծագործողներ: Ունկնդիրներն անտարբեր չեն խոսողի նկատմամբ. նրանք կա՛մ համամիտ են կամ մերժում են, որը և պայմանավորում է հռետորի հաջողությունը: Փորձված դասախոսը լսարանը մշտապես համարում է սեփական խոհերի թարգմանը: Հաճախ նա, նախապես կազմած ունենալով բանավոր ելույթի գրավոր տեքստը կամ թեզիսները, հանպատրաստից, հաշվի առնելով ունկնդիրների հետաքրքրասիրությունը, նոր, չնախատեսված հարցեր է առաջ քաշում արծարծվող պրոբլեմների շուրջ: Ունկնդրի մտքով իսկ չի անցնում թե որքան է տվյալ ելույթի համար նախապատրաստվել զեկուցողը: Նա ցանկանում է լսել բովանդակալից, նորություններով հարուստ, գեղեցիկ լեզվով արտահայտված բանավոր խոսք: Մ. Ի. Կալինինը նկատել է, որ մասսայի հետ կարելի է խոսել միայն շիտակ, ուղղամիտ, նրանց նույնպես համարելով ողջամիտ մարդիկ, որ զեկուցողի կամ հեղինակի նման ի վիճակի են խելոք լուծելու հարցերը: Ձեզ շատ բանում կարող են ներել, սակայն մեծամտությունը՝ երբեք, ավելին՝ խելոք չեն համարի: Մ. Ի. Կալինինի այս տողերը որոշ առումով բնութագրում են հենց իրեն Միխայիլ Իվանովիչին. նրա բանավոր խոսքը բոլշևիկյան հռետորական արվեստի կատարելության օրինակ էր:

Հրապարակային բանավոր ելույթն առավել ներգործուն են դարձնում հռետորի արտաքինը, միմիկան, ժեստիկուլյացիան: Սրանք բանավոր խոսքի այն տարրերն են, որ պատշաճ չափավորության դեպքում առավել տպավորիչ են դարձնում հռետորի բանավոր ելույթը:

Ինչպես ամեն գործունեություն, հռետորական արվեստը նույնպես վառ կերպով դրսևորվում է ոգևորության պահին: Վերջինս անձնավորության ներաշխարհի այն հոգեվիճակն է, որը կարելի է անվանել հոգևոր վերելքի, աշխատանքային ակտիվության, արդյունավետության արտահայտություն: Ոգեշնչվածությունը ենթադրում է որոշակի կոնկրետ գործի վրա ստեղծագործական ուժերի, ուշադրության գերլարում: Դա ակտիվության այն վիճակն է, ուր ի հայտ են գալիս զգայական ու ինտելեկտուալ ինտուիցիան, ստեղծագործական պոռթկումների փայլատակումները: Ոգեշնչվածությունը պասիվ վիճակում չի դրսևորվում, այն նպատակասլաց, համառ աշխատանքի արդյունք է: Աշխատասիրությունից բացի, այստեղ հռետորի համար կարևոր նշանակություն ունեն նրա հասարակական հետաքրքրությունները, սոցիալական իդեալը: Ոգեշնչվածությունը բանավոր խոսքի պահին բովանդակում է գեղագիտական արժեք, որն անմիջականորեն ընկալվում է լսարանի կողմից:

Հռետորը, դասախոսը, պրոպագանդիստը, բոլոր նրանք, ովքեր հանդես են գալիս հասարակության առջև, երբեք չպետք է մոռանան, որ միայն մշտական կատարելագործման, գիտելիքների հարստացման, լեզվական կուլտուրայի կատարելագործման շնորհիվ կարող են արժանանալ ունկնդիրների դրական գնահատականին:

Երջանկություն է բանավոր, հրապարակային խոսքով արժանանալ հասարակական ճանաչման:

Պրոֆեսոր Հ. Զ. Ապրեսյանի ՀՌԵՏՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԸ պատշաճ արձագանք կգտնի խոսքի մշակների ամենալայն շրջաններում: Եվ դա ո՛չ միայն այն պատճառով, որ հեղինակը լուսաբանվող, բավականին հանգամանալի արծարծվող հարցերն ընթերցողներին է մատուցել գերազանցապես այժմեական առումով, օրվա հրատապությանն իրոք բավարարելու միտումով. վերամշակված ու զգալիորեն լրացված այս գիրքն ընթերցողի գոհունակությանն է արժանանում առավելապես իր հարուստ բովանդակությամբ, փաստարկումների ու հետևությունների համոզչականությամբ:

Հեղինակին հաջողվել է համոզել ընթերցողներին, որ տիեզերքի նվաճման մեր դարում ևս մարդկային հուժկու, ճշմարտացի ու գեղեցիկ ասված խոսքը շարունակում է մնալ հասարակական կյանքի հեղափոխական վերափոխման ազդակներից մեկը: Լավ է, երբ գիրքը շռայլորեն ուսուցում է իր ընթերցողներին հռետորական արվեստի «գաղտնիքները»:

Հափշտակությամբ են կարդացվում կոմունիստական միջազգային շարժման փայլուն սերնդի հռետորական վարպետությանը նվիրված կենսաթրթիռ ու պատկերավոր էջերը, որոնք նշանակալի չափով ընդլայնում են մեր էմոցիոնալ ներաշխարհի շրջանակները և համակում այն խոր գիտակցությամբ, որ խոսքի վարպետությունը մեր ժամանակներում ևս պետք է հղկվի ու կատարելագործվի: Այն այսօր շատ է պետք մեզ:

Հ. Զ. Ապրեսյանի տվյալ աշխատությունը գրված է նյութի խորիմացությամբ, կենդանի լեզվով և պատմական իրողությունների համակողմանի գնահատմամբ: Դասախոսների, պրոպագանդիստների, ագիտատորների, ուսուցիչների, քաղաքական-հասարակական բազմահազար գործիչների պատկառելի կոլեկտիվը Ապրեսյանի գրքում կգտնի շատ օգտակար և ուսանելի խորհրդածություններ ու ստեղծագործական մտորումներ:

Ճիշտ է վարվել հեղինակը, չզլանալով ընթերցողներին մատուցել նաև անհրաժեշտ գրացանկը, որն, անշուշտ, կնպաստի հետաքրքրասերներին՝ հարստացնելու իրենց գիտելիքները, կատարելագործելու հռետորական ձիրքը:

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ





# ԻՆՉՊԵ՞Ս ԱՆՎԱՆԵԼ

*Ակներև են ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների խոշոր նվաճումներն անցած հիսուն տարում. գիտությունների աննախընթաց զարգացումը, գիտա-տեխնիկական հեղափոխությունը պայմաններ են ստեղծել մշակույթի տարբեր մարզերի առավել զարգացման համար: Վերցնենք թեկուզ գրականության, տվյալ դեպքում մեզ հետաքրքրող պարբերական մամուլի հրատարակման գործը: Անհամեմատ ավելացել են պարբերական մամուլի հրատարակությունները, տպաքանակը, հանրային ընթերցասրահների թիվը, վերջիններս առավել ապահովված են նյութա-տեխնիկական բազայով և այլ միջոցներով: Այսպես, միայն Սովետական Հայաստանում 1970 թ. տպագրվել է 101 անուն հանդես՝ 12.463 հազար և 81 լրագիր՝ 1.117 հազար օրինակ միանվագ տպաքանակներով: Միայն «Ավանգարդ» երիտասարդական լրագրի միանվագ տպաքանակը մի քանի անգամ գերազանցում է 1913 թվականին տպագրված հայերեն ողջ պարբերական մամուլինը:*

*Անցյալում հայերեն պարբերական մամուլի հրատարակությունը գերազանցապես մասնավոր-անհատների համարձակ ձեռնարկում էր: Պարբերական հրատարակությունների բաժանորդների թիվը շատ սահմանափակ էր և նրանց տված բաժանորդագինը չէր կարող նյութապես ապահովել պարբերական մամուլի սիստեմատիկ լույսընծայումը: Ահա թե ինչու անվանի լրագրող Գ. Լևոնյանի հետաքրքրական տեղեկությունների համաձայն (տե՛ս* Հայոց պարբերական մամուլը... *գիրքը, էջ 11), մեր մամուլի մեծ մասը (1.290 անուն կամ 80,2 տոկոսը) տասը տարուց ավելի չի գոյատևել: Համարյա այդպիսին է արտասահմանյան այժմյան հայոց պարբերական մամուլի հրատարակության վիճակը:*

*Բոլորովին տարբեր է իրադրությունը Խորհրդային Միությունում, ինչպես և Հայաստանում: Նրանք ունեն ո՛չ միայն բաժանորդագրական մեծ միջոցներ, այլև պետությունը, հիմնարկություններն ու կազմակերպությունները հոգում են պակասող ծախսերը: Ներկայիս խորհրդային պարբերական մամուլը ո՛չ միայն մեծաքանակ է, այլև բազմատեսակ, ընթերցող հասարակությանն այն ապահովում է անհրաժեշտ գիտա-մասնագիտական, գաղափարական, գեղարվեստին վերաբերող գիտելիքներով, նյութերով ու տեղեկություններով, նորանոր լուրերով:*

*Պարբերական մամուլը ձևով, բնույթով և հրատարակչական տեսակով բաժանվում է երեք խմբի.*

*ԼՐԱԳՐԵՐ— օրական, երկօրյա, եռօրյա, ամսօրյա և այլն: Ի տարբերություն մյուս տեսակների, սրանք հաղորդում են օրվա նորությունները, տպագրում կուսակցական ու կառավարական որոշումներ, հրամանագրեր, օրենքներ, տեղեկություններ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների, կազմակերպվող միջոցառումների, միջազգային հարաբերությունների և արտաքին աշխարհի մասին, ուսումնական, մասնագիտական հանրամատչելի նյութեր, վիճակագրական հաշվետվություններ և այլն:*

*ՀԱՆԴԵՍՆԵՐ— Շաբաթական, տասնօրյա, կիսամսյա, երկամսյա, կիսամյա, տարեկան և այլն: Այս պարբերականներում զետեղվում են գիտամասնագիտական, գաղափարական, ժողտնտեսության տարբեր բնագավառների վերակառուցման, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, գործնական և այլ աշխատանքների վերաբերյալ հոդվածներ, հետազոտություններ, վիճակագրական ուսումնասիրություններ, գեղարվեստական գործեր, առաջարկություններ, նյութեր փորձի փոխանակման նպատակով և այլն:*

*ՇԱՐՈՒՆԱԿԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ— Տպագրության որոշակի ժամկետներ չունեն սրանք: Լույս են տեսնում նյութերի առկայության դեպքում. հրատարակում են գերազանցապես բուհական, գիտահետազոտական ինստիտուտները, փորձակայանները, լաբորատորիաները և*

այլ հիմնարկություններ. այդտեղ զետեղվում են գիտնականների ուսումնասիրությունները, առաջարկությունները, փորձնական հետազոտությունները, նոր հայտնագործությունների վերաբերյալ մենագրություններ, աշխատություններ, զանազան հոդվածներ։

* * *

Ամսագիր, բյուլետեն, ագիտատորի բլոկնոտ, աշխատություն, գիտական տեղեկագիր, լրագիր, տարեգիրք— այս և բազմաբովանդակ ու բազմատեսակ պարբերական, շարունակական հրատարակությունների հավաքական անվանման մեջ առաջացել է որոշ անհարիրություն։ Պարբերական հրատարակությունը հայ կյանքում մուտք գործելուց հետո անվանվել է լրագիր. հետագայում, երբ փոխվել են դրա չափերն ու ձևերը, ի տարբերություն լրագրի անվանվել է հանդես։

XX դարի առաջին քառորդում այս համահավաք անվանումները փոխարինվեցին նորերով, որոնք այնքան էլ նպատակահարմար չեն։ Այժմ, մամուլի ավելի փոփոխուն, ամենօրյա նյութեր պարունակող պարբերականին, փոխանակ լրագիր անվանելու, որը որոշակի իմաստ ունի, անվանում են թերթ։ Ինչո՞ւ հրաժարվել լրագիր, լրագրություն, լրագրող հասկացողություններից և օգտագործել «թերթ»— լրագրի էության անհարիր բովանդակություն ունեցող և ընթերցողին ոչինչ չասող արտահայտությունը։ Կարելի է ասել՝ մի թերթ թուղթ, հաշվել գրքի թերթերը, ծաղկի բաժակաթերթ, պսակաթերթ և այլն, որոնք լրագրի էության հետ ոչ մի առնչություն չունեն։

Մեր համոզմամբ, անհրաժեշտ է վերականգնել լրագիր, լրագրող, լրագրություն արտահայտությունները և մերժել թերթը։

Ավելի քան տարբեր է պարբերական և շարունակական հրատարակություն երի հավաքական անվանումը։ Լրագրողները ... ուրիշներ դրանք անվանում են պարբերագիր, հանդես, ամսագիր... Կարծում ենք, այս անվանում երից ամենանպատակահարմարը հանդեսն է... թական, կիսամսյա, ամսական, ... րեկան հանդեսներ։

Այստեղ մենք հարկ չենք հա...ում բացատրական ու վերլուծական պատճառաբանություններով ցույց տալ մյուս անվանումների աննպատակահարմարությունը, բայց ասենք, որ հանդեսը ճիշտ է արտահայտում պարբերական ... շարունակական հրատարակությունների բո...դակությունը, դերն ու տեղը ընթերցող հասարակության կյանքում։

Ն. Ս. ՄԱՐԳԱՐՅԱՆ

ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի երրորդ համարում հրապարակված Վ. Փափազյանը ռեալիզմի ճետևողական պաշտպան հոդվածի տակ, 98-րդ էջում հեղինակի անունը Կ. Հ. Ավետիսյանի փոխարեն կարդալ Հ. Կ. Ավետիսյան։



Адрес редакции: Ереван-33, Барекамут...н, 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժի... 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և ...ուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 06432 Պատվեր 519։ Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 14.230։ Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 6/IV 1973 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։






## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վլադիմիր Իլյիչ Լենին. *կենսագրություն. հինգերորդ հրատ., Մ.*, Политиздат, *1972*։

Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը և արդիականությունը. *Մ.*, Политиздат, *1972*։

*...նական կոմունիզմի հիմունքներն ուսումնասիրողները օգտակար շատ բան կգտնեն ...ունում, որ հեղինակային կոլեկտիվը բացահայտել է հեղափոխության լե... ...յան անանց նշանակությունը մեր օրերում և ապագայում։*

Սովետակ...ն բազմազգ պետությունը. *Մ.*, Политиздат, *1972*։

*Ազգային հարաբերությունների զարգացմանը նվիրված այս մենագրության մեջ վերհանված է ՍՍՀՄ կազմավորման պատմական նշանակությունը մեր երկրի բոլոր ազգերի ...ր։*

Համաստղերի միությունը. *Մ.*, Политиздат, *1972*։

*Քաղաքական-տնտեսական այս պատկերազարդ տեղեկատուն նվիրված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին։*

ԿԱՊԻՐԻՆ Պ. Ի., Ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության օրգանական միասնությունը, *Մ.*, Политиздат, *1972*։

Փիլիսոփայությունը և ժամանակակից կենսաբանությունը. *Ի. Տ. Ֆրոլովի ընդհանուր խմբագրությամբ, Մ.*, Политиздат, *1972*։

*Ուսուցիչների, պրոպագանդիստների, կուսուսուցման ունկնդիրների համար նախատեսված այս գիրքը շարունակությունն է 1966 թ. լույս տեսած «Բնագիտության փիլիսոփայությունը» աշխատության։*

ԳՐԻԳՈՐՅԱՆ Բ. Տ.— Փիլիսոփայությունը և մարդու էությունը. *Մ.*, Политиздат, *1972*։

ՍՏԻՇՈՎԱ Լ.— Մարտընկերները, *Մ.* Политиздат, *1972*։

*«Սովետական հայրենիքի հերոսները» շարքի այս գիրքը նվիրված է բոլշևիկ, աննկուն լենինյան Պ. Ն. Լեպեշինսկուն։*

ՊՈՊՈՎ Ա. Ս.— Աշխատանք, տաղանդ, արիություն. *Մ.*, Политиздат, *1972*։

*Նո... սերիայի այս գիրքը նորանոր փաստերով արտացոլում է սովետական փառապանծ զորավարներից մեկի՝ մարշալ Մ. Ն. Տուխաչևսկու կյանքն ու հայրենանվեր ռազմական գործունեությունը։ Ռազմական այն գործիչներից մեկն է Տուխաչևսկին, որ, լինելով ցարական բանակի սպա, խնդությամբ դիմավորեց Հոկտեմբերյան հեղափոխությունը, դարձավ ...ա նվաճումների լավագույն պաշտ...յաններից մեկը։*

ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ Վ. Ա.— Դաստիարակության մասին. *Մ.*, Политиздат, *1972*։

*Այստեղ ժողոված, քաղվածքաբար ամփոփված են մեր օրերի լավագույն մանկավարժներից մեկի՝ ակադեմիկոս Սուխոմլինսկու ...երը, ասույթները երեխաների դաստիարակության, կոմունիստական բարոյականության ձևավորման մասին։ Ծնողները, մանկավարժները, կուսակցական ու կոմերիտ...ան գործիչները գործնական, օգտակար շատ խորհուրդներ կգտնեն այստեղ։ Կարդալով այն, մի անգամ ևս կհամոզվեն, որ մանկավարժությունը պետք է դառնա գիտություն՝ բոլորի, ամենքի համար։*

 

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍԵԼԵԿՑԻՈՆ ԿՈՄԲԱՅՆ

*Գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքը (մանավանդ սելեկցիոն նպատակով) խիստ աշխատատար պրոցես է։ Անհրաժեշտ է կարճ ժամանակամիջոցում մի քանի ցանքատարածություններից հավաքել, կալսել բերքը, սերմացուն, առանց դրանք իրար խառնելու։ Այդ նպատակով գյուղատնտեսության մեքենայացման համամիութենական և Սիբիրի գիտահետազոտական ինստիտուտներն ստեղծել են* KC—1,8 *և* KC—1,25 *դյուրաշարժ կոմբայնները, որոնք կարող են գործել նույնիսկ 3 մետրանոց հողակտորների վրա։ Մի կուլտուրան հավաքել-կալսելուց հետո կոմբայնն ինքնամաքրվում է և ապա անցնում մյուսին։*

## ԶԱՐԹՈՒՑԻՉ-ԱԿՆՈՑՆԵՐ

*Վարորդի համար հոգնեցուցիչ է գիշերային հեռավոր երթուղին։ Աչքերը փակվում են, կարող է նիրհել, և հետևանքը կլինեն ավտովթարները։ Դրանք կանխելու նպատակով ԶՍՍՀ-ի ԳԱ Ֆիզիկայի ինստիտուտի գիտնականներն ստեղծել են վարորդին հսկող էլեկտրոնային սարք։ Ակնոցի շրջանակի վրա տեղադրված են փոքրիկ կոնտակտներ. երբ վարորդի աչքերը փակվում են, դրանք միանում են։ Սարքն ստեղծողները հաշվի են առել նաև այն հանգամանքը, որ վարորդը կարող է քնել և աչքերը բաց։ Եվ երբ նա աչքերը չի թարթում, զարթուցիչը միանում է։ Ֆիզիոլոգների այս հայտնագործությունը կկիրառվի նաև երկաթուղային տրանսպորտում։*

## ԱՎԱԶԱՇԻԹԱՅԻՆ ՌԵՏԻՆ

*Հաճախ հարկ է լինում տպագիր տեքստում ջնջել կամ փոխել մի քանի բառ։ Բայց այդ հնարավոր չէ ոչ մի ռետինով, և ուղղումները կատարվում են տողամիջում կամ լուսանցքներում։*

*Սրբագրիչի և խմբագրի աշխատանքը հեշտացնելու նպատակով անգլիական ֆիրմաներից մեկը նախագծել է ավազաշիթային փոքրիկ ապարատ, որը տպագիր տեքստը ջնջում է մանրաղացված փոշու շիթով։*

*Մշակված փոշին թղթի ու ներկի մասնիկներն անմիջապես ներծծում է միկրոփոշեծծիչով։ Այդ ապարատը պիտանի է ո՛չ միայն փորրատիրաժ հրատարակությունների, այլև գծագրերի ուղղման, ինչպես և գրադարանային գրքերը մաքրելու համար։*

## ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ ԾԱՌԻ ԿԵՂԵՎԻՑ

*Ֆիննական մասնագետներն առաջարկել են ծառի կեղևն օգտագործել որպես պարարտանյութ։ Սկզբում կեղևը մանրացնում են մուրճաղացում, հետո որոշ ժամանակ տարացնում շաքարի արդյունաբերության թթու թափոնների հետ։ Այդպիսի մշակման շնորհիվ կալիումը, ազոտը, ֆոսֆորը և արժեքավոր մյուս հանքանյութերը դյուրալույծ են դառնում։ Ստացված մասսան չորացնում, փոշի են դարձնում։ Հարկ եղած դեպքում այդ փոշուն ավելացնում են այլ պարարտանյութեր։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԱԳՐՈՆՈՄ

*ԳԴՀ-ի ցանքատարածությունների 90 տոկոսին հսկում է այնպիսի մի ագրոնոմ, որն ամենևին դուրս չի գալիս կաբինետից։ Վիեննայի բույսերի սնուցման ինստիտուտում դրված էլեկտրոնային հաշվիչ մեքենան է այդ։ Հանրապետության գիտահետազոտական մյուս հաստատությունների հետ մեկտեղ ինստիտուտը մշակել է ԳԴՀ-ի տարբեր հողերի և կուլտուրաների վրա պարարտանյութերի ազդեցության համապարփակ մոդելը։ Էլեկտրոնային ագրոնոմը սահմանում է, թե ինչպիսի հողերի, երբ և որքան պարարտանյութ կարելի է տալ։ Այժմ էլեկտրոնային ագրոնոմները ղեկավարում են 80 ագրոքիմիական կայաններ, որոնց թիվը 1975 թ. նախատեսված է հասցնել 350-ի։*